### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսու-

թյունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։





ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3 ՄԱՐՏ . 1968

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 47-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

# Содержание



# ԿՈՄՅՈՒՆԻԿԵ

## ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՈՒ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿՈՆՍՈՒԼՏԱՏԻՎ ՀԱՆԴԻՊՄԱՆ ՄԱՍԻՆ

Ս. թ. փետրվարի 26-ից մինչև մարտի 5-ը Բուդապեշտում տեղի ունեցավ ներքոհիշյալ կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների կոնսուլտատիվ հանդիպումը՝

Ամերիկայի Միացյալ Նահանգների կոմունիստական կուսակցություն, Արգենտինայի կոմունիստական կուսակցություն, Ավստրալիայի կոմունիստական կուսակցություն, Ավստրիայի կոմունիստական կուսակցություն, Բելգիայի կոմունիստական կուսակցություն, Բուլղարիայի կոմունիստական կուսակցություն, Բոլիվիայի կոմունիստական կուսակցություն, Բրազիլիայի կոմունիստական կուսակցություն, Ցեյլոնի կոմունիստական կուսակցություն, Չիլիի կոմունիստական կուսակցություն, Կիպրոսի աշխատավոր ժողովրդի առաջադիմական կուսակցություն, Կոստա-Ռիկայի ժողովրդական ավանգարդ կուսակցություն, Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցություն, Դանիայի կոմունիստական կուսակցություն, Հարավ-Աֆրիկյան կոմունիստական կուսակցություն, Դոմինիկյան կոմունիստական կուսակցություն, Էկվադորի կոմունիստական կուսակցություն, Հյուսիսային Իռլանդիայի կոմունիստական կուսակցություն, Ֆինլանդիայի կոմունիստական կուսակցություն, Ֆրանսիայի կոմունիստական կուսակցություն, Հունաստանի կոմունիստական կուսակցություն, Գվադելուպայի կոմունիստական կուսակցություն, Գվատեմալայի աշխատանքի կուսակցություն, Հաիթիի ժողովրդական միաբանության կուսակցություն, Հոնդուրասի կոմունիստական կուսակցություն, Հնդկաստանի կոմունիստական կուսակցություն, Իռլանդիայի բանվորական կուսակցություն, Իրաքի կոմունիստական կուսակցություն, Իրանի ժողովրդական կուսակցություն, Իսրայելի կոմունիստական կուսակցություն, Հորդանանի կոմունիստական կուսակցություն, Կանադայի կոմունիստական կուսակցություն, Կոլումբիայի կոմունիստական կուսակցություն, Լեհաստանի միացյալ բանվորական կուսակցություն, Լիբանանի կոմունիստական կուսակցություն, Լյուքսեմբուրգի կոմունիստական կուսակցություն, Հունգարիայի սոցիալիստական բանվորական կուսակցություն, Մարոկոյի կոմունիստական կուսակցություն, Մարտինիկայի կոմունիստական կուսակցություն, Մեքսիկայի կո-

մունիստական կուսակցություն, Մոնղոլիայի ժողովրդա-հեղափոխական կուսակցություն, Մեծ Բրիտանիայի կոմունիստական կուսակցություն, Գերմանիայի կոմունիստական կուսակցություն, Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցություն, Նիկարագուայի սոցիալիստական կուսակցություն, Իտալիայի կոմունիստական կուսակցություն, Պանամայի ժողովրդական կուսակցություն, Պարագվայի կոմունիստական կուսակցություն, Պերուի կոմունիստական կուսակցություն, Պորտուգալիայի կոմունիստական կուսակցություն, Ռեյունիոնի կոմունիստական կուսակցություն, Սալվադորի կոմունիստական կուսակցություն, Սան-Մարինոյի կոմունիստական կուսակցություն, Իսպանիայի կոմունիստական կուսակցություն, Շվեյցարիայի աշխատանքի կուսակցություն, Սիրիայի կոմունիստական կուսակցություն, Սովետական Միության կոմունիստական կուսակցություն, Սուդանի կոմունիստական կուսակցություն, Թուրքիայի կոմունիստական կուսակցություն, Թունիսի կոմունիստական կուսակցություն, Ուրուգվայի կոմունիստական կուսակցություն, Վենեսուելայի կոմունիստական կուսակցություն և ընդհատակում գտնվող կոմունիստական կուսակցություն, ինչպես նաև Ալժիրի կոմունիստների ներկայացուցիչներ:

Իսլանդիայի միասնական սոցիալիստական կուսակցությունը և Նորվեգիայի կոմունիստական կուսակցությունը կոնսուլտատիվ հանդիպմանը ներկայացված էին դիտորդներով:

Կոնսուլտատիվ հանդիպման մասնակիցները ընկերական ազատ դիսկուսիայի մթնոլորտում կարծիքներ փոխանակեցին կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցություն հրավիրելու և այն նախապատրաստելու հարցի շուրջը: Համակողմանի քննարկումից հետո նրանք արտահայտվեցին հօգուտ այն բանի, որ այդ խորհրդակցությունը գումարվի 1968 թվականի նոյեմբեր-դեկտեմբերին, Մոսկվայում:

Կոնսուլտատիվ հանդիպումը ելնում է այն բանից, որ խորհրդակցության նպատակն է ամրապնդել կոմունիստական շարժման միասնությունը, նպաստել սոցիալիզմի ու դեմոկրատիայի բոլոր ուժերի համախմբմանը իմպերիալիզմի դեմ, ժողովուրդների ազգային ու սոցիալական ազատագրության և ամբողջ աշխարհի խաղաղության համար մղվող պայքարում: Քննարկելով ապագա խորհրդակցության օրակարգի վերաբերյալ առաջարկները, հանդիպումը այն հետևության հանգեց, որ օրակարգում պետք է դնել մեկ հարց՝ արդի էտապում իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի խնդիրները և կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, հակաիմպերիալիստական բոլոր ուժերի գործողությունների միասնությունը:

Հանդիպման մասնակիցների միահամուռ կարծիքով, խորհրդակցության նախապատրաստությունը պետք է կատարվի կոլեկտիվության և ընկերական համագործակցության սկզբունքի հետևողական կիրառման, խորհրդակցության նախապատրաստմանն ու նրա աշխատանքին մասնակցելու՝ բոլոր կոմունիստական ու բանվորական կուսակցությունների հավասար իրավունքի հիման վրա:

Կոնսուլտատիվ հանդիպման մասնակիցները պայմանավորվեցին խորհրդակցության նախապատրաստման ժամանակամիջոցում գործելու համար ստեղծել հանձնաժողով այն բոլոր կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ներկայացուցիչներից, որոնք կցանկանան մասնակցել խորհրդակցությանը: Խորհրդակցությունը նախապատրաստող հանձնաժողովին հանձնարարված է քննարկել և ընդհանրացնել եղբայրական կուսակցությունների բոլոր առաջարկները և խորհրդակցության հետ կապված մյուս նյութերը, նախապատրաստել նրա փաստաթղթերի նախագծերը և ներկայացնել խորհրդակցությանը: Հանձնաժողովը նաև կապեր կպահպանի եղբայրական կուսակցությունների հետ՝ այդ հարցում: Այդպիսի մոտեցումը թույլ կտա առավելագույն չափով հաշվի առնել եղբայրական կուսակցությունների բոլոր կոնստրուկտիվ կարծիքներն ու ցանկությունները և կոլեկտիվ կերպով նախապատրաստել միջազգային խորհրդակցությունը: Հանձնաժողովի գտնվելու վայրն է Բուդապեշտ քաղաքը: Կոնսուլտատիվ հանդիպումը անհրաժեշտ է համարում նախապատրաստական հանձնաժողովի նիստը գումարել 1968 թվականի ապրիլի 24-ին և Հունգարիայի սոցիալիստական բանվորական կուսակցության Կենտրոնական կոմիտեին հանձնարարում է հրավիրել այդ նիստը:

Հանդիպման մասնակիցները հաստատ համոզված են, որ խորհրդակցությունը համապատասխանում է յուրաքանչյուր կոմունիստական կուսակցության և ամբողջ միջազգային կոմունիստական շարժման շահերին, իմպերիալիզմի դեմ պայքարի համար բոլոր ուժերը համախմբելու շահերին:

Կոնսուլտատիվ հանդիպումը դիմում է բոլոր կոմունիստական ու բանվորական կուսակցություններին, այդ թվում նաև այն կուսակցություններին, որոնք այս կամ այն պատճառով չմասնակցեցին Բուդապեշտի հանդիպմանը, կոչ անելով մասնակցել գալիք խորհրդակցությանը: Նա նրանց կոչ է անում լիիրավ հիման վրա ներգրավվել նախապատրաստական աշխատանքում:

Հանդիպման մասնակիցները միահամուռ ընդունեցին Վիետնամի ժողովրդին ուղղված համերաշխության ուղերձ, որով արտահայտեցին բոլոր կոմունիստների ընդհանուր հ ի ա ց մ ու ն ք ը նրա հերոսական պայքարի նկատմամբ և հավաստիացրին, որ այն օգնությունը, որը մարտնչող Վիետնամին ցույց են տալիս սոցիալիստական երկրները, աշխարհի բոլոր աշխատավորները, գնալով կաճի՝ ընդհուպ մինչև ամերիկյան ագրեսորների լիակատար վռնդումը Վիետնամի հողից:

Բուդապեշտի հանդիպմանը մասնակցած պատվիրակությունները համոզված են, որ կոմունիստական ու բանվորական կուսակցությունների առաջիկա միջազգային խորհրդակցությունը կլինի կարևոր էտապ մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքային հիմքի վրա ամբողջ աշխարհի կոմունիստներին համախմբելու ճանապարհին, խոշոր քայլ՝ բոլոր հակաիմպերիալիստական ուժերի հետագա միավորման գործում:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

ԱՍԾԱՏՐՅԱՆ Ե. Թ.

Հայկական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեի նախագահ

## ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ՕՐԳԱՆՆԵՐԻ ՀԱՅՐԵՆԱՆՎԵՐ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ

*Մեր երկրի աշխատավորները վերջերս հանդիսավորությամբ նշեցին սոցիալիստական վերահսկողության օրգանների 50-ամյակը։*

*Ստեղծելով այդ օրգանները, կոմունիստական կուսակցությունը ղեկավարվել է մարքսիստական այն կարևոր դրույթով, որ նոր հասարակարգի պայմաններում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի պլանաչափ ու համամասնական զարգացումը հանդես է գալիս որպես օրենք, որը արտադրության պրոցեսը ենթարկում է ընդհանուր վերահսկողության։ Հենվելով այդ օրինաչափության վրա, Վ. Ի. Լենինն ասում էր. «Մինչև այն ժամանակը, երբ կգա կոմունիզմի «բարձրագույն» փուլը, սոցիալիստներն ամենախիստ վերահսկողություն են պահանջում հասարակության ու պետության կողմից աշխատանքի չափի ու սպառման չափի վրա»... (Երկեր, հ. 25, էջ 611—612)։*

*Համաժողովրդական հաշվառքի և վերահսկողության կազմակերպումը համարելով ժողովրդական տնտեսության զարգացման անհրաժեշտ պայմաններից մեկը, Վլադիմիր Իլյիչը սովետական իշխանության հաստատումից հետո մշակեց բանվորական վերահսկողության կանոնադրությունը, որի համաձայն բանվորների ու ծառայողների կամ նրանց ներկայացուցիչների միջոցով վերահսկողություն էր իրականացվում բոլոր արդյունաբերական, առևտրական, բանկային, գյուղատնտեսական և այլ ձեռնարկություններում։*

*Բանվորական վերահսկողությունը մեծ դեր խաղաց երկրի ազգային հարստությունը հափշտակումից և շռայլումից պահպանելու գործում։ Լենինն այդ համարում էր սոցիալիստական պետական վերահսկողության առաջին քայլը։ 1918 թվականի հունվարի 18-ին Ժողկոմխորհը Լենինի ստորագրությամբ դեկրետ հրապարակեց կենտրոնական վերահսկիչ կոլեգիայի, տեղական սովետների հաշվառման, վերահսկիչ կոլեգիաների և հիմնարկություններում ու ձեռնարկություններում ընտրովի վերահսկիչ հանձնաժողովների ստեղծման մասին։ Կենտրոնական վերահսկիչ կոլեգիան պետք է ղեկավարեր վերահսկիչ օրգանների ողջ գործունեությունը։ Այդ դեկրետով երկրում ստեղծվեց միասնական պետական վերահսկողություն, որին անմիջականորեն մասնակցում էին աշխատավորական լայն մասսաները։* Սովետական իշխանության



ներքական խնդիրները հուշակավոր աշխատության մեջ Լենինը մատնանշում էր, որ «Մինչև այժմ առաջին պլանի վրա էին դրված սեփականազրկողներին սեփականազրկման անմիջական ձեռնարկումները։ Այժմ առաջին պլանի վրա է դրվում հաշվառման և վերահսկողության կազմակերպումն այն տնտեսություններում, որտեղ արդեն սեփականազրկված են կապիտալիստները, և մնացած բոլոր տնտեսություններում» (Երկեր, հ. 27, էջ 292)։ Նա գտնում էր, որ սոցիալիստական վերահսկողությունը պետք է դառնա նոր հասարակարգի շինարարության կարևորագույն մեթոդը։

Սովետական կարգերի ամրապնդման, ներքին հակահեղափոխությունից և ինտերվենտներից մեր հայրենիքի պաշտպանության, քաղաքում ու գյուղում սոցիալիստական բարեփոխումներ մտցնելու և ժողովրդական տնտեսության վերականգնման հետ կապված խնդիրները լուծելու նպատակով, կուսակցությունն անհրաժեշտ միջոցներ ձեռնարկեց սոցիալիստական վերահսկողության կատարելագործման, նրա մասսայականության և հստակ գործունեության համար։ Այդ հարցին մեծ ուշադրություն նվիրվեց կուսակցության VIII համագումարում։ Այնտեղ նշվեց, որ անհրաժեշտ է սովետական երկրում արմատապես վերակառուցել վերահսկողության գործը, ստեղծել սոցիալիստական բնույթի իսկական վերահսկողություն։

Համագումարի որոշումների կատարման գործում կարևոր դեր խաղաց Լենինի ակտիվ մասնակցությամբ մշակված «Պետական վերահսկողության մասին» դեկրետը, որը 1919 թ. ապրիլի 9-ին հաստատեց Համառուսաստանյան կենտրոնական գործադիր կոմիտեն։ Դեկրետում ընդգծվում էր բոլոր վերահսկող օրգանները միավորելու և մասսաներին լայնորեն մասնակից դարձնելու պետական ու տնտեսական շինարարությանը, կուսակցության ու կառավարության դիրեկտիվների և որոշումների կատարման վերահսկողությանը, անտնտեսվարության և բյուրոկրատիզմի դեմ պայքարին։ 1920 թվականի սկզբին պետական վերահսկողության ժողովրդական կոմիսարիատն ու հասարակական վերահսկողությունը միավորվեցին մեկ միասնական օրգանում՝ բանվորա-գյուղացիական տեսչության ժողովրդական կոմիսարիատում։ Տեղերում կազմակերպվեցին նահանգային, գավառային և քաղաքային բանգյուղտեսչություններ, ձեռնարկություններում, հիմնարկություններում, զինվորական մասերում և գյուղերում՝ բանգյուղտեսչությանն աջակցող բջիջներ, արհմիութենական կազմակերպություններին կից՝ աջակցող հանձնաժողովներ։ Այսպիսով, ի դեմս բանգյուղտեսչության գտնվեց պետական և բանվորա-գյուղացիական հասարակական վերահսկողության զուգակցման լավագույն ձևը։

Լենինն ուշի ուշով հետևում, ուղղություն էր տալիս բանգյուղտեսչության գործունեությանը, բարձր գնահատում նրա դերը կուսակցության և պետության առջև ծառացած պրոբլեմների լուծման գործում։ Նա հոգում էր, որ աճի բանգյուղտեսչության դերը, ընդարձակվեն նրա ֆունկցիաները, որ հանձին նրա ստեղծվեն իսկական ժողովրդական սոցիալիստական վերահսկողություն, օրինակելի սովետական հիմնարկություն, ստուգման և պետական աշխատանքի բարելավման ապարատ։

Քաղաքացիական պատերազմի հաղթական ավարտից հետո կուսակցությունը բոլոր ջանքերն ուղղեց ժողովրդական տնտեսության վերականգնմանը, խաղաղ սոցիալիստական շինարարությանը։ Ստեղծագործ այդ աշխատանքի հիմքում կուսակցությունը դրել էր մեր երկրի սոցիալիստական վերափոխման

լենինյան պլանը, որը շարադրվել էր Լենինի Ինչպես վերակազմենք Բանգյուղտեսչությունը, Լավ է քիչ, բայց լավ, Կոոպերացիայի մասին և այլ աշխատություններում: Այդ ժամանակներում պետական ապարատի ամրապնդման ու կատարելագործման պրոբլեմն էր ծառացել մեր առջև: Լենինն այդ առթիվ հաճախ էր նշում, որ ժողովրդական տնտեսության վերականգնման հաջողությունը, բանվորների և գյուղացիների դաշինքի ամրապնդումը կախված է այն բանից, թե ինչպես կաշխատի մեր սովետական ապարատը, որքան ճկուն և ամուր կդառնան նրա կապերը աշխատավոր մասսաների հետ: Եվ նա հիմնավորում է համապարփակ, մշտապես գործող վերահսկողության ներդաշնակ սիստեմ (աշխատավորական լայն մասսաների մասնակցությամբ) ստեղծելու գաղափարը, առաջարկում բանգյուղտեսչության ժողկոմատը միավորել կուսակցական վերահսկողության բարձրագույն օրգանի՝ կենտրոնական վերահսկիչ հանձնաժողովի հետ: Վերահսկիչ օրգանների վերակառուցման լենինյան պլանը միահամուռ հավանության արժանացավ կուսակցության XII համագումարում:

Համագումարի որոշումներին համապատասխան ստեղծվեց միասնական օրգան՝ կենտրոնական վերահսկիչ հանձնաժողով—բանվորա-գյուղացիական տեսչություն, իսկ մի փոքր ավելի ուշ ստեղծվեցին նրա տեղական օրգանները, որոնք կարևոր դեր խաղացին կուսակցության միասնության պահպանման, բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի ամրապնդման, սոցիալիստական շինարարության խնդիրների հաջող լուծման համար մղվող պայքարում:

Տարբեր ժամանակներում երկրի վերահսկողության օրգանները գլխավորում էին կուսակցության և պետության նշանավոր գործիչներ, ընկերներ Ի. Վ. Ստալինը, Վ. Վ. Կույբիշևը, Գ. Կ. Օրջոնիկիձեն, Ա. Դ. Ցյուրուպան, Վ. Ա. Ավանեսովը, Ա. Ա. Անդրեևը, Յա. Է. Ռուձուտակը և ուրիշներ:

Կենտրոնական-վերահսկիչ հանձնաժողովի և բանգյուղտեսչության բուռն գործունեության շրջանը զուգադիպեց Անդրկովկասյան ֆեդերացիայի գոյության հետ, որը լուրջ դեր խաղաց Անդրկովկասյան հանրապետությունների կուսակցական կազմակերպությունների միասնության և ժողովուրդների բարեկամության ամրապնդման համար մղված պայքարում, սոցիալիզմի տնտեսական ու կուլտուրական շինարարության պլանների իրականացման ասպարեզում: Այդ մեծ գործում իրենց լուման են դրել կուսակցության նշանավոր գործիչներ, Անդրկովկասի վերահսկողության օրգանների ղեկավարներ Վանո և Գեորգի Ստուրուաները, Գևորգ Աթարբեկյանը, Հմայակ Նազարեթյանը, Սարգիս Լուկաշինը, Աշոտ Խումարյանը, Յակովլևը, Դոգատովը և ուրիշներ:

Կուսակցությունը մեծ պահանջկոտություն էր ցուցաբերում պետական ապարատի աշխատանքի հաջող կազմավորման և վերահսկողության օրգանների ղեկավարների ընտրության գործում: Վերահսկողության բնագավառում աշխատանքի էին ուղարկվում կուսակցական և սովետական առավել հեղինակավոր աշխատողներ, մասնագետներ, որոնք օբյեկտիվ վերահսկողություն ու կատարման ստուգում կազմակերպելու համար ունեին անհրաժեշտ գիտելիքներ, փորձ և ունակություններ: Հանրապետության վերահսկողության օրգանները ղեկավարել են Սովետական Հայաստանի այնպիսի ակնառու գործիչներ, ինչպիսիք էին՝ Մարտին Սահակյանը, Դանուշ և Սուսաննա Շահվերդյանները, Սերգո Մարտիկյանը, Շավարշ Ամիրխանյանը, Սեդրակ Սարգսյանը, Թադևոս Մանդալյանը, Աղասի Գալոյանը, Արտո Բունյաթյանը և ուրիշներ:



Հայաստանում պետական վերահսկողության տեսչություն ստեղծվեց 1920 թվականին (սովետական իշխանության հաստատման առաջին օրերին), իսկ հեղկոմի 1921 թվականի հունվարի 4-ի դեկրետով այն վերափոխվեց բանվորա-գյուղացիական տեսչության: Դեկրետում սահմանված էին տեսչության հիմնական խնդիրները՝ կուսակցության և կառավարության որոշումների կատարման վերահսկողության իրականացումը, սովետական ապարատի աշխատանքի բարելավումը, պետական կարգապահության ամրապնդումը և սոցիալիստական օրինականության պահպանումը:

1923 թվականի ապրիլին Միությունում, իսկ 1924 թվականի մայիսին հանրապետությունում ստեղծվեց կուսակցական-պետական վերահսկողության միասնական օրգան՝ կենտրոնական վերահսկիչ հանձնաժողով և բանվորա-գյուղացիական տեսչության ժողովրդական կոմիսարիատ, որը գործեց մինչև 1934 թվականը: Այդ շրջանում կուսակցական-պետական վերահսկողության օրգանների կարևոր խնդիրն էր՝ օգնել կուսակցությանն ու պետությանը իրականացնելու երկրի ինդուստրացման լենինյան պլանը:

1934—1962 թթ. վերահսկողության ֆունկցիաները կատարում էին նույնանուն հանձնաժողովները, ժողկոմատները, մինիստրությունները՝ առանց վերահսկողության մեջ աշխատավորների լայն մասսաների ընդգրկման:

Սովետական ժողովուրդը կուսակցության ղեկավարությամբ հաջողությամբ վերականգնեց պատերազմի հետևանքով քայքայված ժողովրդական տնտեսությունը և անցավ համաշխարհային պատմական խնդրի լուծմանը՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը: Այդ շրջանում կուսակցությունը հետևողականորեն իրականացրեց կուսակցական կյանքի լենինյան նորմերը, ապահովեց սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումն ու պետական և հասարակական գործերի կառավարմանը մասսաներին լայնորեն ներգրավումը: Կուսակցությունն անհրաժեշտ համարեց դեմոկրատական հիմունքներով վերակառուցել նաև պետական վերահսկողությունը: XXII համագումարում ընդունված կուսակցության ծրագրում ասված է. «Լենինի ցուցումներին համապատասխան պետք է մշտապես գործեն վերահսկողության օրգանները, որոնք պետական վերահսկողությունը զուգորդում են կենտրոնում ու տեղերում հասարակական տեսչության հետ: Կուսակցությունը ժողովրդական վերահսկողության տեսչությունները դիտում է որպես պետության գործերի կառավարմանը, օրինականության խստիվ կիրառման նկատմամբ վերահսկողության իրականացմանը ժողովրդական լայն մասսաների ներգրավման ազդու գործիք, պետական ապարատի կատարելագործման, բյուրոկրատիզմը արմատախիլ անելու, աշխատավորների առաջարկների ժամանակին իրականացման գործիք»:

1962 թվականի վերջերին ստեղծվեցին կուսակցական-պետական վերահսկողության օրգաններ, որոնք, ինչպես նշվել է կուսակցության Կենտկոմի դեկտեմբերյան (1965 թ.) պլենումում, զգալի աշխատանք կատարեցին կուսակցության և կառավարության որոշումների կատարման ստուգման, սոցիալիստական էկոնոմիկայի վերելքի, պետական կարգապահության ամրապնդման և կոմունիստների ու անկուսակցականների լայն մասսաներին վերահսկողության մեջ ներգրավելու գործում: Սակայն, դրանից հետո աշխատավորներին վերահսկողության գործին ավելի լայնորեն մասնակից դարձնելու, կուսակցության և կառավարության դիրեկտիվների կատարման սիստեմատիկ ստուգումը, պետական կարգապահության և սոցիալիստական օրինականու-

թյան ամրապնդումն ապահովելու նպատակով կուսակցական-պետական վե-
րահսկողության օրգանները վերածվեցին ժողովրդական վերահսկողության
օրգանների: Այդ որոշումն ընդունելիս կուսակցության Կենտկոմը ելնում էր
այն բանից, որ ժողովրդի շահերն ու կամքը արտահայտող մեր սոցիալիստա-
կան պետության մեջ բոլոր իրավունքները, ինչպես և վերահսկողության իրա-
վունքը, պատկանում է երկրի միակ տիրոջը՝ ժողովրդին:

Այսպիսով, ժողովրդական վերահսկողության օրգաններ անվանումը հա-
մապատասխանում է նրանց գործունեության բուն էությանը: Կուսակցության
ստեղծած և այժմ գործող ժողովրդական վերահսկողության օրգանները այն
կարևոր ձևերն են, որոնց միջոցով աշխատավորների լայն մասսաները կենսա-
գործում են վերահսկողության իրավունքը, ամենից առաջ, էկոնոմիկայի և
կուլտուրական շինարարության բնագավառներում: Հարկ է նշել, որ ձեռնար-
կություններում, կոլտնտեսություններում, հիմնարկություններում և կազմա-
կերպություններում պետական վերահսկողությունը զուգակցվում է աշխատա-
վորների վերահսկողության հետ: Այսինքն՝ վերահսկողության օրգանները
իրենց վրա դրված պետական ֆունկցիաներն իրականացնելիս, կուսակցու-
թյան և կառավարության դիրեկտիվների կատարումն ստուգելիս հենվում են
աշխատավորների՝ հասարակական վերահսկիչների վրա:

Կուսակցության Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշման համաձայն
հանրապետության կուսակցական կազմակերպությունները ջանք չխնայեցին
ժողովրդական վերահսկողության օրգանները կազմակերպորեն ամրապնդելու
և նրանց պրակտիկ գործունեությունը բարելավելու համար: Բոլոր քաղաք-
ներում ու շրջաններում ստեղծվեցին ժողովրդական վերահսկողության կոմի-
տեներ, ուր ընդգրկվեցին բանվորներ, կոլտնտեսականներ, ծառայողներ, գի-
տության ու կուլտուրայի գործիչներ, մամուլի աշխատողներ, ժողովրդական
վերահսկողության ակտիվիստներ, կուսակցական, սովետական, արհմիութե-
նական և կոմերիտական կազմակերպությունների ներկայացուցիչներ: Ար-
դյունաբերության, տրանսպորտի և կապի ձեռնարկություններում, կոլտնտե-
սություններում, սովխոզներում, հիմնարկություններում և կազմակերպու-
թյուններում, տնային կառավարչություններում այժմ կան ժողովրդական վե-
րահսկողության 8 հազարից ավելի խմբեր ու պոստեր, որոնցում ընդգրկված
են 63 հազարից ավելի ակտիվիստ: Սրանք սերտ համագործակցությամբ են
աշխատում արհմիությունների հասարակական հսկիչների և կոմերիտական
լուսարձակայինների հետ:

Կուսակցությունն ու ժողովուրդը բարձր են գնահատում ժողովրդական
հսկիչների հայրենասիրական գործունեությունը, որոնք ակտիվ աշխատում են
ժողովրդական վերահսկողության օրգաններում, օգնում դրանց, իրենց փորձն
ու գիտելիքները նվիրաբերում պետական կարգապահության ու սոցիալիստա-
կան օրինականության պահպանման գործին: Կուսակցական կազմակերպու-
թյունների ղեկավարությամբ, հանրապետության ժողովրդական վերահսկո-
ղության օրգանները հասարակական մեծ ուժ են դարձել: Նրանք համառ պայ-
քար են ծավալել խնայողության համար, ջանում են հայտնաբերել արտա-
դրության ռեզերվներ, օգնել կուսակցական և սովետական կազմակերպու-
թյուններին՝ ամրապնդելու պետական կարգապահությունը, բարելավելու աշ-
խատավորների կուլտուր-կենցաղային սպասարկումը:

Վերահսկողության օրգանների նախաձեռնությամբ և կուսակցական կազ-
մակերպությունների ղեկավարությամբ ժողովրդական տնտեսության մեջ անց



են կացվել տնտեսման և խնայողության ստուգատեսներ, որոնցում մասնակ-
ցել են հանրապետության ավելի քան 200 հազար բանվոր, կոլտնտեսական,
ինժեներա-տեխնիկական աշխատող և ծառայող: Միայն Հոկտեմբերյան հե-
ղափոխության 50-ամյակի պատվին կազմակերպված հանրապետական ստու-
գատեսում տնտեսվել են 77 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 7 հազար տոննա
նավթամթերք, 19 հազար տոննա սպյմանական վառելիք, 3 մլն խորանարդ
մետր բնական գազ, 3,5 հազար տոննա մետաղ, 4 հազար խորանարդ մետր
անտառանյութ և շատ այլ նյութեր: Տնտեսված հումքի և նյութերի հաշվին
պլանից դուրս թողարկվել է 8,6 միլիոն ռուբլու արտադրանք: Այդ միջոցա-
ռումների անցկացման ընթացքում արտադրության մեջ ներդրվել է տնտե-
սական մեծ արդյունք խոստացող ավելի քան 8 հազար ռացիոնալիզատորա-
կան առաջարկություն:

Նյութական ռեսուրսների և չտեղակայված սարքավորումների հաշվառման
ստուգման միջոցով ժողովրդական վերահսկողության օրգանները ամեն տարի
հայտնաբերում և տնտեսական շրջանառության մեջ են դնում լրացուցիչ հա-
զարավոր տոննա սև մետաղի գլանվածք, խողովակներ, մետաղե շինվածք-
ներ, մեծ քանակությամբ շինանյութեր, ինչպես նաև չտեղակայված սարքա-
վորման հարյուրավոր միավորներ: Նրանք պատշաճ օգնություն են ցույց տա-
լիս տնտեսական կազմակերպություններին մետաղի ջարդոնի հավաքման
պետական պլանի և կուսակցության ու կառավարության կողմից տրվող լրա-
ցուցիչ առաջադրանքի կատարումը ապահովելու վառելիքի, քսանյութերի
տնտեսմանը վերահսկելու ուղղությամբ: Մեծ ուշադրություն է նվիրում բնակ-
չության կենցաղային սպասարկման, կոմունալ տնտեսության, առևտրի և
հասարակական սննդի ձեռնարկությունների, բժշկական և նախադպրոցական
հիմնարկությունների գործունեության վերահսկողությանը:

Ժողովրդական վերահսկողության կոմիտեն, համապատասխան մասնա-
գետների օգնությամբ, ուսումնասիրում է հանրապետության արդյունաբերու-
թյան հանրային արտադրության տնտեսական արդյունավետության խնդիր-
ները. գունավոր մետալուրգիայի մեջ՝ կապիտալ ներդրումների օգտագործման
և արտադրական կորուստների կանխման վիճակը, թեթև, սննդի, մսեղենի ու
կաթնեղենի արդյունաբերական ձեռնարկությունների, դպրոցների, բժշկական
և նախադպրոցական հիմնարկությունների շինարարության ընթացքը, հանրա-
յին արտադրության զարգացման գործում կոլտնտեսականների նյութական
շահագրգռվածության բարձրացման վերաբերյալ կուսակցության և կառավա-
րության ցուցումների կատարումը, կոոպերատիվ և բնակարանային շինարա-
րության որակն ու ընթացքը և այլ հարցեր, որոնք կենսական նշանակություն
ունեն հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման և աշխա-
տավորության կենցաղի բարելավման համար:

Սակայն, ժողովրդական վերահսկողության օրգանների գործունեությունը
զերծ չէ որոշ թերություններից: Աշխատավորները դեռևս լայնորեն չեն ընդ-
գրկվել վերահսկողության ոլորտը, չեն հասել այն բանին, որ ժողովրդական
վերահսկողության յուրաքանչյուր խումբ գործի պատշաճ ակտիվությամբ:
Նրանք երբեմն անտեսում են անտնտեսվարության, կարգապահության խախտ-
ման, բյուրոկրատիզմի դեպքերը, անբավարար են օգնում կուսակցական և
սովետական կազմակերպություններին՝ ստեղծելու արտադրության կառավար-
ման և սպասարկման այնպիսի վիճակ, որը բացառեր պետությանն ու ժողո-
վրդին վնասող ամեն մի երևույթ, օրենքների խախտում, չարաշահումների ու

կորուստների հնարավորություն։ Ժողովրդական վերահսկողության օրգանները ունակ են հաղթահարելու այդ թերությունները, բարելավելու իրենց աշխատանքը, բարձրացնելու վերահսկողության արդյունավետությունը։

Կուսակցության XXIII համագումարը կոմունիստական շինարարության հետագա ծավալման հոյակապ ծրագիր է ընդունել, որի իրականացման համար անհրաժեշտ է մոբիլիզացնել կուսակցության և սովետական ժողովրդի ջանքերը՝ կատարելագործելու տնտեսական շինարարության կառավարման մեթոդները, բարձրացնելու կատարման ստուգման դերը և ամրապնդելու պետական կարգապահությունը։ Բացի այդ, անհրաժեշտ է շարունակել պայքարը արտադրության արդյունավետության բարձրացման, ժողովրդական տնտեսության ռեզերվների հայտնաբերման, տնտեսման և խնայողության համար։

Ժողովրդական վերահսկողության օրգաններն իրենց ուշադրությունը չպետք է թուլացնեն բնակչության կենցաղային սպասարկման, առևտրի, հասարակական սննդի, մանկական և առողջապահության հիմնարկների, կոմունալ ձեռնարկությունների աշխատանքի նկատմամբ։ Պետք է հաստատակամորեն ձգտել այն բանին, որ բոլոր նյութական բարիքները, որը սոցիալիստական պետությունը տրամադրում է աշխատավորներին, լիովին հասնեն նրանց։

Մշտական և ամենասերտ կապ աշխատավորների լայն մասսաների հետ, ուշադիր վերաբերմունք դեպի նրանց առաջարկությունները, նամակները, ահազանգումները՝ ժողովրդական վերահսկողության օրգանների գործունեության օրենքն է։

Մեր խնդիրն է՝ բարձրացնել պահանջկոտությունը ձեռնարկությունների և հիմնարկների, մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարների նկատմամբ՝ աշխատավորների նամակների ժամանակին ստուգման և, հատկապես, բողոքները ծնող պատճառների ուսումնասիրման ու վերացման համար։

Ժողովրդական վերահսկողության օրգանների, պետական ապարատում աշխատող վերահսկիչների խնդիրն է՝ այսուհետև ևս եռանդուն օգնություն ցույց տալ կուսակցական և սովետական օրգաններին՝ վարչա-կառավարչական ապարատի բոլոր օղակների գործունեության անընդհատ կատարելագործման ասպարեզում, արմատախիլ անել բյուրոկրատիզմի, քաշքշուկի, աշխատավորների պահանջմունքների և կարիքների նկատմամբ անուշադիր վերաբերմունքի ամենափոքր դրսևորումները, հասնել պետական կարգապահության և սոցիալիստական օրինականության խիստ պահպանման։

Մեր երկիրը թևակոխել է սոցիալիստական կարգերի գոյության երկրորդ հիսնամյակը։ Սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել նոր հնգամյակի երրորդ տարվա հոյակապ խնդիրների իրականացմանը։ Նոր պայմաններում ավելի մեծ անելիքներ ունեն ժողովրդական վերահսկողության օրգանների աշխատողները։

Նրանք ոգևորված ՍՄԿԿ Կենտկոմի, Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ սոցիալիստական վերահսկողության օրգանների 50-ամյակի կապակցությամբ ջերմ ողջույնով և բարձր գնահատականով, առաջիկայում ևս պատվով կկատարեն իրենց հասարակական ու պետական պարտականությունները։

---

ՄԵՀՐԱԲՅԱՆ Բ. Վ.

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ

# ԴԱՐԱԿԱԶՄԻԿ ՏԱԿՏԻԿԱՅԻ ՕՐԻՆԱԿ

պատմական մեծ դարաշրջաննե-
Մեծ գաղափարները իրականանում են
Համաշխարհային պատմության մեջ յուրաքանչյուր դարաշրջանի տեղը
րում։ Համաշխարհային պատմության մեջ յուրաքանչյուր դարաշրջանի տեղը
մեծ մասամբ որոշվում է առաջադիմական գաղափարների իրականացմամբ,
ժողովրդական մասսաների կամքով ու գործողություններով։ Գաղափարների
իրականացումը գլխավորապես կախված է պայքարող դասակարգերի տակ-
տիկայից, որը հաճախ որոշիչ ներգործություն է ունենում սոցիալական կոն-
կրետ գոտեմարտերի ընթացքի վրա։

Ներկա դարաշրջանում հասարակական հիմնական ուժերի տակտիկայից
է կախված ո՛չ միայն առանձին երկրների, այլև, կարելի է ասել, ամբողջ
մարդկության ապագան։ Համաշխարհային պատմության մեջ տեղի ունեցած
շրջադարձը դեպի սոցիալիզմ, որի սկիզբը դրեց մեծ հոկտեմբերը, օբյեկտի-
վորեն ու անհրաժեշտաբար ավելի է մեծացրել տակտիկայի դերը դասակար-
գերի պայքարում։ Ահա թե ինչու Վ. Ի. Լենինն այնքան ուշադիր էր պրոլետա-
րիատի հեղափոխական պայքարի տակտիկայի պրոբլեմների նկատմամբ։ Սո-
վետական պետության գոյության առաջին իսկ ամիսներին, առանձնապես Բրես-
տի հաշտության պայմանագրի շուրջ ծավալված քաղաքական սուր բախումների
ժամանակ, ցայտուն դրսևորվեց համաշխարհային իմպերիալիզմի ուժերի «եր-
կու հսկա խմբավորումների» դեմ մղվող պայքարի լենինյան տակտիկայի դա-
րակազմիկ նշանակությունը։ Լենինյան քաղաքական այդ կարևորագույն դիրք-
որոշումը, անգամ մեր օրերում, Բրեստ-Լիտովսկի պայմանագրի ստորագրու-
մից (1918 թ. մարտի 3) կես դար հետո, մնում է որպես հեղափոխական գոր-
ծողության, հեղափոխական տակտիկայի անզուգական օրինակ, տակտիկա,
որն իր ողջ էությամբ ուղղված էր վայ-հեղափոխական շռնդալից ֆրազների,
ամեն երանգի օպորտունիզմի դեմ։

***

Ռուսաստանում լուծելով
Պրոլետարական հեղափոխության հաղթանակը
համաշխարհա-
հիմնական կոնֆլիկտը,
տնտեսական ու սոցիալ-քաղաքական
յին ասպարեզում առաջ բերեց մի շարք նոր հակասություններ։ Մարդկության
դասակարգային պատմության մեջ առաջին անգամ ծագեցին ու ծավալվեցին
հակասություններ սոցիալական հակադիր կարգեր ունեցող պետությունների
միջև։ Այդպիսով, դարաշրջանի հիմնական հակադիր դասակարգերի (բանվոր

*դասակարգի և իմպերիալիստական բուրժուազիայի) հակասությունները վերածվեցին միջպետական հարաբերությունների աստիճանի: Տեղի ունեցավ աշխարհի որակապես բոլորովին նոր վերաբաժանում, որի հիմքը ոչ թե աշխարհագրական, էթնիկական, ռասայական կամ ազգային հատկանիշներն էին, այլ լոկ դասակարգայինը: Պրոլետարիատի դիկտատուրայի մի յակ երկիրը օբյեկտիվորեն հակադրվեց կապիտալիզմի աշխարհին: Սկսվեց սոցիալական հակադիր կարգեր, դասակարգային հակադիր իդեալներ ու նպատակներ ունեցող պետությունների «մեծ դիմակայության» դարաշրջան:*

*Այդ փաստն ինքնին մի առանձնահատուկ նշանակություն տվեց պրոլետարական հեղափոխության երկրի ու կապիտալիստական երկրների փոխհարաբերություններին: Առաջացած պրոբլեմն իր նախադեպը չուներ մարդկության պատմության մեջ (եթե նկատի չունենանք Փարիզի կոմունայի կարճատև փորձը): Սովետական հանրապետության և կապիտալիստական երկրների փոխհարաբերությունները միայն արտաքուստ են նման միջպետական տրադիցիոն հարաբերություններին, իսկ դասակարգային բովանդակությամբ միանգամայն այլ որակ ունեն: Փոխհարաբերությունների նոր տիպը շատ բանով սկսեց տարբերվել նախորդներից: Եթե անտագոնիստական ֆորմացիաների ժամանակ տիրապետող դասակարգերը միջպետական հարաբերություններն օգտագործում էին իրենց իշխանությունը «հայրենիքի ներսում» ամրապնդելու կամ տիրապետության սահմաններն ընդարձակելու համար (ուրիշ շատ երկրներ նվաճելու ու հարստահարելու միջոցով), ապա մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո դրությունն արմատապես փոխվեց:*

*Պրոլետարական դիկտատուրայի պետությունը միջազգային հարաբերությունների մեջ մտավ որպես աշխատավորության շահերի արտահայտիչ ու կրող: Բուրժուական պետությունների հետ ունեցած իր հարաբերություններում նա ելել ու ելնում է աշխատավոր մասսաների ակնկալություններից: Միջպետական հարաբերությունների պատմության մեջ առաջին անգամ կողմերից մեկը հանդես եկավ որպես ամեն տեսակի սոցիալական բռնության ու կեղեքման հակառակորդ: Պրոլետարիատի դիկտատուրայի դասակարգային էությունը, ինչպես նաև սկզբում մեկ երկրում իր տիրապետությունը հաստատած պրոլետարիատի ինտերնացիոնալ պարտականությունները ո՛չ միայն կանխորոշեցին սովետական արտաքին քաղաքականության ստրատեգիան, այլև պայմանավորեցին ճկուն տակտիկա գործադրելու անհրաժեշտությունը, որը սոցիալիստական միակ պետությանը համաշխարհային իմպերիալիզմի մրրկածուփ օվկիանոսում դիմանալու հնարավորություն ընձեռեց:*

*Սոցիալիստական պետության առաջացումը չբացառեց պայքարը միջպետական հարաբերություններում: Ընդհակառակը, այդ պայքարն ավելի բացարձականացրեց: Դրա հետ մեկտեղ էապես փոխվեց դարաշրջանի հիմնական հակադիր դասակարգերի պայքարի իմաստն ու նշանակությունը: Այդ պայքարն այժմ ավելի ցցուն է դարձրել մեր դարաշրջանի հիմնական բովանդակությունը, այն է՝ անտագոնիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայից դեպի ոչ-անտագոնիստականը կատարվող անցումը: Մյուս կողմից՝ հասարակական առաջընթացի առումով, դա առանձնահատուկ նշանակություն հաղորդեց միջպետական հարաբերություններին:*

*Բանվոր դասակարգի և իմպերիալիստական բուրժուազիայի դասակարգային հակամարտությունները, յուրովի դրսևորվելով միջպետական հարաբերություններում, միաժամանակ արտահայտում են այդ երկու հակադիր*



*սոցիալական ուժերի վերջնական նպատակները: Նման պայմաններում առանձնահատուկ դեր է խաղում սոցիալիստական պետության արտաքին-քաղաքական պայքարի տակտիկան:*

*Պատահական չէ, որ հաղթանակած սոցիալիզմի երկրի և կապիտալիստական շրջապատման փոխհարաբերությունները գտնվել են բոլշևիկների ուշադրության կենտրոնում, հաճախ դառնալով ներկուսակցական սուր պայքարի հարց: Երկար ժամանակ դա դիսկուսիոն հարց է եղել համաշխարհային կոմունիստական շարժման մեջ, ինչպես նաև հույժ ակտուալ թեմա՝ իմպերիալիզմի դեմ մղվող գաղափարական պայքարում: Սա, անշուշտ, բնական է: Այդ ժամանակներում պրոլետարական հեղափոխության առաջին երկրի և իմպերիալիստական պետությունների հակասությունների լուծումից էր կախված հասարակական առաջադիմության բախտը, սոցիալիստական ուսմունքի իրականացման հաջողությունը: Այդ հարաբերությունների պրակտիկան փորձություն էր գիտական կոմունիզմի տեսության համար:*

*Արտաքին քաղաքականության տեսական ու գործնական հարցերը քննելով դասակարգային դիրքերից, դրանք գնահատելով սոցիալիստական հեղափոխության հաղթանակի տեսանկյունից, Լենինը սովետական կառավարության ջանքերն ուղղեց պատերազմից Ռուսաստանին դուրս բերելու վրա: Լինելով ռեալիստ ու հեռատես քաղաքագետ, նա հաշվի էր առնում այն անհերքելի փաստը, որ խաղաղությունն օբյեկտիվ անհրաժեշտություն է սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար: Այդ էին պահանջում նաև այն միլիոնավոր աշխատավորները, որոնց իմպերիալիզմը նետել էր արյունալի սպանդի մեջ: Այդ իսկ պատճառով Լենինը Հոկտեմբերյան հեղափոխության հենց հաջորդ օրը հանդես եկավ անհապաղ դեմոկրատական, արդարացի հաշտություն կնքելու առաջարկությամբ:*

*Դա պրոլետարական հեղափոխության առաջին, բայց խիստ էական ակցիան էր խաղաղության հաստատման ճանապարհին: Դրան հաջորդեց խաղաղության գաղափարների հաղթանակի համար սովետական պետության վարած հետևողական քաղաքականությունը: Իսկ այն ժամանակաշրջանում ստեղծված կոնկրետ իրադրությունը թելադրում էր պայքարի բոլորովին նոր, աննախադեպ տակտիկա կիրառել պատերազմից դուրս գալու համար: Դա այն տակտիկան էր, որ մշակել էին Լենինը, բոլշևիկների կուսակցությունը, սովետական կառավարությունը: Դա Բրեստի հաշտության տակտիկան էր, որի մշակումն ու կենսագործումը կապված են մեծ Լենինի անվան հետ: Այդ գործում նա դրսևորեց հեռատեսության իր անգերազանց կարողությունները: Հաղթահարելով «ձախից» ու աջից ցույց տրված ամեն մի դիմադրություն, Լենինը պնդում էր «դժբախտ հաշտություն, վերին աստիճանի ծանր հաշտություն» կնքելու վրա: Ընդ որում, նա ելնում էր Ռուսաստանի և ամբողջ աշխարհի սոցիալիստական հեղափոխության սկզբունքային շահերից: Հեղափոխության առաջնորդի այդ շրջանի բոլոր ասույթների միջով կարմիր թելի նման անցնում էր Բրեստ-Լիտովսկի բանակցությունները հաջող ավարտելու և հաշտության պայմանագիր կնքելու միտքը: Նա գտնում էր, որ «ոչ մի նոր հետաձգում այլևս իրագործելի չէ, որովհետև բանակցություններն արհեստականորեն ձգձգելու համար մենք արդեն արել ենք հնարավոր և անհնարին ամեն ինչ» (Երկեր, հ. 26, էջ 540):*

*Բրեստ-Լիտովսկի բանակցությունների և հաշտության պայմանագրի ստորագրման հետ կապված հարցերը լուծելով, Լենինը փայլուն դաս տվեց*

թե գիտական ու գործնական-քաղաքական բնագավառում ինչպես պետք է հասկանալ դասակարգերի ու պետությունների պայքարի ստրատեգիայի և տակտիկայի դիալեկտիկան, բացահայտեց տակտիկայի դերը դասակարգերի ստրատեգիական նպատակների հարաբերակցությամբ, ցույց տվեց, որ բանվոր դասակարգի ստրատեգիական շահերին պետք է ենթարկել նրա պայքարի տակտիկան, որը հաճախ ուղեկցվում է կոմպրոմիսներով։

Այն պայմաններում, երբ դասակարգային հակասությունները և մասնավոր սեփականության պահպանման համար մղվող պայքարը (քաղաքացիական պատերազմի ձևով) «դեռևս իր բարձրագույն կետին չի հասել» (Երկեր հ. 26, էջ 537), երբ բուրժուազիան համառ, բազմազան ու տևական դիմադրություն էր ցույց տալիս ոչ-ռազմական ձևերով, երբ կազմակերպական խնդիրների մեծությունն ու դժվարությունն անհրաժեշտ էին դարձրել սոցիալիստական վերափոխության համար տևական ժամանակ շահելը, երբ այնպիսի իրադրություն էր ստեղծվել, որ հեղափոխության բռնկման ու եվրոպական իմպերիալիստական կառավարություններից որևէ մեկի... տապալման հավանականության մոմենտը բոլորովին հաշվառման չէր ենթարկվում (տե՛ս հ. 26, էջ 539), Լենինը մերժեց «անհապաղ հեղափոխական պատերազմ» սկսելու օգտին բերվող փաստարկները և պաշտպանեց այն նպատակը հետապնդող տակտիկան, «թե ինչպես ավելի վստահելի ու ավելի հուսալի կերպով կարելի է սոցիալիստական հեղափոխության համար հնարավորություն ապահովել՝ ամրանալու կամ գեթ դիմանալու մի երկրում մինչև այն ժամանակ, երբ կմիանան ուրիշ երկրներ» (Երկեր, հ. 26, էջ 542)։

Նա հանդես եկավ հեղափոխական կեցվածքամոլության դեմ, դատապարտեց օպոզիցիայի առաջարկած «գեղեցիկ ժեստի» և «հեղափոխական պատերազմի» քաղաքականությունը, անողոք մերկացրեց օպոզիցիայի այն հերյուրանքները, թե գերմանական իմպերիալիստների հետ կնքած հաշտությունը կամ համաձայնությունը ինչ-որ «իմպերիալիստական գործարք է», թե իբր դա նշանակում է մոռանալ մեր պարտքը ինտերնացիոնալ պրոլետարիատի հանդեպ և հրաժարվել պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներից։ «Բայց այդ փաստարկն ակներև սխալ է,— գրում էր Լենինը։— Գործադուլը տանուլ տվող բանվորները, ստորագրելով աշխատանքը վերսկսելու իրենց համար ոչ-ձեռնտու... պայմանները, չեն դավաճանում սոցիալիզմին... Ով ժողովրդից ոչինչ չթաքցնելով, իմպերիալիստների հետ ոչ մի գաղտնի պայմանագիր չկնքելով, համաձայնում է ստորագրել թույլ ազգի համար ոչ-ձեռնտու, մի խմբի իմպերիալիստների համար ձեռնտու հաշտության պայմանագրեր, եթե տվյալ պահին պատերազմը շարունակելու ուժեր չկան, նա ամենափոքր չափով էլ չի դավաճանում սոցիալիզմին» (Երկեր, հ. 26, էջ 540—541)։

Լենինը բացահայտեց նաև «անհապաղ պատերազմի օգտին» բերվող այն փաստարկի սնանկությունը, թե, իբր, սովետական իշխանությունը, հաշտություն կնքելով, դառնում է գերմանական իմպերիալիզմի գործակալը, քանի որ դրանով նա օբյեկտիվորեն հնարավորություն է ընձեռում նրան ազատելու զորքերն արևելյան ռազմաճակատից, միլիոնավոր ռազմագերիների և այլն։ «Բայց այս փաստարկն էլ ակներև սխալ է,— ընդգծում էր Լենինը,— որովհետև հեղափոխական պատերազմը տվյալ մոմենտին մեզ կդարձներ, օբյեկտիվորեն, անգլո-ֆրանսիական իմպերիալիզմի գործակալներ, նրան տալով նրա նպատակներին օժանդակող ուժեր» (Երկեր, հ. 26, էջ 541)։



Վերջապես, հաշտության պայմանագրի ստորագրումից մի քանի շաբաթ առաջ, ամփոփելով դիսկուսիան, Լենինը, միաժամանակ, բացահայտեց կուսակցության առանձին անդամների առաջարկած պայմանների էության սխալ ըմբռնման պատճառները։ «Կուսակցական աշխատողների մեծամասնությունը... ելնելով ամենալավագույն հեղափոխական մղումներից ու լավագույն կուսակցական տրադիցիաներից, հրապուրվում է «վառ» լոզունգով, առանց ըմբռնելու նոր հասարակական-տնտեսական ու քաղաքական սիտուացիան, առանց հաշվի առնելու պայմանների փոփոխությունը, որը պահանջում է տակտիկայի արագ, կտրուկ փոփոխություն։ Եվ իմ ամբողջ վեճը, ինչպես և այն ժամանակ, հարկադրված եմ կենտրոնացնել այն բանի պարզաբանման վրա, որ մարքսիզմը պահանջում է հաշվի առնել օբյեկտիվ պայմաններն ու նրանց փոխհարաբերությունները, որ հարցը պետք է դնել կոնկրետ կերպով, այդ պայմանների համեմատ, որ այժմ արմատական փոփոխությունը Ռուսաստանի սովետների հանրապետության ստեղծումն է, որ թե՛ մեզ համար, թե՛ միջազգային-սոցիալիստական տեսակետից, ամենաբարձր բանն է պահպանել այդ հանրապետությունը, որն արդեն սկսել է սոցիալիստական հեղափոխություն, որ տվյալ մոմենտում Ռուսաստանի կողմից հեղափոխական պատերազմ վարելու լոզունգը կնշանակեր կամ ֆրազ ու դատարկ ցույց, կամ օբյեկտիվորեն կհավասարվեր այն ծուղակն ընկնելուն, որ մեզ համար պատրաստում են իմպերիալիստները, որոնք ցանկանում են ներքաշել մեզ իմպերիալիստական պատերազմը շարունակելու գործի մեջ, որպես առայժմ դեռևս թույլ մասնիկ, և հնարավոր չափով ավելի էժան միջոցով ջախջախել սովետների երիտասարդ հանրապետությունը» (Երկեր, հ. 26, էջ 550)։

Վճռականապես դատապարտելով «ձախ» ֆրազամոլներին, նրանց քաղաքական ավանտյուրիզմը, այն անհիմն պնդումները, թե «անհապաղ հեղափոխական պատերազմը» ամենամոտ ժամանակներում հեղափոխություն կառաջացնի Գերմանիայում, Անգլիայում, Իտալիայում, Լենինը հաստատակամորեն ձգտում էր հասնել հաշտության պայմանագրի ստորագրմանը և Սովետական Ռուսաստանը դուրս բերել պատերազմից։ Ընդսմին, նա ամենևին չէր տարվում պատրանքներով։ Քաջ գիտեր, որ, մի կողմից՝ աշխատավորության իղձերի իրականացումը հնարավոր կլինի միայն կապիտալիստական կարգերի լիակատար կործանման դեպքում և, մյուս կողմից՝ պատմական տվյալ կոնկրետ պայմաններում պատերազմից դուրս գալու համար հարկ կլինի շատ թանկ վճարել։ Այնուամենայնիվ, Լենինը բնավ չէր տատանվում։ Այդ էր նա պահանջում նաև նրանցից, ովքեր այս կամ այն կերպ առնչվում էին այդ պրոբլեմի լուծման հետ։ Այսպես, երբ պատահականորեն, ինչ-որ տեխնիկական պատճառներով սովետական պատվիրակությունն ուշացրեց հաշտության պայմանագրի ստորագրումը Բրեստ-Լիտովսկում, Լենինն անմիջապես հեռագրով պահանջեց չտատանվել և չհապաղել այդ գործում։

Արտաքին քաղաքականության բնագավառում ցուցաբերած նմանօրինակ վճռականությունը հիմնված էր այն խոր համոզման վրա, որ տվյալ շրջանում հաշտության, պատերազմից Սովետական Ռուսաստանի դուրս գալու գաղափարը սերտորեն առնչված է սկզբում մեկ, իսկ հետագայում բոլոր երկրներում սոցիալիզմի հաղթանակի հետ։ Ահա թե ինչու Լենինը հաճախ էր ընդգծում այն միտքը, որ իշխանությունն իր ձեռքը վերցրած պրոլետարիատի մղած հեղափոխական պատերազմի նպատակը միմիայն սոցիալիզմի ամրապնդումը պետք է լինի։

Բրեստի բանակցությունների և հաշտության պայմանագրի ստորագրման օրերին լենինյան տակտիկայի իմաստն ու էությունն այն էր, որ «անդամ շատ բանում» իմպերիալիզմին զիջելով, պայմաններ ստեղծել պրոլետարական հեղափոխության հաղթանակն ամրապնդելու համար։ Ընդ որում, պետք է նկատի ունենալ նաև, որ այդ զիջումը նախ՝ հարկադրյալ բնույթ ուներ, քանի որ ուժերը քիչ էին, երկրորդ, այն, անշուշտ, ժամանակավոր միջոցառում էր (հայտնի է, որ Գերմանիայի կապիտուլյացիայից հետո սովետական կառավարությունը 1918 թ. նոյեմբերի 13-ին չեղյալ հայտարարեց Բրեստ-Լիտովսկի հաշտության պայմանագիրը)։ Լենինն ընդգծում էր, որ դա «ուժերը հավաքելու» միջոց է։ Հետևապես այն զիջումը, որ Լենինը, բոլշևիկները համաձայնվեցին անել իմպերիալիզմին, համաշխարհային պատմական պրոցեսի տեսակետից սոսկ մասնակի, միաժամանակ երկրորդական բնույթ ուներ, քանի որ պայքարի պրոցեսում մանյովրելու հնարավորություն ստեղծելով մենք շահում էինք գլխավորում՝ նոր հասարակարգի հաղթանակի գործում։

Գերմանիայի հետ հաշտության պայմանագիր կնքելու շուրջ ծավալված ակտիվ ու դժվարին պայքարն ավարտվեց նրանով, որ 1918 թ. մարտի 3-ին կնքվեց իր նշանակությամբ, կարելի է ասել, դարակազմիկ արտաքին-քաղաքական մի փաստաթուղթ։ Արտաքուստ նվաստացուցիչ, բայց պատմականորեն արդարացված ու անհրաժեշտ այդ պայմանագիրն անգնահատելի ծառայություն մատուցեց Ռուսաստանի պրոլետարիատի հեղափոխական պայքարին, համաշխարհային հեղափոխական պրոցեսին, գիտական սոցիալիզմի տեսության հաղթանակին։

***

Սակայն պատերազմից դուրս գալու, խաղաղություն հաստատելու համար մղած պայքարի լենինյան տակտիկայի նշանակությունը չի սպառվում այն ժամանակաշրջանի հասարակական-քաղաքական կյանքի իրադարձություններով։ Չի՛ կարելի ասել, թե այդ տակտիկայի նշանակությունը սահմանափակված է ժամանակով կամ աշխարհագրական սահմաններով։ Այն անհամեմատ ավելի խոր է ու բովանդակալից։ Լենինյան տակտիկայի պատմական այս փորձը «գործել է» երկու համաշխարհային պատերազմների միջև ընկած ամբողջ ժամանակամիջոցում։ Այն «գործում է» նաև մեր օրերում։ Ընդ որում, այժմ, ինչպես նաև սոցիալական հակադիր սիստեմների փոխհարաբերությունների կեսդարյա պատմության ամբողջ ընթացքում, իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի լենինյան տակտիկայից կատարած ամեն մի նահանջ (հատկապես պատերազմի և խաղաղության հարցում) խիստ անախորժ հետևանքներ է ունենում։ Նահանջողն ավելի ծանր վիճակի մեջ է ընկնում, երբ դիմում է բացահայտ կուսակցական-քաղաքական ռենեգատության, դավաճանում բանվոր դասակարգի, բոլոր երկրների պրոլետարների շահերին։

Խաղաղության վսեմ գաղափարը, որ մարդկության պատմության ողջ ընթացքում փայփայել են մեծ մտածողներ Արիստոֆանը, Սոկրատը, Սենեկան, Մոնտենը, Լաֆոնտենը, Վոլտերը, Ռուսոն, Տոլստոյը, Հյուգոն և ուրիշները, միշտ մնացել է ժողովուրդների ու բազմաթիվ սերունդների անիրականալի երազանքը։ Եթե նախորդ դարաշրջաններում այդ իդեալի համար պայքարում էին միայն առանձին ականավոր գործիչներ, ապա ներկայումս այդ ասպարեզում արմատական փոփոխություններ են տեղի ունեցել։ Այժմ ըստ էության ամբողջ



մարդկությունն է մասնակցում այն մեծ գոտեմարտին, որ մղվում է հասարակության բախտի համար։

Պատերազմի և խաղաղության պրոբլեմն այժմ սերտորեն միահյուսված է սոցիալիստական հեղափոխության, աշխարհի հեղափոխական վերափոխման պրոբլեմների հետ։ Կոմունիստները բացահայտել են այն իրողությունը, որ մեր մեծ գործի հաջողությունը, ժողովուրդների ճակատագիրը նշանակալի չափով կախված են պատերազմի, խաղաղության և հեղափոխության հարցերում կոմունիստական շարժման ստրատեգիական ու տակտիկական դիրքորոշումներից։ Նրանք բազմիցս ընդգծել են, որ հեղափոխական պայքարի հաջողությունները յուրաքանչյուր առանձին երկրում անմիջականորեն առնչված են ամբողջ միջազգային իրադրության, համաշխարհային հեղափոխական պրոցեսի հետ։ Եվ դա հատկապես երկրորդ համաշխարհային պատերազմից հետո։

Եթե համաշխարհային երկու պատերազմների միջև ընկած ժամանակաշրջանում խաղաղությունը պրոլետարական հեղափոխության հաղթանակի և մեկ, առանձին վերցրած երկրում սոցիալիստական շինարարության հաջողության անվերապահ պայմանն էր, ապա երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից հետո խաղաղության «սատարիչ ֆունկցիաները» անհամեմատ լայնացել են։ Խաղաղությունն անվերապահ պայման է դարձել նախ այն բանի համար, որ Եվրոպայի և Ասիայի՝ մի շարք ժողովուրդների հակաֆաշիստական ազատագրական պայքարը վերաճի սոցիալիստական հեղափոխության, որ հաջողությամբ ընթանա սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումը համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրներում, խորանա բանվոր դասակարգի, աշխատավոր մասսաների հեղափոխական պայքարը կապիտալի երկրներում, որ է՛լ ավելի ծավալվի ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը։ Այդ երկրները խորտակելով գաղութային սիստեմը և ընտրելով զարգացման ոչ-կապիտալիստական ուղին, վերածվում են սոցիալիզմի ռեզերվի։ Վերջապես, ժամանակակից ահեղ զենքի առկայության պայմաններում խաղաղություն նշանակում է մարդկությանը փրկել մեծագույն ողբերգությունից՝ ջերմամիջուկային աղետից։

Վերոհիշյալ երևույթների դիալեկտիկական հանրագումարը, նրանց փոխհարաբերակցությունները առանձնահատուկ նշանակություն են հաղորդում պատերազմի ու խաղաղության պրոբլեմին, այն դարձնելով արդիականության կարևորագույն ու մեծ հարցերից մեկը։ Տեսության մեջ և պրակտիկայում սերտ կապված լինելով հեղափոխության հարցի հետ, պատերազմի ու խաղաղության պրոբլեմը, նրա լուծման եղանակը ներկայումս սոցիալական տարբեր ուժերի համար դարձել են այն փորձաքարը, որ ցույց է տալիս նրանց վերաբերմունքը հասարակության առաջադիմության նկատմամբ։ Այստեղ է ահա այն սահմանազատող գիծը, որ բանվոր դասակարգին ու աշխատավորությանը բաժանում է իմպերիալիստական բուրժուազիայից, ինչպես նաև այն գիծը, որ մարքս-լենինյան կուսակցություններին ու նրա դաշնակիցներին բաժանում է այն ուժերից, որոնք ոտք են դրել զանազան երանգի օպորտունիզմի ուղին, մասնավորապես նրանցից, ովքեր իրենց օպորտունիզմը սքողում են ուլտրա-հեղափոխական ֆրազներով։

Ուստի, ՍՄԿԿ-ն, սովետական կառավարությունը, մյուս սոցիալիստական երկրների կուսակցություններն ու կառավարությունները, ամբողջ համաշխարհային կոմունիստական շարժումը հարկադրված են պայքարել ինչպես իմպերիալիզմի, հատկապես ԱՄՆ-ի ու ԳՖՀ-ի գլխավորած ռեակցիոն ուժերի

դեմ, այնպես էլ օպորտունիզմի զանազան տարատեսակությունների, հատկապես ներկայումս առանձնակի վտանգ ներկայացնող օպորտունիզմի՝ իշխանության ղեկի մոտ կանգնած մաոիստների դեմ։ Ընդ սմին, հարկ է մաոիստների դեմ պայքարել բոլոր արմատական հարցերի, այդ թվում և պատերազմի, խաղաղության ու հեղափոխության հարցերի շուրջ։

Բնորոշ է, որ մաոիստները ճգնում են այնպես պատկերացնել գործը, թե ՍՄԿԿ-ի հետ տարաձայնվում են ո՛չ թե ստրատեգիայի, այլ տակտիկայի ոլորտում։ Եվ դա հասկանալի է։ Անգամ Պեկինի օպորտունիստ պառակտիչները չեն կարող բացեիբաց հանդես գալ բանվոր դասակարգի պայքարի բարձրագույն ու վերջնական նպատակների ռևիզիայով։ Ելնելով իրենց մեծապետական, նեղ-եսասիրական շահերից և հոխորտալով «հեղափոխության», «համարձակության», «վճռականության» մասին, մաոիստներն աշխատում են սքողել նաև պայքարի ստրատեգիական նպատակները։ Ի դեպ, նրանք այդ կոչերի հետ, ճիշտ այնպես, ինչպես կես դար առաջ տրոցկիզմի թշշացող կաթսայում, գործի են դնում այնպիսի «հուժկու զենք», ինչպիսիք են ԱՄՆ-ի կառավարությանը հասցեագրված... մի քանի հարյուր «լուրջ նախազգուշացումներ»։ Արդի օպորտունիզմի չինական խոհանոցում թխվում են այնպիսի հիերոգլիֆներ, որոնցում այդ «մարտնչող հեղափոխականները «ՍՍՀՄ-ին մեղադրում են «հեղափոխական հեռանկարները կորցնելու», «իմպերիալիզմի առջև նահանջելու, կապիտուլյացիայի դիմելու» մեջ և այլն։

Այն ավանտյուրիստական տեսակետին, թե միշտ էլ հնարավորություն կա հեղափոխություն ներմուծել դրսից («ժողովրդական հեղափոխության» տեսությունը) կամ թե պատերազմների միջոցով, այլ կերպ ասած՝ «պերմանենտ հեղափոխության» չինականացված վարիանտին ՍՄԿԿ-ն հակադրում է հակաիմպերիալիստական հետևողական պայքարի լենինյան տակտիկան։ Այդ տակտիկան ոչ մի ընդհանուր բան չունի օպորտունիստների պատկերացումների հետ։ ՍՄԿԿ-ի և մյուս մարքս-լենինյան կուսակցությունների հակաիմպերիալիստական պայքարի տակտիկան զերծ է ամեն տեսակ սուբյեկտիվիզմից, իսկ վերջինս, ինչպես հայտնի է, հաճախ համեմված է լինում կամ բակունիզմով, կամ բլանկիզմով։ Մեր կուսակցության հաստատակամ սկզբունքային և միևնույն ժամանակ ճկուն տակտիկան ամենևին չի բացառում նաև կոմպրոմիսները, բայց այս վերջինները պետք է այնպիսին լինեն, որոնք, ինչպես ասում էր Լենինը, հնարավորություն տան իրականացնելու մեր «հավատարմությունը մեր սկզբունքներին, մեր դասակարգին, մեր հեղափոխական խնդրին»։ Այդ տակտիկան անհրաժեշտ արտաքին-քաղաքական պայմաններ է ապահովում մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման, համաշխարհային սոցիալիստական սիստեմի մյուս երկրներում սոցիալիզմի կառուցման համար, կանխում է իմպերիալիստների «թակարդների մեջ ընկնելու» վտանգը, ինչպես նաև նպաստում է սոցիալիզմի ուժերի աճմանն ու համախմբմանը, համաշխարհային նոր պատերազմի սանձազերծմանը։

Շնորհիվ պայքարի լենինյան տակտիկայի, խաղաղության՝ ժողովուրդների վսեմ իդեալը՝ հասարակության կյանքից պատերազմները բացառելու ճանապարհ է հարթում միջպետական հարաբերություններում։ Արդի դարաշրջանում միայն այդ տակտիկան է լիովին համապատասխանում հասարակության զարգացման օբյեկտիվ պահանջներին, երբ, Մարքսի խոսքերով ասած, սկսվել է մարդկության իսկական պատմությունը։

ՔԱԼԱՇՅԱՆ Լ. Խ.

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՌԹԻՎ

Մեր կյանքի դինամիզմը, նրա զարգացման վիթխարի տեմպերն իրենց կնիքն են դնում մարդկանց փոխհարաբերությունների վրա։ Այն, ինչ ճշմարիտ էր երեկ, խորանում է այսօր և առավել կխորացվի ու կճշտվի վաղը։ Այդ ոգով են տոգորված մեր իրականության բոլոր ոլորտները՝ դա լինի տնտեսական փոխհարաբերություններ, գիտություն թե բարոյականություն։ Ամենուրեք առաջանում են նոր երևույթներ, որոնք արդյունք են սոցիալիստական հարաբերությունների աստիճանական վերափոխմանը կոմունիստականի։

Նման տեղաշարժեր մենք նկատում ենք նաև կոմունիստական բարոյականության ոլորտներում։ Այստեղ իրադրությունն ավելի բարդ է։ Բարոյականության նոր միտումները, որոնք իրենց հետ անխուսափելիորեն բերում են բարձրացող նոր սերունդները, հաճախ դժվարըմբռնելի են նախորդ սերունդների համար։ Նրանց մոտ արդեն ձևավորված բարոյական համոզումները հեշտ կերպով իրենց տեղը չեն զիջում այն պատկերացումներին, որոնք արդյունք են կյանքի նոր պայմանների։ Յուրաքանչյուր նոր սերունդ, հենվելով նախորդների հոգևոր ժառանգության վրա, ջանում է իր հերթին զարգացնել ժառանգածը։

Սոցիալական այս օրինաչափության մեջ երևան է գալիս հոգեբանական մի խոր հակասություն՝ ծնողներին հաճախ թվում է, որ իրենց զավակները պարտավոր են նույնությամբ կրկնել կյանքի այն ուղին, որով իրենք են անցել։ Սա անշուշտ, մոլորություն է, որը երբեմն կարող է հասցնել ծնողների ու երեխաների միջև եղած փոխհարաբերությունների բարդացման, երբ ծնողները չեն ցանկանում հասկանալ իրենց զավակների որոնումները, ցանկությունններն ու ձգտումները։

Աճող սերունդների բարոյական վարքագծի մեջ եղած փոփոխություններն արդյունք են կյանքի նոր պայմանների։ Ուստի բարոյական նոր նորմերի ըմբռնելիությունը հնարավոր է միայն այն դեպքում և այն պայմաններում, երբ դրանք կոչված են կյանքի ուժով։ Այլ կերպ դրանք ոչ միայն անօգուտ են, այլև պարզապես անհասկանալի։

Այդ լիովին վերաբերում է մեր կենցաղում գործող բարոյական շատ պատկերացումներին։ Ժամանակակից մի շարք բարոյական հասկացություններ, որոնք կենցաղում սովորական են ու հասկանալի, կոմունիզմի պայմաններում անշուշտ, կկորցնեն իրենց իմաստը՝ լիովին կամ մասամբ։ Դա պայմանավոր-

*ված կլինի կյանքի այն փոփոխություններով, որոնք տեղի կունենան մեր հասարակության մեջ կոմունիստական հասարակարգի կառուցման ընթացքում։ Նոր կեցությունը ձևավորելու է գիտակցության նոր ձևեր, այդ թվում, իհարկե, բարոյական նոր հասկացություններ։ Այն, ինչ այսօր սովորական է ու անհրաժեշտ, վաղը կդառնա տարօրինակ ու ավելորդ։ Դա առաջին հերթին վերաբերում է բարոյական այն նորմերին, որոնք առկա են ընտանեկան փոխհարաբերություններում։*

*Կվերանա՞ արդյոք ընտանիքը։ Թվում է թե ոչ։ Բայց դա չի նշանակում, որ ոչ մի փոփոխություն տեղի չի ունենա ժամանակակից ընտանեկան փոխհարաբերությունների մեջ։ Անշուշտ, այդպիսի փոփոխություններ կլինեն, որոնք նախ և առաջ կվերաբերեն ընտանիքի ձևավորման իրավական կողմերին։*

*Ժամանակակից ընտանիքի կազմավորման պրոցեսն ընթանում է իրավական ակտերի ձևավորման միջոցով, որի հետևանքով կողմերն օժտվում են իրավունքներով և ստանձնում՝ պարտականություններ, որոնք վերաբերում են ամուսինների միջև եղած տնտեսական փոխհարաբերություններին, բնակարանային հարցերին, երեխաների նկատմամբ հոգատարության խնդիրներին, ապահարզանի իրավունքին և այլն։ Այլ կերպ ասած, այն ինչ մարդկային է ու ինքնըստինքյան հասկանալի՝ տրամաբանության և բարոյականության տեսանկյունով, մարդիկ պարտավորվում են կատարել հարկադրանքի միջոցով, հակառակ դեպքում նրանց նկատմամբ կիրագործվի վարչական ուժը։ Հենց այդ «հակառակ դեպքումն» է, որ «անմարդկային» է ու կվերանա կոմունիզմի պայմաններում։ Այս դեպքում մարդիկ իրենց ամուսնական կյանքը պետք է ստեղծեն ոչ թե պայմանագրային հարաբերությունների մեջ մտնելով, այլ բարոյական նորմերից ելնելով։ Այլ բան է, որ առայժմ մենք մարդկանց թելադրում ենք օրենքի ուժով, որպեսզի նրանք կատարեն իրենց ամուսնական պարտականությունները։ Այս վիճակն, անշուշտ, չի համապատասխանում կոմունիստական բարոյականության ոգուն։ Նման վիճակը, սակայն, դեռ պահպանվում է, քանի որ մեր էկոնոմիկան առայժմ դեռ ի վիճակի չէ ստեղծելու այն ամենն, ինչ անհրաժեշտ է ընտանիքին, որն ի վերջո պիտի կորցնի իր տնտեսական ֆունկցիան, որից զերծ չէ ժամանակակից ընտանիքը։ Դա վերաբերում է բնակարանային պայմաններին, սննդի հարցերին, կենցաղային հարմարություններին և այլն։*

*Եվ երբ այս ամենը կկորցնի իր իմաստը, երբ հասարակությունն ի վիճակի կլինի իր վրա վերցնել ընտանիքի տնտեսական ու կենցաղային բոլոր հոգսերը, ընտանիքի կազմակերպումը ձեռք կբերի միայն բարոյական իմաստ։ Մարդիկ ընտանիք կկազմեն ամենից առաջ իրենց ֆիզիոլոգիական և հոգեկան ձգտումները բավարարելու համար։ Այդպիսի ընտանիքները կձևավորվեն և կպահպանվեն այնքան ժամանակ, քանի դեռ ամուսինների մոտ վառ է սիրո ու փոխադարձ հարգանքի զգացմունքը։ Իսկ երբ հոգեկան ու ֆիզիկական այդ փոխադարձ հակումները վերանան, ապա առանց որևէ կողմնակի ուժերի միջամտության ու մտահոգության, մարդիկ կհեռանան իրարից։ Նրանց չեն կաշկանդի ոչ տնտեսական և ոչ էլ կենցաղային դժվարությունները։*

*Խոսելով այս հարցերի շուրջ, Ֆ. էնգելսն իր* Կոմունիզմի սկզբունքները *աշխատությունում գրում է.*

> «Ի՞նչ ազդեցություն կունենա կոմունիստական հասարակարգն ընտանիքի վրա։ Սեռերի հարաբերությունները կդառնան բացառապես մասնավոր գործ, որը կվերաբերի միայն շահագրգռված անձերին և որի մեջ հասարակությունը կարիք չունի խառնվելու։ Դա



> հնարավոր է մասնավոր սեփականության վերացման և երեխաների հասարակական դաստիարակության շնորհիվ, որի հետևանքով վերանում են ժամանակակից ամուսնության՝ մասնավոր սեփականության հետ կապված երկու հիմքեր՝ կնոջ կախումը ամուսնուց և զավակների կախումը ծնողներից» (Ֆ. էնգելս, «Կոմունիզմի հիմունքները», Հայպետհրատ, 1959, 21-րդ հարց)։

*Փոխադարձ սիրուց զուրկ ամուսինների ընտանեկան կապերի իրավական պահպանման պրակտիկան այսօր արդեն իրեն չի արդարացնում։ Բազմաթիվ են այն ձևական ընտանիքները, որոնք իրավականորեն դեռ գոյություն ունեն, իսկ փաստացի՝ արդեն վաղուց կազմալուծվել են և նույնիսկ կողմերը կազմել են նոր ընտանիքներ, որոնց իրավաբանական ձևակերպումը հնարավոր չէ միայն այն պատճառով, որ նախորդ ընտանիքի բաժանման իրավաբանական ձևակերպումը դեռ չի կատարվել։ Սա խոսում է անշուշտ այն ճշմարտության մասին, որ պատմականորեն ընտանիքի կազմավորման իրավաբանական ձևն արդեն հետզհետե իրեն սպառում է։ Այն լիովին կվերանա կոմունիզմի պայմաններում։*

> «Կոմունիզմին անցնելու պրոցեսում,— *նշում է կուսակցության ծրագիրը,*— գնալով է՛լ ավելի է անում բարոյական սկզբունքների դերը հասարակության կյանքում, ընդլայնվում է բարոյական գործոնի ազդեցության ոլորտը և համապատասխանորեն նվազում է մարդկանց փոխհարաբերությունների վարչական կարգավորման նշանակությունը» (ՍՄԿԿ ծրագիրը, էջ 145)։

*Դա նշանակո՞ւմ է արդյոք, որ կոմունիզմի օրոք կթուլանան ընտանեկան կապերը։ Բոլորովին ոչ։ Ընդհակառակն, այդ կապերը շատ ավելի կամրապնդվեն և կհենվեն փոխադարձ սիրո և հարգանքի վրա, քանի որ ընտանիքի կազմավորման միակ դրդապատճառները կլինեն բնախոսական և հոգեկան ձգտումները։ Կվերանան այն արհեստական կապերը, որոնք շատ հաճախ չարաշահվում են այս կամ այն ամուսինների կողմից։ Ընտանիքը կպահպանվի միմիայն ոչնչով չկաշկանդվող անկեղծ սիրո զգացմունքների հիման վրա։ Այս իմաստով կվերանա նաև ապահարզանի ժամանակակից հասկացությունը և նրա հետ կապված հասարակական կարծիքը։*

*Ընտանիքի կազմալուծման փաստը մեր օրերում իր մեջ պահպանում է նաև բարոյականությանը հակասող հոգեբանության որոշակի էլեմենտներ։ Ենթադրվում է, որ ընտանիքի մի կերպ պահպանման փաստն ավելի բարոյական քայլ է, քան ապահարզանը, եթե նույնիսկ այդ ընտանիքում չի մնացել փոխադարձ սիրո ու հարգանքի որևիցե նշույլ։ Այս հոգեբանությունը հաճախ արդարացվում է երեխաների վիճակով։ Հանուն երեխաների, մտածում են այդ տեսակետի տեր մարդիկ, պետք է ամեն գնով պահպանել ընտանիքը։*

*Այստեղ բոլորովին աչքաթող է արվում այն դժոխային մթնոլորտը, որը կարող է ստեղծվել ստիպողական համատեղ կյանքի շնորհիվ, որն առաջին հերթին անդրադառնում է հենց երեխաների հոգեբանության վրա։ Ուստի «մի կերպ» ընտանիքի պահպանման կարծիքը չի ելնում ոչ ամուսինների և ոչ էլ երեխաների շահերից։ Այն հակադրվում է այն օբյեկտիվ օրինաչափություններին, որոնք կան կյանքում՝ ընտանեկան փոխհարաբերությունների զարգացման ասպարեզում։*

*Ապահարզանի նկատմամբ եղած բարոյական վերաբերմունքը վերջին ժամանակները բավականին փոփոխվել է։ Եթե ոչ հեռու անցյալում ապահարզանն ըստ հասարակական կարծիքի դիտվում էր ինչ որ խոշոր ամոթաբեր բան, ապա այժմ այն միայն համարվում է անցանկալի արարք, իսկ ապագայում այդ հասկացությունը պարզապես կորցնելու է իր ներկա բովանդակությունը։*

> «...Ռեակցիոներները,— *գրում է Լենինը,*— դեմ են ապահարզանի ազատությանը, այդ ազատության հետ «զգույշ վարվելու» կոչ անելով և աղաղակելով, որ այդ ազատությունն «ընտանիքի քայքայում» է նշանակում... իրականում ապահարզանի ազատությունը ոչ թե ընտանեկան կապերի «քայքայում» է նշանակում, այլ՝ ընդհակառակը, նրանց ամրացում քաղաքակիրթ հասարակության մեջ միակ հնարավոր ու կայուն դեմոկրատական հիմունքներով...» (Երկեր, հ. 20, էջ 526):

*Համատեղ կյանքի ազատությունն իր անհրաժեշտությամբ համազոր է այն ազատությանը, որը մերժում է անհնար համակեցությունը: Եթե ճշմարիտ ու բարոյական է այն, որ զույգերի միասնական կյանքի ստեղծմանը չպետք է խանգարի ոչ մի տնտեսական, կրոնական կամ մեկ այլ արտաքին խոչընդոտ, ապա նույն չափով ճշմարիտ ու բարոյական պետք է համարել այդ նույն զույգերի անջատումը:*

> «Եթե բարոյական է միայն սիրո վրա հիմնված ամուսնությունը,— *գրում է Էնգելսը,*— ապա նաև բարոյական է միայն այն ամուսնությունը, որի մեջ սերը դեռ շարունակում է գոյություն ունենալ, ...և եթե փոխադարձ զգացմունքը վերջնականապես սպառվել է և նրան դուրս է մղել մի նոր կրքոտ սեր, ապա ամուսնալուծությունը բարեգործություն է թե՛ երկու կողմերի, և թե հասարակության համար» *(Կ. Մարքս և Ֆ. Էնգելս,* Ընտիր երկեր, հատ. 2, էջ 302):

*Զույգերի համատեղ կյանքի կազմալուծումը նույն ազդեցությունը կթողնի մարդկանց վրա, ինչ ազդեցություն կունենա տղամարդու և կնոջ միջև ստեղծվող համատեղ կյանքի փաստը: Երկու դեպքում էլ այդ արարքները կդիտվեն որպես անմիջական ու սովորական երևույթներ, որոնք լիովին համապատասխանում են անհատի ազատության գաղափարին:*

*Կոմունիստական հասարակարգում որոշակի փոփոխություններ են տեղի ունենալու ընտանեկան փոխհարաբերությունների մեջ՝ կնոջ դերի ու նշանակության բարձրացմամբ: Այդ, իհարկե, չի նշանակում, որ կյանքի զարգացումը հասցնելու է մայրիշխանության (մատրիարխատի) վերականգնման, սակայն դա անվիճելիորեն վկայում է, որ գնալով ավելի ու ավելի է մեծանում կնոջ դերը ընտանեկան փոխհարաբերություններում: Այն փաստը, որ մեր օրերում կնոջ հասարակական դերը բոլոր առումներով՝ իրավական, տնտեսական ու քաղաքական, լրիվ հավասարվել է տղամարդուն, ոչ մի վեճի առիթ չի տալիս: Բայց դեռ մենք պարզապես չենք ցանկանում գիտակցել, որ ընտանեկան փոխհարաբերություններում նույնպես տեղի են ունեցել նմանօրինակ փոփոխություններ: Դեռ ավելին, կինն այսօր փաստորեն* ընտանիքում *ունի ավելի մեծ կշիռ ու նշանակություն, քան տղամարդը: Եվ մենք պարզ պատկերացնենք այն, որ հասարակական կարծիքը գնալով ավելի է թեքվում հօգուտ կնոջ սոցիալական վիճակի հետագա բարձրացման, ապա ոչ մի կասկած չի առաջացնի այն պարագան, որն ընթանալու է ընտանիքում կնոջ դերի հետագա էլ ավելի բարձրացման ուղղությամբ:*

*Դրա ապացույցն է հանդիսանում նաև մեկ այլ փաստ, եթե մենք վերանանք դրա նեղ կենցաղային իմաստից և ընկալենք այն հասարակական նշանակության դիրքերից: Դա վերաբերում է ընտանեկան առօրյա փոխհարաբերությունների բազմապիսի հարցերի կարգավորման, այդ բնագավառում եղած թերությունների և բացթողումների քննադատության ու շտկման ոգուն: Անշուշտ, կինն այս ասպարեզում ավելի ակտիվ է: Եթե մենք փորձենք ընդհանրացնել գրեթե բոլոր ընտանիքներում տիրող իրավիճակը, ապա կհանգենք այն եզրակացության, որ այս հարցում բոլոր կանայք կատարում են քննադատողի դեր,*



*իսկ տղամարդիկ գտնվում են միայն արդարացողի ու մեկնաբանողի վիճակում: Ընտանիքում կնոջ հոգսերի ու պատասխանատվության աստիճանը մեր օրերում շատ է բարձրացել ու գնալով ավելի է բարձրանում: Դա, անշուշտ, սոցիալական օրինաչափություն է, որը պայմանավորված է կոմունիստական հասարակարգի կառուցման սոցիալ-տնտեսական տենդենցներով:*

*Ֆ. Էնգելսն ասում է, որ հասարակության պրոգրեսի ընթացքում ռեալ փոփոխություններ են տեղի ունենալու նաև ընտանեկան փոխհարաբերությունների մեջ, որը ընթանալու է ներկա միամուսնության (մոնոգամիայի) տեղաշարժերի և տղամարդկանց կենցաղային իրավունքների սահմանափակման ուղիներով:*

*Խոսելով արտադրամիջոցների մասնավոր սեփականության վերացման անհրաժեշտության և ընտանիքի վրա ունեցած այդ փաստի հետևանքների մասին, Ֆ. Էնգելսը* Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը *աշխատության մեջ գրում է.*

> «Բայց այդ ժամանակ անպայման կանհետանան մոնոգամիայի միջից այն բոլոր բնորոշ գծերը, որոնք նրա վզին փաթաթվել են սեփականատիրական որոշ հարաբերություններից նրա ծագած լինելու հետևանքով, իսկ այդ բնորոշ գծերն են նախ՝ տղամարդու տիրապետող դերը, և երկրորդ՝ ամուսնության անլուծելիությունը: Տղամարդու տիրապետությունն ամուսնության մեջ պարզապես հետևանք է նրա տնտեսական գերակշռության և ինքնըստինքյան կվերանա այս վերջինի հետ միասին: Ամուսնության անլուծելիությունը մասամբ այն տնտեսական դրության հետևանք է, որի պայմաններում առաջ է եկել մոնոգամիան. մասամբ էլ այն ժամանակներից մնացած տրադիցիա է, երբ այս տնտեսական դրության ու մոնոգամիայի կապակցությունը ճիշտ չէր ըմբռնվում և չափազանցվում էր կրոնի կողմից: Այդ անլուծելիությունն արդեն մեր օրերում հազարավոր անգամներ խախտվում է» *(Նույն տեղը, էջ 301—302):*

*Այդ ամենը նշանակում է արդյո՞ք, որ կոմունիզմի պայմաններում կվերանան բարոյական այնպիսի հասկացությունները, ինչպես, օրինակ «հայրական» կամ «մայրական» սերը: Իհարկե, ո՛չ: Սակայն նրանք իրենց մեջ չեն պարունակի այն բոլոր էլեմենտները, ինչ դրանք ունեն ներկա պայմաններում: Այդ հասկացությունները, անշուշտ, զգալի կերպով կփոփոխվեն. դրանք ձեռք կբերեն նոր բովանդակություն: Այդ փոփոխություններն ավելի զգալի կլինեն «հայրական սեր» հասկացության մեջ, քան «մայրական սեր»:*

*Մայրը, անշուշտ, ավելի նուրբ ու կոնկրետ կապերով է առնչվելու երեխաների հետ, քան այդ ի վիճակի է անելու տղամարդը: Դա կնոջ օրգանիզմի բիոլոգիական կառուցվածքի արդյունքն է, որը տվյալ դեպքում ձեռք է բերելու սոցիալական իմաստ և հանդիսանալու է այն պատճառներից մեկը, որով պայմանավորվելու է կնոջ որոշակի առավելությունները տղամարդու նկատմամբ: Տղամարդը, համեմատական իմաստով, ավելի քիչ հոգատարություն է ցուցաբերելու երեխայի նկատմամբ, քան այդ անելու է կինը: Կինը ազատվելով տնտեսական շատ հոգսերից և ձեռք բերելով լիակատար ազատություն, անշուշտ, իր հոգեկան ուժերն ավելի շատ է նվիրելու երեխային, թեպետ և վերջինիս հոգատարության և դաստիարակության հոգսերը, ինչպես Էնգելսն է ասում, լիովին իր վրա է վերցնելու հասարակությունը: Մայրական սերը թեկուզ և փոփոխելու է իր դրսևորման ձևերը, սակայն դրանից նա ոչ մի դեպքում չի թուլանալու, եթե ոչ հակառակը: Երեխայի բարեկեցության հոգսը, անշուշտ, շարունակելու է մնալ կնոջ հոգևոր աշխարհի ամենաառաջնային մտահոգությունը: Երեխայի նյութական ու կենցաղային բարեկեցության ապահովման պայմաններում կինը չի դադարելու հոգեբանորեն մտահոգվել իր երեխայի մա-*

տին։ Կնոջ բարոյական վարքագծում երեխան խաղալու է ավելի մեծ դեր, քան
դա տեղի է ունենալու տղամարդու մոտ։ Այս հանգամանքը, անշուշտ, բարոյա-
կան գերադասություն է տալու կնոջը տղամարդու նկատմամբ։ Դա ոչ թե տեղի
է ունենալու տղամարդու նկատմամբ ցուցաբերվող հանդիմանությունների
ձևով (ինչպես երբեմն լինում է մեր օրերում), այլ պարզապես հանդես է գալու
որպես օրինաչափ իրավիճակ, որի համար ո՛չ կինն է հանդիմանելու տղամար-
դուն և ոչ էլ տղամարդը գովելու կնոջը։ Դա պարզապես գիտակցվելու է որպես
մարդկային կյանքի անհրաժեշտություն։

Բարոյական հասկացությունների փոփոխություններ տեղի են ունենալու
նաև բարձրացող սերնդի գիտակցության մեջ։ Դա առաջին հերթին վերաբերում
է բարոյական այն հոգեվիճակին, որը գոյություն ունի այժմ ծնողների և երե-
խաների միջև իրավական փոխհարաբերությունների շնորհիվ։

Ներկա բարոյական պատկերացումներով երեխաները նախատվում են այն
բանի համար, որ նրանք առանձնահատուկ ենթարկվածություն չեն ցուցաբե-
րում ծնողների նկատմամբ, չեն կատարում նրանց կամքը, չեն խնամում նրանց
ծերության պահին այն չափով, ինչ չափով կցանկանային նրանք կամ հուսա-
դրված էին այդ բանում։ Մի խոսքով, երևան է գալիս հոգեկան ու բարոյական
այն պրոբլեմը, որն առանձին դեպքերում անվանվում է «հայրերի ու որդիների
պրոբլեմ»։ Այս ամենը, անշուշտ, չի մնա նույն վիճակում։ Երեխաների վերա-
բերմունքը ծնողների նկատմամբ կընդունի ավելի դեմոկրատական ձևեր։
Այն կհիմնվի գլխավորապես բարոյական սկզբունքների վրա, որում որոշիչ
շարժառիթը լինելու է հարգանքի զգացմունքը։ Երեխաները ծնողական զգաց-
մունքը գիտակցելու են ոչ թե նյութական ու կենցաղային պայմանների միջո-
ցով, որոնք ստեղծվելու են ծնողների շնորհիվ, այլ այն հոգեկան ջերմությամբ,
բարոյական վարքագծի ճշմարտությամբ ու փոխըմբռնմամբ, որը ստեղծվելու
է ծնողների և երեխաների միջև։ Ծնողական կամքի հրամայական տոնը տեղի
է տալու փոխադարձ հարգանքի վարքագծին։ Մայրական կամ հայրական հե-
ղինակությունը պայմանավորված է լինելու այն բանով, թե երեխաներն ինչ-
քանով են նրանց մեջ տեսնելու մարդկային բարոյականության դրսևորման
վեհ զգացմունքներ, առաքինի արարքներ։ Երեխաների կապվածությունը ծնող-
ների հետ պայմանավորված է լինելու բարոյական ու հոգեկան արժանիքներով
և ոչ թե տնտեսական ու իրավական մոտիվներով։ Ծնողների նկատմամբ դրսևոր-
վող հարգանքը հանդիսանալու է ծնողների առաքինության արդյունք, այլ ոչ
ծնողական փաստի ֆիզիոլոգիական պատկերացումների հետևանք։ Երեխաների
և ծնողների փոխհարաբերության բոլոր դրսևորումները լիովին անցնելու են
բարոյականության ոլորտը։

Կոմունիզմի օրոք միայն բարոյականության ուժով են կարգավորվելու ու
ընկալվելու մարդկային բոլոր փոխհարաբերությունները։ Բարոյականությունը
դառնալու է մարդկային վարքագծի միակ չափանիշը, որի ուժով են գնահատ-
վելու մարդկանց հասարակական ու անձնական արարքները։ Ստեղծվելու է
բարոյականության անկաշկանդ ու բացարձակ տիրապետության մի ժամանա-
կաշրջան, որն ամենաիդեալական ձևով համապատասխանելու է մարդու բուն
էությանը, մարդկանց այն ձգտումներին, որոնք մարմնավորում են արդարու-
թյան, ազատության, առաքինության ու բազմաթիվ այլ հիրավի ճշմարիտ բա-
րոյական իդեալներ։

Բարոյականությունը կոմունիզմի պայմաններում ձեռք է բերում սոցիա-
լական նոր իմաստ։ Այն ստանձնելով իրավունքի ֆունկցիաներ, դառնում է



մարդկային փոխհարաբերությունների միակ կարգավորիչը, ձեռք է բերում
թելադրող իմաստ։ Բարոյականության նորմերի պահպանումը դառնում է
պարտադիր։ Սակայն դա այն իմաստը չունի, ինչ կար նախնադարյան համայ-
նական հասարակարգում, որտեղ բարոյականությունը նույնպես հանդիսանում
էր մարդկային վարքագծի միակ չափանիշը։

Ապագա կոմունիստական հասարակարգում բարոյականության էությունը
լինելու է հումանիզմը, որը նախնադարում չենք նկատում։ Մյուս տարբերիչ
հատկությունը, որ մենք նկատում ենք նախնադարյան համայնական հասա-
րակարգի և ապագա կոմունիստական հասարակարգի բարոյականության
միջև, այն է, որ նախնադարում բարոյական նորմերը խարսխվում ու կի-
րառվում էին հիմնականում բարքերի ու կույր սովորությունների հիման վրա,
որտեղ հասարակական կարծիքը, որպես այդպիսին, դեր չուներ, մինչդեռ կո-
մունիստական հասարակարգում բարոյականությունը խարսխվելու է բանակա-
նության վրա և կարգավորվելու է հասարակական կարծիքի կողմից։ Հասարա-
կական կարծիքը դառնալու է այն միակ հզոր պարտադիր ուժը, որն աչա-
լուրջ հետևելու է կոմունիստական բարոյականության նորմերի անշեղ կա-
տարմանը։

Եվ քանի որ այդ նորմերի կիրառումը լինելու է ոչ թե պարտականություն,
այլ հոգեկան կյանքի ներքին անհրաժեշտություն, ուստի հասարակական կար-
ծիքի միջամտությունը լինելու է միայն առանձին դեպքերում, այն էլ բացառիկ
միջոց, ինչպես Ֆ. Էնգելսն է ասում՝ «գանգատները» լուծելու համար, որոնք
«այն ժամանակ կդառնան հազվադեպ բացառություն միայն...» (Նույն տեղը,
էջ 538)։

Այստեղ մենք ցանկանում ենք կանգ առնել նաև մեկ այլ հարցի վրա։ Դա
բարոյականության ասպարեզում անհրաժեշտության և ազատության փոխ-
հարաբերության հարցն է, որը կոմունիզմի պայմաններում դրսևորվելու է
այլ բնույթով։ Այս դեպքում մենք պարտավոր ենք ցույց տալ բարոյականու-
թյան մեջ անհրաժեշտության իմաստը և, առհասարակ իրավացի՞ ենք ար-
դյոք մենք բարոյականության լիակատար ազատության պայմաններում խոսել
ինչ-որ անհրաժեշտության մասին։ Տրամաբանական հակասություն չէ՞ արդյոք
նման մտածելակերպը, կամ մենք մի գուցե տուրք ենք տալիս սխեմատիկ
պատկերացումներին, որոնցից մեր միտքը դեռ ազատվել չի կարող։

Մի բան մենք այսօր կարող ենք որոշակիորեն ասել, որ անհրաժեշտության
մեր ներկա պատկերացումները, որոնք ասոցիացիայի են ենթարկվում իրա-
վունքի հասկացության հետ, կոմունիզմի պայմաններում գոյություն չեն ունե-
նա։ Սա, անշուշտ, ճշմարտություն է, բայց դա դեռ քիչ է։ Դա չի պատասխա-
նում այն հարցին, թե կոմունիզմի պայմաններում բարոյականության մեջ
անհրաժեշտության կատեգորիան, որպես այդպիսին, պահպանելո՞ւ է իր ուժը,
թե՞ վերանալու է մեր գիտակցությունից։ Այս հարցին մենք համեմատաբար
հեշտ ենք տալիս դրական պատասխան, քանի որ շատ ավելի դժվար է պատ-
կերացնել այն փոփոխություններն ու դրսևորման ձևերը, որոնք տեղի են ունե-
նալու անհրաժեշտության և ազատության փոխհարաբերությունների միջև կո-
մունիզմի պայմաններում։ Ո՞րն է լինելու այն չափանիշը, որով մենք մարդ-
կանց կոնկրետ արարքը գնահատենք կամ անհրաժեշտության կամ ազատու-
թյան դրսևորում։

Փորձ անելով պատասխանել այս հարցին, մենք նախապես ցանկանում
ենք ի նկատի ունենալ հետևյալ հանգամանքը։ Եթե մենք թույլ ենք տալիս այն

դրույթը, որ կոմունիզմի պայմաններում մարդկանց բարոյական վարքագիծը նրանց կամքի լիակատար ազատության դրսևորումն է, որը միաժամանակ ներդաշնակվելու է հասարակական շահերին ու դրանով հանդերձ լինելու է մարդկանց ներքին աշխարհի հոգեկան անհրաժեշտությունը, ասենք, օրինակ, մարդասիրությունը, ապա դրանով մենք արդեն կարծես թե նույնացնում ենք անհրաժեշտության և ազատության հասկացությունները։ Այսինքն, նույն արարքը, որն արդյունք է ազատության, միաժամանակ հանդիսանում է նաև անհրաժեշտություն։ Այլ կերպ ասած, անհրաժեշտության հասկացությունը տարրալուծվում է ազատություն հասկացության մեջ և ընդհակառակը, հետևաբար և վերանում է այդ երկու հասկացություններից մեկը։ Արարքը դիտվում և գնահատվում է մի տեսանկյունով։ Այն պատկերացվում է կամ ազատության կամ անհրաժեշտության դրսևորում։ Այդպե՞ս են արդյոք ընկալվելու բարոյական արարքները կոմունիզմի պայմաններում։ Մեզ թվում է, որ ոչ։ Հակառակ դեպքում կորչում են օբյեկտիվ այն գնահատականները, որոնց ուժով մարդիկ, թեկուզ և «հազվադեպ բացառության» դեպքերում, ինչպես Էնգելսն էր ասում, ի վիճակի կլինեն կանխել առանձին ոչ բարոյական արարքները։ Եվ այդ կանխումը կամ դատապարտումը պետք է որ դիտվի հասարակության կողմից, որպես արդարացի և անհրաժեշտ երևույթ։ Այսինքն, պետք է գոյություն ունենան արդարության ու անհրաժեշտության օբյեկտիվ գնահատականներ։ Այլ կերպ անհնարին կլինի (թեկուզ և հոգեկան խանգարումների հետևանքով) անբարոյական արարքների կանխումը։

Այսպիսով, եթե մենք կոմունիզմի պայմաններում բարոյականության ոլորտներում թույլ ենք տալիս անհրաժեշտության կատեգորիայի գոյությունը, ապա ո՞րն է այն բովանդակությունը, որով այդ հասկացությունը մարմնավորվում է բարոյականության մեջ։ Դա բարոյական այն գիտակցությունն է, որի հասարակական անհրաժեշտ բնույթն ամենաներդաշնակ կերպով համընկնում է առանձին մարդկանց սուբյեկտիվ ցանկությունների ազատ դրսևորումներին։ Բարոյականության մեջ անհրաժեշտության պատկերացումը բնորոշվում է ոչ թե մարդու կամքի ազատ ձգտումներից անկախ երևույթ, որն առնչվում է ազատ արարքների հետ ու ստեղծում ինչ-որ միջին հասկացություն, ինչպես փորձում էր ապացուցել Դյուրինգը, այլ հենց ազատության գաղափարի օրգանական մասը կազմող անհրաժեշտ ատրիբուտ։ Անհրաժեշտության ու ազատության պատկերացումները ոչ թե իրար միաձուլված մի հասկացություն են, այլ երկու հասկացությունների դիալեկտիկական միասնություն։

Անհրաժեշտությունը ոչ հակադրվում, ոչ էլ նույնանում է ազատության հետ. այդ երկու հասկացությունները կոմունիզմի պայմաններում բարոյականության ասպարեզում ստանում են մաքսիմալ ներդաշնակություն։ Ֆ. Էնգելսը գտնում էր, որ այդ ներդաշնակության չափանիշը պայմանավորված է այն փաստով, թե ազատ մտածող ու գործող մարդիկ ինչ աստիճանով են ի վիճակի ըմբռնելու բնության և հասարակության օրինաչափությունները։ Նա ցույց էր տալիս, որ իսկական ազատության մասին կարելի է խոսել միայն կոմունիզմի ժամանակ։

Կոմունիզմն անհրաժեշտության բարձունքներին է հասցնում բարոյականության ազատ դրսևորման ձգտումները, որոնք լինելով անհատ մարդկանց ցանկությունները, միաժամանակ իրենց էությամբ համամարդկային են։ Կոմունիզմն՝ անհրաժեշտության ազատ դրսևորման դարաշրջան է։

ԳՐԻԳՈՐՅԱՆ Թ. Գ.

ՀԿԿ Երևանի 26 կոմիսարների շրջկոմի քարտուղար

# ԵՎ ՄԱՅՐ, ԵՎ ՔԱՂԱՔԱՑԻ

1910 թվականին, Կոպենհագեն քաղաքում, կին սոցիալիստների միջազգային II կոնֆերանսը որոշում ընդունեց մարտի 8-ը հայտարարել կանանց միջազգային օր։ Եվ ահա հիսունութ տարի է, ինչ աշխարհի համարյա բոլոր երկրներում մարտի 8-ը նշվում է որպես կանանց միջազգային համերաշխության օր, որպես կարևոր տարեթիվ մարդկային հասարակության զարգացման պատմության մեջ։

Կանանց միջազգային օր սահմանելու գլխավոր նպատակն էր՝ նրանց լայն զանգվածներին պայքարի հանել կապիտալիզմի դեմ, կապիտալիստական կարգերի ստրկական ճնշումից ազատագրել աշխատավոր կանանց, առավել բարելավել նրանց կյանքը և աշխատանքային պայմանները։

Մարտի 8-ն առաջին անգամ Եվրոպայի մի շարք երկրներում տոնվել է 1911 թվականին, իսկ Ռուսաստանում՝ 1913 թվականին։ Այդ տոնակատարումները նպաստել են աշխարհի կանանց քաղաքական ընդհանուր զարթոնքին, նրանց ներգրավելով հանուն ազատության, դեմոկրատիայի, ընդդեմ պատերազմի և սոցիալական այլ չարիքների դեմ մղվող պայքարում։

Սակայն կապիտալիստական և ոչ մի երկրում աշխատավոր կինը լիակատար ազատ չէ և չի կարող լինել։ Առաջին անգամ աշխատավոր կինն ազատագրվել և երկրի քաղաքական-հասարակական կյանքին մասնակցելու, իր տաղանդը և ընդունակությունները տղամարդկանց հետ համահավասար զարգացնելու հնարավորություններ է ձեռք բերել Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի շնորհիվ։

Կապիտալիստական, գաղութային և կախյալ երկրներում, ինչպես միշտ, կանանց միջազգային տոնը նշվում է որպես աշխատավոր կանանց բողոքների ու պայքարի օր՝ հանուն խաղաղության, ընդդեմ պատերազմի և իրավազրկության, հանուն կանանց և երեխաների պաշտպանության։

Պատմական ճշմարտություն է նաև այն, որ Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակը, սոցիալիստական կարգերի հաստատումը մի շարք երկրներում խոշոր ազդեցություն է ունեցել բուրժուական, գաղութային և կախյալ երկրների աշխատավոր կանանց պայքարի վրա, դարձնելով այն ավելի կոնկրետ և նպատակասլաց։

Միջազգային կոմունիստական և բանվորական շարժման ականավոր գոր-

ծիչ Դոլորես Իբարրուրին «Работница» ամսագրում տպագրած հոդվածում գրել է. «...1917 թ. Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը փշրելով ստրկության շղթաները, կանանց օգտին հրապարակած իր օրենքներով և դրույթներով արել է այն, ինչ գերազանցել է նրանց ամենանվիրական երազանքներն ու ակնկալությունները: Այդ օրենքներն ու դրույթները դարձան բոլոր երկրների կանանց պայքարի նպատակները... Կապիտալիստական երկրներում կանանց հետ այլևս չի կարելի վերաբերվել այնպես, ինչպես անցյալում էր, թեպետ դեռևս մնացել են մռայլ «կղզիներ», որտեղ հրեշավոր վիհ գոյություն ունի տղամարդ «տիրոջ» և կին «սպասուհու» միջև: Սակայն այդ մռայլ «կղզիներն» այլևս բնորոշ երևույթներ չեն: Կապիտալիստական երկրների կանանց համառ պայքարն ու դիմադրությունը, որոնք ոգեշնչվում են սոցիալիզմի երկրների կանանց օրինակով, հանգեցնում են նրան, որ կինը հասարակության մեջ ավելի ու ավելի է զբաղեցնում այն տեղը, որը արդարացիորեն նրան է պատկանում»:

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը հիմնովին դեն շպըրտեց բոլոր հին օրենքները, որոնք նվաստացնում էին կանանց: Վ. Ի. Լենինն ասում էր, որ սովետական իշխանության սկսած գործը կարելի է առաջ մղել միայն այն ժամանակ, երբ ամբողջ Ռուսաստանում հարյուրների փոխարեն, նրան կմասնակցեն միլիոնավոր և միլիոնավոր կանայք:

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը, կենսագործելով մեծ Լենինի իմաստուն պատգամները, մեր երկրի կանանց շրջապատել են բացառիկ հոգատարությամբ և ապահովել նրանց ակտիվ մասնակցությունը տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում:

Հոկտեմբերի հաղթանակից հետո կանանց միջազգային տոնը՝ մարտի 8-ը, ՍՍՀՄ-ում նշվում է որպես կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում սովետական կանանց նվաճած հաջողությունների ստուգատեսի, նրանց համաժողովրդական մեծարման օր: Մարտի 8-ը քաղաքական նույն նշանաբանով է անցկացվում նաև համաշխարհային սոցիալիստական լագերի մյուս երկրներում, որտեղ նույնպես կանայք, տղամարդկանց հավասար, մասնակցում են նոր կյանքի կառուցմանը:

Մեր երկրում լայն ասպարեզ է բացված կանանց եռանդի ու նախաձեռնության գործադրման համար: Արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության, լուսավորության ու առողջապահության, գրականության և արգիտության, լուսավորության... 

Նույնիսկ մեր երկրի պատմության այնպիսի դժվարին ժամանակաշրջանում, ինչպիսին 1941—1945 թթ. Հայրենական մեծ պատերազմն էր, սովետական կինն իրեն դրսևորեց որպես խիզախ և հայրենանվեր քաղաքացի: Տասնյակ հազարավոր կանայք զինվորի կոշտ շինել հագած մարտնչեցին կրակի առաջավոր գծում և ցուցաբերած արիության ու խիզախության համար արժանացան Սովետական Միության հերոսի բարձր կոչմանը, պարգևատրվեցին ՍՍՀՄ շքանշաններով և մեդալներով: Միլիոնավոր կանայք և դեռահասները աշխատանքային հերթափոխում փոխարինեցին ռազմաճակատ մեկնած իրենց հայրերին, ամուսիններին ու եղբայրներին:



Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը բարձր են գնահատում կանանց վաստակը մատաղ սերնդի աճեցման և դաստիարակության գործում, նրանց ակտիվ մասնակցությունը երկրի պետական գործերի ղեկավարմանը՝ սովետական օրենքների, ժողովրդական տնտեսության և կուլտուրայի զարգացման պլանների մշակմանը, կուսակցության ու սովետական իշխանության ներքին և արտաքին քաղաքականության իրականացմանը:

Մեր երկրում միայն ՍՍՀՄ Գերագույն սովետում այժմ կան 425 կին դեպուտատներ: Սա ակներև ավելի է, քան ամբողջ կապիտալիստական Արևմուտքի պառլամենտներում եղած կանանց թիվը: Իսկ տեղական սովետների դեպուտատների մեջ կանայք կազմում են 41 տոկոս: Ավելի քան 2140 կանայք ժողովրդական դատավորներ են: Դա կազմում է ժողովրդական դատավորների ընդհանուր թվի 30 տոկոսը:

Այս տարի մարտի 8-ի տոնակատարությունը մեր երկրում անցավ սովետական կանանց հասարակական-քաղաքական ակտիվության վերելքի պայմաններում, սովետական պետության գոյության անցած կես դարում նրանց ձեռք բերած հաջողությունների ստուգատեսի, կանանց ուժերը նոր հնգամյակի երրորդ տարվա առաջադրանքների կատարման համար մոբիլիզացնելու նշանաբանով:

Այժմ ավելի, քան երբևիցե, ակնբախ է սովետական կանանց ստեղծագործական տաղանդների և կազմակերպչական ընդունակությունների առավել լրիվ դրսևորումը կյանքի բոլոր բնագավառներում:

Կինը մեծ գիտնական է և գրող, նա հմայող երգչուհի է և բարձրարվեստ արտիստուհի, արտադրության նորարար, սոցիալիստական աշխատանքի հերոս ու տիեզերքի համարձակ հետախույզ: Կինը՝ բժիշկ է և ինժեներ, մանկավարժ և դաստիարակ: Սովետական կանանց աշխատանքային և հասարակական-քաղաքական բազմակողմանի բեղմնավոր գործունեության օրինակը կարելի է տեսնել նաև Բաքվի անմահ 26 կոմիսարների անունը կրող Երևանի շրջանում: Մեր առաջավոր կանանց ընթերցողներին ծանոթացնելու նպատակով կցանկանայի նրանց հետ մեկտեղ շրջել մեր շրջանի գործարանները, գիտա-հետազոտական հիմնարկները, շինարարական հրապարակները, դպրոցներն ու հիվանդանոցները:

...Ահա մենք էլեկտրալամպերի գործարանի քիմիական լաբորատորիայում ենք: Կուսկոմի քարտուղարը մեզ հայտնում է, որ լաբորատորիայի ղեկավար Սիրանուշ Իսրայելյանին վերջերս Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը շնորհել է հանրապետության վաստակավոր նորարարի պատվավոր կոչում: Խնդրեցինք Սիրանուշին պատմելու իր նորարարության մասին, որի համար նա արժանացել է այդ պատվին: Ու նա պատմում է... բայց ոչ իր, այլ լաբորատորիայում աշխատող իր ընկերուհիների՝ ինժեներներ Աղավնի Գևորգյանի, Մարգո Կարապետյանի, լաբորանտուհի Ջնաշխարհիկ Սմբատյանի մասին: Պատմում է, թե գործարանի համար ինչ նշանակություն ունի լաբորատորիայի ներմուծված հումքերի ստուգման տակավին նորաստեղծ բաժինը: Եթե նախկինում ներմուծված քիմիական նյութերն արտադրության այս կամ այն բնագավառում օգտագործվում էին նախապես առանց նրանց որակի մասին իմանալու, ապա այժմ այդպիսիք արտադրություն չեն իջնում, մինչև որ լաբորատորիայում չի ստուգվում նրանց որակը: Դա հնարավորություն է տալիս

մեծ չափով կրճատելու արտադրածախսերը՝ վատորակ նյութերը գրանցելով
այն ձեռնարկության հաշվին, որտեղից ստացվել է։

Սիրանուշին ներկայացնելու պարտականությունը ստանձնում են նրա ըն-
կերուհիները և ոգևորված պատմում, թե ինչպես ընթացիկ աշխատանքների
հետ միաժամանակ, լաբորատորիայի անխոնջ ղեկավարի միտքն անընդհատ
որոնում է. նա անվերջ փնտրում է նոր միջոցներ արտադրությունն ավելի
շահութաբեր դարձնելու համար։ Եվ ահա ստացվում են առաջարկություններ
առաջարկությունների հետևից, որոնք հետևողականորեն ներդրվում են արտա-
դրության մեջ։ Միայն վերջին տարում նա արել է նորարարական 21 առա-
ջարկություն, որից 14-ը ներդրվել են արտադրության մեջ և ձեռնարկությանը
բերել շուրջ 9000 ռուբլու տնտեսական օգուտ։

Մեր առջև հյուրընկալորեն բացվում են № 3 մանկական հիվանդանոցի
դռները, որտեղ աշխատողների ճնշող մեծամասնությունը կանայք են։ Եվ
գուցե դա է պատճառը, որ հենց մուտքից ներս մտնելիս ուշադրությունդ գրա-
վում են բազմերանգ ծաղիկներ, մշտադալար թփեր, որոնք տնկվել ու աճեց-
վել են աշխատողների հոգատար ձեռքերով։ Այստեղ թե հիվանդասենյակ-
ների կահավորումը, թե սանիտարական նորմալ վիճակը և թե բուժանձնա-
կազմի հոգատար վարվելակերպը նպաստում են հիվանդ երեխաների շուտա-
փույթ ապաքինմանը։

Միկրոշրջանի բնակիչները մեծ հարգանքով են խոսում գլխավոր բժշկի
բուժման գծով տեղակալ Ելիզավետա Ալավերդյանի, բժշկուհիներ Անուշ
Հովհաննիսյանի, Ռոզա Հայրապետյանի, Կիմա Սեթյանի հոգատար, զգայուն
վերաբերմունքի մասին, որոնք տասնյակ անքուն գիշերներ են լուսացրել հի-
վանդ մանկան մահճակալին կռթնած, համառորեն մաքառել մահվան դեմ ու
կյանքի վերադարձրել բազմաթիվ հիվանդների։

Կոլեկտիվն արժանացել է «Կոմունիստական աշխատանքի հարվածայինի,
պատվավոր կոչմանը և նվաճել Հոկտեմբերյան հեղափոխության 50-ամյակի
պատվավոր կոչմանը և նվաճել Հոկտեմբերյան հեղափոխության 50-ամյակի
ստուգատեսի հուշադրոշը։ Այդ բազմամարդ կոլեկտիվը հմտորեն ղեկավա-
րում է աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային սովետի գործ-
կոմի անդամ Իզաբելա Դավթյանը։

Շատերն են ճանաչում ժամացույցի գործարանի հավաքման արտադրա-
մասի բանվորուհի Նինա Սարգսյանին։ 1955 թվականին, երբ Նինան ոտք դրեց
գործարան, սկզբում դժվարանում էր... անծանոթ էր թե մարդկանց, թե մե-
քենաներին։ Սակայն շուտով սրտի թրթիռն ու մեքենաների աղմուկը խառն-
վեցին իրար, դարձան կամք ու համեստ բանվորուհուն դարձրին գործարանի
առաջավորներից մեկը։

Բավական է թեկուզ կես ժամ լինել նրա աշխատատեղում՝ զգալու հա-
մար, թե որքան մեծ ուշադրություն է պահանջվում. հենց մի պահ կորվեց գոր-
ծից՝ խոտանը պատրաստ է։ Նա ժամացույցի մաղն ուղղելու գործողությունն
է կատարում։ Նա իր վարժ ձեռքերով յուրաքանչյուր րոպեում հմտորեն ուղ-
ղում է 4—6 մեխանիզմի մազ, օրվա առաջադրանքը 1600-ից հասցնում
2000-ի։ Նինային աշակերտել են շատերը և դարձել առաջավոր բանվորներ։
Նինան Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ է և ակտիվորեն մաս-
նակցում է շրջանի ու հարազատ գործարանի հասարակական կյանքին։

Կանայք մեզ մոտ մեծ ուժ են նաև մատաղ սերնդի կրթության ու դաս-
տիարակության ասպարեզում։ Բավական է ասել, որ շրջանի մանկավարժների
մոտ 80 տոկոսը կանայք են։ Համարձակորեն կարելի է ասել, որ այստեղ



նույնպես կանայք կրքոտությամբ են կատարում իրենց վրա դրված դժվարին,
բայց շնորհակալ պարտականությունը։ Ամենուրեք աշակերտներն ու ծնողնե-
րը մեծ համակրանքով են խոսում № 103 դպրոցի ուսուցչուհի Սոնյա Բաղդա-
սարյանի, № 128 դպրոցի ուսմասվար Եկատերին Շաբանովայի, № 59 դպրոցի
ուսուցչուհի Ասյա Բաբայանի, № 117 դպրոցի ուսմասվար Ամալյա Հովակիմ-
յանի մասին, որոնք, իրոք, ոչինչ չեն խնայում երեխաների կոմունիստական
դաստիարակության համար։ Մանկավարժների շրջանում մեծ հեղինակու-
թյուն են վայելում վաստակավոր ուսուցիչներ Իզաբելա Շամամյանը (№ 36
դպրոց), Սոնյա Ալեքսանյանը (Շիրվանզադեի անվան դպրոց), փորձված
մանկավարժներ Իզաբելա Գասպարյանը (№ 130 դպրոց), Ամասիկ Կարա-
պետյանը (№ 84 դպրոց), որոնք իրենց բազմամյա մանկավարժական աշխա-
տանքի հարուստ փորձն ու գիտելիքները սիրով հաղորդում են սկսնակ
ուսուցիչներին։

Կանայք բեղմնավոր աշխատանք են կատարում նաև գիտահետազոտա-
կան հիմնարկներում, իրենց մտքի խոյանքն ի սպաս դնում հայրենական գի-
տության զարգացման պատվավոր գործին։ Ահա նրանցից մի քանիսը.
Հայկական ՍՍՀ Գիտությունների ակադեմիայի ֆիզիոլոգիայի ինստիտուտի
գիտական քարտուղար՝ բիոլոգիական գիտությունների թեկնածու Ռոզա Պո-
ղոսյանը, ֆիզիկայի ինստիտուտի լաբորատորիայի վարիչ՝ ֆիզիկո-մաթեմա-
տիկական գիտությունների թեկնածու Թինա Ասատրյանը, նուրբ օրգանական
քիմիայի ինստիտուտի ավագ գիտական աշխատող Էլիզա Բաղդասարյանը,
մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի խմբի ղե-
կավար Ելենա Ալեքսանդրյանը։

Սովետական Միությունում և նրա սահմաններից դուրս շատերին է հայտ-
նի բժիշկների կատարելագործման գիտահետազոտական ինստիտուտի աչքի
հիվանդությունների ամբիոնի վարիչ Եկատերինա Բլավացկայայի անունը։ Նա
գիտական աշխատանքը հմտորեն զուգակցում է պրակտիկայի հետ և համար-
վում մեր Միության լավագույն ակնաբույժներից մեկը։ Քանի-քանի կույր աչ-
քերի է լույս տվել Եկատերինա Դիմիտրևնան։ Կիրովական քաղաքի բնակիչ
Սեդա Բաղդարյանը 1962 թ. ծննդաբերության ժամանակ կուրացավ, զրկվեց
արևի լույսը և սեփական երեխաներին տեսնելու երջանկությունից։ Միայն
վերջերս Բլավացկայայի փորձված ձեռքերը վիրահատեցին նրան և ամեն
ինչ հաջող վերջացավ։

Եվ այսպես, շրջանում ամենուրեք կհանդիպենք կանանց անունների՝
մեկը մյուսից պայծառ ու լուսավոր։

Կինը մայր է։ Ծանր, բայց վեհ ու ազնիվ այն պարտքը, որ դրել է նրա
վրա բնությունը։ Այդ նա է, որ իր մայրական և քաղաքացիական պարտքի
բարձր գիտակցմամբ աճեցնում ու դաստիարակում է տիեզերքի համարձակ
հետախույզին, մարդկության բարօրության համար տքնող գիտնականին։ Այդ
նա է, որ կուռ բազուկներ է տալիս ձուլող բանվորներին ու հողագործին։

Սովետական երկրում կինը շրջապատված է մշտական հոգատարությամբ։
Յուրաքանչյուր տարի պետությունը հսկայական միջոցներ է բաց թողնում
բազմազավակ մայրերին օգնություն ցույց տալու համար։ Ամեն տարի պիո-
ներական ճամբարներում, առողջարաններում և մանկական այլ բուժվայրե-
րում հանգստանում են միլիոնավոր երեխաներ։ Օրինակ, շրջանի բազմա-
զավակ մայրերին միայն 1967 թ. տրվել է 127,723 ռուբ. նպաստ։

Կանայք մեծ ուժ են նաև արդիականության արմատական հարցերից

մեկի՝ խաղաղության պահպանման ու ամրապնդման համար մղվող պայքարում։ Նրանք լավ են գիտակցում, որ նոր պատերազմը, եթե թույլ տան այն սանձազերծել, կնշանակի միլիոնավոր մարդկանց կործանում, տասնյակ սերունդների աշխատանքի պտուղների ոչնչացում։ Այդ պայքարը ցեմենտում է կանանց միջազգային ֆեդերացիան, միավորում նրա բոլոր մասնակիցներին՝ անկախ մաշկի գույնից, քաղաքական հայացքներից ու կրոնական դավանանքից։

Այժմ աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց ուշադրությունը գամված է Վիետնամի իրադարձություններին։ Սովետական կանայք միահամուռ վճռականությամբ դատապարտում են Վիետնամում ԱՄՆ-ի ագրեսիվ գործողությունները և պահանջում անհապաղ դադարեցնել ՎԴՀ-ի ռմբակոծումները։ Հավատարիմ իրենց ինտերնացիոնալ պարտքին, սովետական կանայք համերաշխություն են հայտնում վիետնամցի քույրերին՝ նրանց ազնիվ պայքարում։ Նրանք ամբողջ սրտով հավանություն են տալիս և միահամուռ կերպով պաշտպանում են այն միջոցառումները, որոնք սովետական կառավարությունը ձեռնարկում է Վիետնամի հերոս ժողովրդին՝ նրա արդարացի պայքարում անհրաժեշտ օգնություն ցույց տալու համար։ Շրջանի կանայք Վիետնամի երեխաների ու կանանց համար ուղարկել են տասնյակ ծանրոցներ՝ լցված դեղանյութերով, գործվածքեղենով, մանկական հագուստով, խաղալիքներով, ինչպես նաև 1700 ռուբլի գումար։

ՀԿԿ Երևանի 26 կոմիսարների շրջկոմը, հիմնարկ-ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպությունները կենսագործելով ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները, անցած երկու տարում զգալիորեն բարելավել են կանանց շրջանում տարվող քաղաքական-կազմակերպական աշխատանքը։ Կանանց հետ տարվող աշխատանքում մենք հենվում ենք ինչպես շրջանային կինխորհրդի (նախագահ Արեգ Աղաեա), այնպես էլ ձեռնարկությունների ու հիմնարկությունների կինխորհուրդների ու նրանց շուրջը համախմբված կանանց ակտիվի օգնության վրա։ Նրանց ամենօրյա ուշադրության կենտրոնում են կանանց շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքի ուժեղացման, ձեռնարկություններում բանվորուհիների աշխատանքի և կենցաղային պայմանների բարելավման, կին կադրերի ուսուցման և աճեցման բազմապիսի հարցերը։

Սակայն այս ամենը դեռևս քիչ է։ Մեծանում են շրջանի աշխատավորության առջև ծառացած քաղաքական ու տնտեսական խնդիրները, ուստի մեծանում են նաև կանանց շրջանում տարվող աշխատանքի հետ կապված հոգսերը, նրանց ավելի համարձակորեն առաջ քաշելու անհրաժեշտությունը։

Սովետական ժողովուրդը ապրում է խաղաղ, ստեղծագործ աշխատանքի վիթխարի կանխագծումների իրականացման ժամանակաշրջան։ Կասկած չկա, որ սովետական կանայք, այդ թվում նաև մեր շրջանի աշխատավորուհիները, ինչպես միշտ, այսուհետև նույնպես կլինեն կոմունիստական շինարարության նոր, ավելի պատասխանատու խնդիրների կենսագործման համար պայքարողների առաջին շարքերում։

ԹՈՒՄԱՍՅԱՆ Ա. Ս.

Տնտեսական գիտությունների թեկնածու

# ՊԱՀԱՆՋԱՐԿԸ ՈՐՊԵՍ ԳԻՏԱԿԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ՆԱԽԱԴՐՅԱԼ

Սոցիալիստական հասարակության պայմաններում ևս արտադրությունը, բաշխումը, փոխանակումն ու սպառումը հասարակական վերարտադրության ամբողջական պրոցեսի օրգանապես միմյանց հետ կապված օղակներն են։ Այդ միասնական շղթայում առաջնային դերը պատկանում է արտադրությանը, որի վերջնական նպատակը, սակայն, սպառումն է։ Արտադրության և սպառման համաչափ զարգացումը հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր նախապայմանն է։ Հասարակական վերարտադրության մեջ իրենց ուրույն դերն են կատարում նաև միջանկյալ օղակները՝ բաշխումը և փոխանակումը, որոնք սոցիալիստական հասարակարգում նույնպես պլանավորվում են։

Արտադրության և սպառման հարաբերակցությունները շուկայում դրսևորվում են որպես առաջարկի և պահանջարկի հարաբերություններ։ Պահանջարկի իմացումը վճռական նշանակություն է ստանում առաջարկի ծավալը կանխորոշելու և վերարտադրության ընդհանուր պրոցեսը կարգավորելու գործում։ Առաջարկի և պահանջարկի հարմոնիկ զարգացումը ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների համամասնական զարգացման երաշխիքն է։

Հերքված է այն թեզը, թե գնողունակ պահանջարկի առաջանցումը սպառման առարկաների արտադրությունից՝ սոցիալիստական հասարակարգի առավելություններից մեկն է։ Տնտեսագետների մի մասի կողմից քննադատվում է նաև այն տեսակետը, որ արտադրությունը պետք է ավելի արագ տեմպերով աճի, քան սպառումը։ Դրանցից գերադասելի է համարվում առաջարկի և պահանջարկի հավասարակշռված վիճակը, որին կարելի է հասնել արտադրության և սպառման համաչափ զարգացմամբ։

Անտարակույս, վերջինս տեսականորեն ճիշտ է, և եթե հմտորեն օգտագործվեն սոցիալիստական հասարակարգի բոլոր առավելությունները, ապա կարելի է ապահովել առաջարկի և պահանջարկի համաչափ աճը։ Սակայն չի կարելի հասնել առաջարկի և պահանջարկի իդեալական, հարատև հավասարակշռվածության թեկուզ այն պատճառով, որ լայն սպառման ապրանքների իրացման անընդհատությունն ապահովելու համար անհրաժեշտ է որոշակի ապրանքային պաշար։ Այնուհետև, արտադրության պրոցեսների վերակառուցումը պահանջում է համեմատաբար երկար ժամանակ, մինչդեռ լայն

սպառման ապրանքների ձևը փոփոխվում է ավելի արագ։ Այդ հակադիր տենդենցները մեղմանում են նրանով, որ այն ապրանքները, որոնք կենտրոնում պահանջարկ չունեն, բայց սպառվում են ծայրամասերում. սակայն պահանջվում է որոշակի ժամանակ, որպեսզի համընկնեն արտադրության ու սպառման ծավալները և ստեղծվի հավասարակշռված վիճակ։

Թվում է, որ ապրանքային պաշարներ ստեղծելու, լայն սպառման ապրանքների անընդհատ վաճառքն ապահովելու համար, պահանջարկի նկատմամբ առաջարկի որոշակի գերազանցումը, իրոք, դառնում է օբյեկտիվ անհրաժեշտություն։ Այս բոլորը խոսում են այն մասին, որ առաջարկի և պահանջարկի միջև առաջացող անհամապատասխանություններն անխուսափելի են, սակայն արտադրության և սպառման ծավալի ճիշտ որոշման դեպքում հնարավոր է դրանք հասցնել նվազագույնի։ Առաջարկի և պահանջարկի համեմատաբար հավասարակշռված վիճակը կարելի է ապահովել շուկայի պլանաչափ ուսումնասիրության ու պահանջարկին համապատասխան արտադրության զարգացման ճանապարհով։

Պլանավորման համար բացառիկ կարևոր նշանակություն ունի սպառման, հատկապես ոչ արտադրական սպառման կառուցվածքի իմացումը։ Այն կարելի է գտնենալ լայն սպառման ապրանքների պահանջարկի պատշաճ ուսումնասիրությամբ։ Ոչ արտադրական սպառման ծավալի գտնելը հնարավորություն է տալիս որոշել և՛ արտադրական սպառման, հետևապես և ամբողջ արտադրության ծավալը։

Սպառողական պահանջարկի ուսումնասիրությանը լուրջ ուշադրություն է նվիրվում հատկապես վերջին տարիներին, երբ կուսակցության և կառավարության միջոցառումների շնորհիվ օրավուր ավելանում է լայն սպառման ապրանքների քանակն ու բարելավվում դրանց որակը։ Այդ է վկայում նաև արտադրության «Ա» և «Բ» խմբերի զարգացման՝ նոր հնգամյա պլանով նախատեսված տեմպերի մոտեցումը։

Սպառողական պահանջարկը կատարելագործելու նպատակով մշակվում են նոր ձևեր ու մեթոդներ։ Այդ կարևոր գործը կատարվում է սոցիալիստական լագերի երկրների համագործակցությամբ, գիտնականների համատեղ ջանքերով։

Լայն սպառման ապրանքների ներքին շուկայի պլանավորումը շատ բարդ է։ Սպառման բնույթը խիստ փոփոխական է։ Նախ՝ այն պայմանավորված է սպառողների գնողունակության փոփոխությամբ, ապա տեխնիկական պրոգրեսով, որի շնորհիվ փոխվում են լայն սպառման ապրանքների սպառողական հատկությունները։ Այսպես, երբ ավելանում է բնակչության զգալի մասի եկամուտը, նրանք բավարարելով իրենց պահանջն առաջին անհրաժեշտություն ներկայացնող ապրանքների նկատմամբ, բարձր պահանջ են հարուցում կուլտուր-կենցաղային և երկարատև օգտագործվող ապրանքների նկատմամբ։ Վերջին տարիներին ցածր վարձատրվող բանվոր ծառայողների աշխատավարձի բարձրացմամբ զգալիորեն փոխվեց պահանջարկի կառուցվածքը։ Ավելացավ բարձրորակ պարենների վաճառքը (միս, յուղ, կաթ, ձու) և հակառակը, նվազեց մեկ շնչին ընկնող հացամթերքի սպառումը։ Նույն ազդեցությունը կունենա նաև ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1967 թ.) պլենումի որոշումների կենսագործումը (աշխատավարձի մինիմումի բարձրացում, որոշ կատեգորիայի թոշակառուների թոշակի ավելացում և այլն) և բնակչության կենսամակարդակի հետագա բարձրացումը։



Կամ, նորաստեղծ որակյալ ապրանքների գործածության ժամկետների փոփոխությունն ազդում է տվյալ տեսակի կամ փոխարինվող ապրանքի պահանջվող քանակի վրա և այլն։ Անընդհատ զարգանում է նաև սպառողների ճաշակն ու պահանջկոտությունը, նրանց պահանջմունքները դառնում են ավելի շերտավորված ու բազմակողմանի։ Բացի դրանից, լայն սպառման ապրանքների շուկայի վրա ազդում են նաև սոցիոլոգիական, հոգեբանական ու սուբյեկտիվ գործոնները։ Այս բոլորը դժվարացնում են ճիշտ կռահելու սպառողական պահանջարկի սպասվող տատանումները։ Առաջարկի մանևրելու կարողությամբ ու ճկունությամբ է պայմանավորված պահանջարկի կարգավորումը։ Սա չի նշանակում, թե պետք է խուսափել առաջարկի և պահանջարկի պլանավորումից։ Ընդհակառակը, պլանավորումը պետք է կատարվի լայն սպառման ապրանքների շուկայի խոր ուսումնասիրության հիման վրա, հաշվի առնելով տվյալ շուկայի առանձնահատկություններն ու սրա վրա ազդող գործոնները։ Սակայն, սխալ է ենթադրել, թե հնարավոր է պլանավորել հեռանկարային սպառումն իր բոլոր մանրամասներով։ Խստորեն սահմանափակել արտադրությունն ու սպառումն որոշակի շրջանակներով, նշանակում է խոչընդոտել նրանց զարգացմանը և կաշկանդել այդ ոլորտի աշխատողների նախաձեռնությունը։ Չէ՛ որ արտադրությունն ու սպառումը փոխադարձաբար պայմանավորում են միմյանց զարգացումը, առաջընթացը։ Պլանավորումը պետք է հենվի առաջարկի և պահանջարկի հիմնական համամասնությունների վրա, այսինքն՝ պլանավորումը շուկայի պահանջների փոփոխությունների նկատմամբ պետք է լինի ավելի կայուն և գործնականորեն կարգավորվեն առաջարկի և պահանջարկի տատանումները։

Այդ պրոբլեմի լուծմանը հաճախ խանգարում է այն, որ պլանավորումը խիստ կենտրոնացված է ու մանրատված։ Շատ դեպքերում պլանավորվում են անգամ ապրանքների առանձին ասորտիմենտներ։ Այժմ արդյունաբերական արտադրանքի պլանավորման ու նյութական շահագրգռվածության նոր սիստեմին անցնելու կապակցությամբ (երբ արմատավորվում են արտադրության և առևտրի ուղղակի կապերը) այդ սխալ պրակտիկան մասամբ ուղղվում է։

Մեր կարծիքով, նպատակահարմար է, որ կենտրոնական պլանավորումն աստիճանաբար սահմանափակվի ապրանքային հիմնական խմբերի ու կարևոր ցուցանիշների շրջանակներում, իսկ լայն սպառման ապրանքներինը՝ ըստ ասորտիմենտի, չափերի ու տեսակների, կատարեն արտադրության և առևտրի մարմինները։

Հաճախ են քննադատվում ուղղակի կապերի բացասական կողմերը։ Մասնավորապես նշվում է, որ այդ կապերի դեպքում արդյունաբերական ձեռնարկություններն ստանում են քիչ պատվերներ և ի վիճակի չեն անընդհատ վերափոխելու արտադրական պրոցեսները։ Մանրացված հայտերը ավելացնում են ծախսերը, իջեցնում աշխատանքի արտադրողականությունն ու արդյունավետությունը։ Մեր կարծիքով, սխալ է, երբ յուրաքանչյուր խանութ ուղղակի կապերի մեջ է մտնում արտադրության հետ։ Այդ իրավունքը պետք է տալ, ասենք, ոչ պակաս, քան 4 միլիոն ապրանքաշրջանառություն ունեցող տրնտհաշվարկային խանութին և սահմանել հայտեր ներկայացնելու որոշակի ապրանքների քանակային կամ գումարային մինիմում։

Առաջարկի և պահանջարկի տատանումների օպերատիվ կարգավորումն ապահովելու համար պետք է որոշակի նախադրյալներ ստեղծել ընդլայնե-

լու արտադրության և առևտրի տնտեսական ղեկավարության իրավունքները՝ լայն սպառման ապրանքների որոշակի ռեսուրսների ստեղծման, անհրաժեշտության դեպքում գների (հատկապես սեզոնային ապրանքների) փոփոխության, ռեկլամի ընդլայնման և այլ հարցերում:

Այս ամենին զուգընթաց հարկավոր է զգալիորեն բարձրացնել լայն սպառման ապրանքների շուկայի ուսումնասիրման որակը: Առաջարկի և պահանջարկի ուսումնասիրությունը կպահանջի հետազոտել արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման հնարավորություններն ու կառուցվածքային փոփոխությունները, պահանջարկի կառուցվածքային փոփոխությունները կապված եկամուտների ու գների հետ, ինչպես նաև օժանդակ տնտեսությունների զարգացման ծավալն ու կառուցվածքային փոփոխությունները, առաջարկի և պահանջարկի զարգացման ուղղությունները, տենդենցները ներքին ու արտաքին շուկայում և այլն: Այս բազմակողմանի ուսումնասիրությունների արդյունքները հիմք կծառայեն անսխալ գնահատելու ներքին ու առանձին ապրանքային շուկաների իրավիճակը և ճիշտ պլանավորելու ծավալը:

Հարց է ծագում, ո՞վ պետք է զբաղվի ազգաբնակչության պահանջարկի ուսումնասիրմամբ: Այժմ դրանով հիմնականում զբաղվում են առևտրական կազմակերպությունները: Այդ է պատճառը, որ առևտրի կոնյունկտուրայի և պահանջարկի ուսումնասիրման համամիութենական գիտահետազոտական ինստիտուտն իր հանրապետական մասնաճյուղերով ստեղծվել է ՍՍՀՄ առևտրի մինիստրության կից: Որքանո՞վ է սա ճիշտ: Արդի էտապում թերևս դա ճիշտ է, քանի որ մեզ մոտ որոշ իմաստով «դրամն է որոնում ապրանք»: Մինչդեռ ժողովրդական տնտեսության զարգացման այժմյան տենդենցի պահպանումը հեռանկարում փոխելու է իրավիճակը: Լայն սպառման ապրանքների ստեղծվող լիառատության պայմաններում ամենայն հավանականությամբ «ապրանքն է որոնելու դրամ»: Այդ բանն այժմ էլ նկատվում է մի շարք ապրանքների գծով: Վերոհիշյալ պայմաններում դժվար է պատկերացնել, թե միայն առևտուրը պետք է զբաղվի դրանով. ընդհակառակը, արտադրությունն առավել շահագրգռված պետք է լինի իր արտադրանքի իրացման հարցերով: Այստեղից հետևում է, որ եթե պահանջարկի ուսումնասիրման բնագավառում վարչարարությունը փոխարինվի տնտեսական ղեկավարման մեթոդի, այսինքն՝ պահպանվի շահագրգռվածության սկզբունքը, ապա առանց տատանվելու այն հիմնականում պետք է ստանձնի արտադրությունը: Վերջին հաշվով, արդյունաբերական ձեռնարկության հիմնական ցուցանիշն արտադրանքի իրացման ծավալն է:

Ուսումնասիրություններից երևում է, որ քիչ չեն դեպքերը, երբ չբավարարված պահանջարկի պատճառները ոչ թե օբյեկտիվ են, այլ սուբյեկտիվ. դրանք պայմանավորված են ո՛չ թե արտադրության հնարավորություններով, այլ պարզապես պահանջարկի չիմացությամբ, շուկայի իրավիճակի անիրազեկությամբ: Առևտրական կազմակերպությունները հայտեր ներկայացնելիս սովորաբար պահանջվող ապրանքների քանակն, անհիմն կերպով պակասեցնում են (մտածելով, որ կիջեցվեն գերնորմատիվային մնացորդները), իսկ բարձր պահանջարկի ապրանքներինը ավելացնում (մտածելով, որ միևնույն է այդքան չեն տա): Երբ դա հաշվի է առնվում արտադրական պլաններում, հետևանքը լինում է այն, որ առանձին ապրանքներ մերթ դառնում են դեֆիցիտային, մերթ դանդաղ վաճառվող: Նման փաստերը շատ են: Հիշատակենք



թեկուզ ֆոտոապարատների, օկորդիոնների, հեծանիվների, կարի մեքենաների օրինակները և այլն: Կամ մի այլ օրինակ: Անտեսելով բնակչության պահանջարկը և հաշվի չառնելով առևտրական կազմակերպությունների հայտերը, Երևանի մեխանիկական գործարանը (կենցաղ-սպասարկման մինիստրության) դադարեցրեց մսաղացների, իսկ Գորիսի միկրոէլեկտրաշարժիչների գործարանը՝ էլեկտրալարերի արտադրանքը: Արդյունքն եղավ այն, որ այդ ապրանքներն այժմ ստիպված ներմուծվում են մյուս հանրապետություններից: Պահանջարկի ուսումնասիրման բնագավառում թույլ տրված ամեն մի սխալ խախտում է արտադրության ռիթմը, նյութական, աշխատանքային ու դրամական ռեսուրսների կորստի պատճառ դառնում:

Արտադրության և սպառման երկարատև համամասնական զարգացման շահերը պահանջում են այժմյանից պահանջարկի ուսումնասիրման ծանրակշիռ մասը վերապահել արտադրության մարմիններին (հատկապես պահանջարկի հեռանկարային կանխորոշումը), իսկ առևտրի օրգաններին թողնել ընթացիկ պահանջարկի ուսումնասիրությունը: Այս դեպքում ընդհանուր ղեկավարությունն ու պահանջարկի ուսումնասիրությունների արդյունքների կոորդինացումը պետք է որ իրականացնեն պետական կենտրոնական պլանային հանձնաժողովը (պետպլան):

Սոցիալիզմի պայմաններում արտադրության ընդհանուր ծավալի հետ միասին պլանավորվում է նաև հիմնական ապրանքների արտադրանքը, որոշվում շուկայի պահանջն ու կազմվում դրանց ռեսուրսների հաշվեկշիռը: Միաժամանակ բնակչության դրամական եկամուտների ու ծախսերի հաշվեկշռի հիման վրա հաշվարկվում է գնողունակ պահանջարկի ծավալը: Ժողովրդական տնտեսության կապիտալ ներդրումների ու նյութատեխնիկական մատակարարման պլանավորման շնորհիվ սահմանվում է արտադրական սպառման պահանջը: Ինչպես տեսնում ենք, առաջարկի և պահանջարկի կարգավորման ու ժողովրդական տնտեսության համամասնական զարգացման համար ըստեղծվում են լայն հնարավորություններ:

Առաջարկն ու պահանջարկը բազմաթիվ գործոնների ազդեցության տակ անընդհատ փոփոխվում են, ուստի սահմանված համամասնությունները ես ենթակա են ճշգրտման: Ահա թե ինչու առաջարկի և պահանջարկի համաչափ զարգացումը դառնում է սոցիալիստական պետության տնտեսական քաղաքականության հիմնական խնդիրներից մեկը:

Սահմանված ձևով իրացված ապրանքների հաշվառմամբ խանութներում պարզվում է պահանջարկը, յուրաքանչյուր ասորտիմենտի շրջապտույտը, գնի, ձևի, չափսի, գույնի և այլն համապատասխանելիությունը, ինչպես նաև պահանջարկից զուրկ և բարձր պահանջարկի ապրանքները: Մեծ ծավալի ապրանքաշրջման այժմյան պայմաններում իրացման նման հաշվառումը չափազանց դժվար է ու աշխատատար: Ահա թե ինչու այդ աշխատանքները մեքենայացվում են, կատարվում էլեկտրահաշվիչ մեքենաների միջոցով:

Լեհաստանում, ԳԴՀ-ում, վերջերս նաև ՍՍՀՄ-ում (հատկապես Բելոռուսիայում և Մերձբալթյան հանրապետություններում) և այլուր, պատրաստի հագուստեղենի պահանջարկի ուսումնասիրումը կատարվում է կրկնակի պիտակների միջոցով: Իրացված ապրանքների պիտակները խմբավորվում և տրվում են մեքենայական մշակման ու ստանում արժեքավոր տվյալներ: Պահանջարկի ուսումնասիրման այդ ձևը շուտով կիրառվելու է նաև մեր հանրապետությունում:

Ձևավորվող պահանջարկը հատկապես լավ է երևում տոնավաճառներում, ցուցահանդեսներում, ցուցահանդես-վաճառքներում, առևտրի և արդյունաբերության ներկայացուցիչների խորհրդակցություններում և գնորդների կոնֆերանսներում։

Վերջին տարիները լայն տարածում են գտել (հատկապես Չեխոսլովակիայում, Հունգարիայում, Հարավսլավիայում և այլն) գնորդների հարցումները, որպես պահանջարկի ուսումնասիրման այժմեական ձև։ 1967 թ. կարի մեքենաների և բանջարեղենի պահածոների պահանջարկն ուսումնասիրելիս, հարցում կատարվեց նաև մեզ մոտ՝ Հայաստանում։ Հարցման արդյունքները հնարավորություն տվեցին ավելի ճիշտ բնորոշելու այդ ապրանքների պահանջվող քանակը մոտակա ժամանակաշրջանում։

Կառավարության որոշմամբ առևտրական կազմակերպություններում ստեղծված պահանջարկի ուսումնասիրման ծառայությունները (Հայկական ՍՍՀ-ում առայժմ ստեղծված են 10 ծառայություն՝ մեծածախ առևտրական բազաներում և առևտրի վարչություններում) կոչված են պահանջարկի ուսումնասիրման աշխատանքը բարձրացնելու երկրում կատարվող նոր տնտեսական ռեֆորմի պահանջների մակարդակին։

Մեր կարծիքով, այս գործը կարող է պսակվել հաջողությամբ և ավելի արդյունավետ լինել, եթե պահանջարկի ուսումնասիրման ծառայություններ ստեղծվեն նաև լայն սպառման ապրանքներ արտադրող արդյունաբերական ձեռնարկություններում կամ գերատեսչություններում։

Պահանջարկի ուսումնասիրման նպատակը՝ դրա նախորոշումն է՝ մոտակա (1—3 տարի), միջին (5—10 տարի) և հեռանկարային (20 և ավելի տարիներ) ժամանակաշրջանների համար։ Այս պատասխանատու աշխատանքը շատ դեպքերում մասնատված ձևով կատարվում է պետպլանի, առևտրի մինիստրության, թեթև և սննդի արդյունաբերությունների մինիստրությունների ու գերատեսչությունների և գիտահետազոտական հաստատությունների կողմից։ Հետևանքը լինում է այն, որ հաշվի չեն առնվում կողմերի արդարացի պահանջները։ Այս գործը ավելի կշահի, եթե պահանջարկի ուսումնասիրմամբ զբաղվող բոլոր օղակներն անմիջապես ենթարկվեն պետպլանին, որտեղ և կկոորդինացվեն նրանց կատարած աշխատանքները։

Պահանջարկի նախորոշումն անհրաժեշտ է գիտականորեն հիմնավորված պլաններ կազմելու համար, սակայն այն չի կարող փոխարինել պլանավորմանն ամբողջությամբ։ Նախորոշումը դա նախապլանային աշխատանք է, որի ընթացքում բնորոշվում է լայն սպառման ապրանքների արտադրության և սպառման ընդհանուր օրինաչափությունները, տենդենցներն ու սպասվող փոփոխությունները։

Այժմ ՍՍՀՄ-ում գոյություն ունեն պահանջարկի կանխորոշման հետևյալ հիմնական ուղղությունները.

Առաջին ուղղության մեթոդոլոգիայի էությունն այն է, որ պահանջարկի բնույթը սահմանվում է բնակչության առանձին խմբերի եկամուտների չափերին համապատասխան, որոնք հաշվարկվում են սպառողական բյուջեների ուսումնասիրման հիման վրա։ Բնակչության ըստ եկամուտների մեծության յուրաքանչյուր խմբի պահանջարկի բնույթը ծառայում է որպես հետագա տարիների պահանջարկի ծավալի նախորոշման չափանիշ։ Նկատի է առնվում եկամուտների նախատեսվող աճը և ըստ այնմ պլանավորվում է հեռանկարային պահանջարկը, այլ կերպ ասած, փաստացի ձևավորված պահանջարկի



բնույթը վերաբերում է պլանավորվող ժամանակաշրջանին։ Սա նշանակում է, որ այդ մեթոդոլոգիայի կողմնակիցներն ենթադրում են, որ միևնույն եկամուտ ունեցող սպառողների պահանջարկի բնույթը կայուն է ու անփոփոխ։ Այս մտքի հետ դժվար է համաձայնել, քանի որ սպառման բնույթը, հետևաբար և պահանջարկի բնույթը, ժամանակի ընթացքում խիստ փոփոխվում են, լայն սպառման ապրանքների սպառարժեքի փոփոխման զուգընթաց։

Նկատենք, որ սպառողական բյուջեների ուսումնասիրությունների հիման վրա կատարվող ներկա հետազոտությունները քիչ են ու չեն կարող ներկայացուցչական լինել։ Օրինակ, Հայկական ՍՍՀ-ում կենտվիճվարչությունն ուսումնասիրում է ընդամենը 100 ընտանիքների բյուջեները։ Այժմ, ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշման համաձայն սպառողական բյուջեների հետազոտությունների շրջանակն ընդլայնվում է և այն երկրի մասշտաբով ընդգրկելու է 60 հազար ընտանիք։ Սպառողական բյուջեների մասսայական ուսումնասիրումը մեծապես կնպաստի առավել ներկայացուցչական դարձնելու հետազոտման արդյունքները և դրանց տարածումն ընդհանուր բնակչության վրա կլինի օրինավոր, ճիշտ կարտացոլի իրավիճակն ամբողջ երկրի մասշտաբով։

Տվյալ մեթոդի կիրառման մեջ գնահատելի է ըստ եկամուտների բնակչության խմբավորման գաղափարը, պահանջարկի ու եկամուտների կախվածության օրինաչափությունների բացահայտումը։

Պահանջարկի կանխորոշման մյուս ուղղության կողմնակիցները հիմնըվում են առևտրական վիճակագրության տվյալների ուսումնասիրության վրա։ Անշուշտ, ինֆորմացիայի նման աղբյուրն առավել ներկայացուցչական է, սակայն չափազանց նվազ են պահանջարկի բացահայտման որոշիչ գործոնները (մեկ շնչին ընկնող ապրանքաշրջանառությունն է և մանրածախ գների ինդեքսը)։ Այլ կլինի պատկերը, եթե ապրանքների փաստացի իրացումը և մնացորդն ուսումնասիրվեր քանակային-տեսակային հաշվառման հիման վրա։ Իսկ ապրանքների սոսկ գումարային հաշվառումը լավագույն դեպքում դրսևորում է պահանջարկի միայն ընդհանուր օրինաչափությունները։ Տվյալ մեթոդի էական թերությունն այն է, որ անտեսվում է բնակչության շերտավորումը ըստ եկամուտների, հաշվի չի առնվում սպառման բնամթերային աղբյուրները և այդ ամենը փոխարինվում է սոսկ ապրանքաշրջանառության ցուցանիշով։

Պահանջարկի կանխորոշման այլ ուղղության ներկայացուցիչներ գտնում են, որ հարկ չկա հիմնվել անցած տնտեսական-վիճակագրական տվյալների վրա, այլ նախորոշման հիմքում պետք է դնել պարենային ու արդյունաբերական ապրանքների բնակչության մեկ շնչի սպառման գիտականորեն հիմնավորված նորմաները կամ սպառման այն ռացիոնալ բնույթը, որին հնարավոր է հասնել տվյալ ժամանակաշրջանում։ Այս մեթոդը կիրառելի չէ կարճ ու միջին ժամանակի պահանջարկի նախորոշման համար, սակայն նպատակահարմար է նրանով օգտվել հեռանկարային պահանջարկի նախորոշման ժամանակ։

Հայտնի է, որ սոցիալ-տնտեսական գործոնների ազդեցությամբ ՍՍՀՄ-ում արագ տեմպերով աճում է սպառումը, հետևաբար և փոփոխվում է պահանջարկի բնույթը, բարդանում դրա կանխորոշումը։ Վերցնենք մի հանրահայտ օրինակ։ Ապրանքաշրջանառությունը երկրում աճում է ավելի բարձր տեմպերով, քան ազգաբնակչությունը, որի շնորհիվ սիստեմատիկաբար ավելանում է մեկ շնչին ընկնող վաճառված ապրանքների քանակը։ Այսպես, բավական

է ասել, որ 1967 թ., 1950 թ. համեմատությամբ (համադրելի գներով) շուրջ 3,5 անգամ ավելացել է Հայկական ՍՍՀ մեկ շնչին ընկնող պետական և կոոպերատիվ առևտրի շրջանառությունը, ներառյալ հասարակական սնունդը և սպառողական կոոպերացիայի միջոցով տեղական շուկայում գոյացող գներով վաճառված գյուղատնտեսական մթերքների շրջանառությունը: Առաջարկի քանակական ու որակական անընդհատ աճին զուգընթաց մեծացել է բնակչության գնողունակությունն ու զարգացել ճաշակը, հետևաբար և պահանջարկը, որոնց կռահումը հնարավոր է միայն այդ ուղղությամբ ազդող հիմնական գործոնների մանրազնին հետազոտությամբ:

Առևտրի կոնյունկտուրայի և պահանջարկի ուսումնասիրման համամիութենական գիտահետազոտական ինստիտուտն այժմ մշակում է սպառման պահանջարկի տնտեսական-մաթեմատիկական մոդել, որտեղ հնարավորին չափ հաղթահարվում են թվարկած մեթոդիկաների թերությունները և հաշվի առնվում պահանջարկի վրա ազդող հիմնական գործոնները: Այսպես, հաշվի է առնվում բնակչության ընդհանուր դրամական եկամուտը (հարկերից ու այլ հետպահումներից զատ), եկամուտների փոխհարաբերակցությունն ըստ սոցիոլոգիական հիմնական խմբերի (բանվոր-ծառայողներ և կոլտնտեսականներ), սպառման բնամթերային մասը (ինչպես նաև կոլտնտեսային շուկաներից կատարած գնումները), ապրանքների գները (ընդհանուր և անհատական ինդեքսը): Հետազոտման ընթացքում մանրամասն անալիզի է ենթարկվում նաև առևտրական-վիճակագրական տվյալների հիման վրա դուրս բերված դինամիկ շարքերից բխող օրինաչափություններն ու տենդենցները[1]:

Վերոհիշյալ մեթոդիկայի առանձնահատկությունն այն է, որ հետազոտությունը կատարվում է ոչ թե մասնակիից ընդհանուրը, այլ հակառակը, բնորոշվում է պահանջարկի ամբողջ ծավալը, ապա պարենային ու արդյունաբերական ապրանքների քանակը, այնուհետև դրանց խոշորացված խմբերինը և առանձին ապրանքները: Սա հնարավորություն է ընձեռում դուրս չգալ ընդհանուր գնողունակ պահանջարկի շրջանակներից, հաշվի առնել փոխարինվող սպառվող ապրանքները, այնուհետև սահմանելով պահանջարկի բընույթը, հաշվարկել նաև ապրանքաշրջանառության բնույթը, հաշվի առնելով առանձին ապրանքային ռեսուրսների սահմանափակվածությունը:

Պահանջարկի նախորոշումն ըստ երկրի տնտեսական առանձին շրջանների ու միութենական հանրապետությունների, համեմատաբար հեշտ է: Թվում է, որ փոքր հանրապետություններում, ինչպիսին Հայկական ՍՍՀ-ն է, նպատակահարմար է մանրածախ մի շարք տիպիկ ձեռնարկություններում (առաջիկայում ընտրանքային կարգով առանձնացվող օբյեկտներում) էլեկտրոնային հաշվիչ մեքենաների կիրառմամբ կազմակերպել իրացվող ապրանքների քանակային-տեսակային հաշվարկ: Այդ փաստացի, ւիարժեք ներկայացուցչական տվյալները հիմք կծառայեն բավարարված ու չբավարարված պահանջարկի բնույթի սահմանման ու նախորոշման համար: Առևտրի կոնյունկտուրայի և պահանջարկի ՀԳԻ հայկական մասնաճյուղը էլեկտրահաշվիչ մեքենաների բազայի արմատավորմանը զուգընթաց կընձեռի այդ աշխատանքը:

---

1 Տե՛ս Использование методов изучения потребительского спроса для нужд перспективного планирования, материалы международной конференции. М., 1967, стр. 80—81.





# ԳՈՐԿԻՆ ԵՎ ՀԱՅ ԻՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

(Գորկու ծննդյան 100-ամյակի առթիվ)

Պատմական յուրաքանչյուր անցման դարաշրջան ծնում է իր երգիչներին, աշխատավոր ժողովրդի խոհերի ու իղձերի արտահայտիչներին: Ռուսաստանում ծավալված ազատագրական պայքարի պրոլետարական էտապի ակունքներում ժողովրդական այդպիսի երգիչ էր Մաքսիմ Գորկին (1868—1936), որն իրավամբ ստացել է «հեղափոխության մրրկահավ» անունը: Ռուս գրականության այն մեծ նորարարն էր նա, որ հիմք դրեց սոցիալիստական ռեալիզմի գրականությանը, հումանիստական իր վիթխարի տաղանդով հսկայական ներգործություն ունենալով ողջ համաշխարհային գրականության և առաջավոր կուլտուրայի զարգացման վրա: Այդ Մ. Գորկու մատուցած պատմական մեծագույն ծառայությունն է:

Բազմաքանքար գործունեության առաջին իսկ քայլերից Գորկին իր ստեղծագործությունն ի սպաս դրեց աշխատավոր ժողովրդին: Հեղափոխականռոմանտիկ շնչով գրված նրա վաղ շրջանի երկերը տոգորված էին ազատ մարդու վսեմ երազանքներով, գոյություն ունեցող իրականության կրքոտ մերկաց-

ման պաթոսով: Այն հարցին, թե ինչո՞ւ է սկսել գրել, Ալեքսեյ Մաքսիմովիչը պատասխանել է. «...Ես այնքան շատ տպավորություններ ունեի, որ չգրել չէի կարող»:

Շարունակելով ռուս դասական գրականության պանծալի տրադիցիաները, քննադատական վերաբերմունք ցուցաբերելով իրականության նկատմամբ, Գորկին միաժամանակ սկզբունքային նորույթներ մտցրեց այդ տրադիցիաներում: Կյանքում տեղ գտած անիրավությունների դեմ նրա ցասկոտ բողոքն ուղեկցվում էր ուժեղ անհատի, ժողովրդի երջանկության համար պայքարող հպարտ մարդու արտացոլմամբ:

Գորկու ռեալիստական առաջին պատմվածքներում իսկ բավական ուժգին է հնչում սեփականատեր կապիտալիստների ու քաղքենիության դիմակազերծման թեման: Ընդ որում քաղքենիությունը նա հասկանում էր բառիս ամենալայն իմաստով: Հետագայում այդ թեման նա զարգացրեց իր հրապարակախոսական հոդվածներում և այնպիսի հանրահայտ պիեսներում, ինչպիսիք են՝ **Քաղքենիները** և **Հովեկները**: Իսկ ռոմանտիկական-հերոսական կերպարները (Դանկոն և մյուսները), Վ. Վ. Վորովսկու խոսքերով ասած՝ «հարուցում էին այն համարձակ, ուժեղ, ազատ զգացմունքներն ու մտքերը, որպիսիք անխուսափելիորեն ուղեկցում են ամեն մի հեղափոխական հեղաշրջման, առանց որոնց հոգեբանորեն անիմաստ է բուն իսկ հեղափոխությունը:

Յոթանասուն տարի է անցել Մ. Գորկու **Ակնարկների և պատմվածքների** առաջին հրատարակությունից (1898): Այդ ժողովածուն լայն ժողովրդականություն բերեց նրան: Նրա հերոսական-ռոմանտիկական **Բազեի երգը** (1895) և **Մրրկահավի երգը** (1901) հնչեցին որպես մոտալուտ հեղափոխության բոցաշունչ կոչ: Ահա հենց այդ ժամանակաշրջանում Գորկին հարում է լենինյան «Искра»-ին, գործուն մասնակցում բանվորական շարժմանը և առաջադիմական մամուլին: 1901 թվականին նա ձերբակալվեց և աքսորվեց Արզամաս: Լենինը «Искра»-ում վրդովմունքով էր գրում «եվրոպական հայտնի գրողի» նկատմամբ ցարական ինքնակալության այդպիսի վայրագ կամայականության մասին:

Երկու հարյուրամյակների սահմանագլխին գրված **Ֆոմա Գորդեև** (1899) ու **Երեքը** (1900) վեպերում, ինչպես նաև **Քաղքենիներ** (1901) և **Հատակում** (1902) պիեսներում արդեն նկատելի են նոր գրականության՝ սոցիալիստական ռեալիզմի գրականության գծերը: Ռուս գրականության մեջ Գորկին առաջինն էր, որ ստեղծեց մարտիկ-բանվորի, հասարակությունը վերափոխողի՝ Նիլի կերպարը (**Քաղքենիներ**): **Հատակում** պիեսի հերոսներից մեկի՝ Սատինի շուրթերով Գորկին ազդարարեց մեծատառով սկսվող մարդու հիմնը. «Մարդ—ահա ճշմարտությունը: Մարդն ազատ է... Մա՞րդ: Դա հիանալի է... Այդ... հպարտ է հնչում: Մա՞րդ: Պետք է հարգել մարդուն». այս խոսքերը կարող են դառնալ Ալեքսեյ Մաքսիմովիչի ողջ հումանիստական ստեղծագործության բնաբանը: Ահա այդ հումանիզմի մեջ է նրա ստեղծագործության մշտաթարմ, ներազդող ուժը: Քանի դեռ գոյություն ունի մարդկությունը, միշտ էլ կհնչեն նրա այս ուշագրավ խոսքերը:

«Գորկու դրամատուրգիան,— գրում է ռուս գրականության ականավոր գիտակ Ա. Վոլկովը,— իր մեջ զուգակցում է կենսական ճշմարտացիությունը և կուսակցական կրքոտությունը: Դրամատուրգի հայացքը հստակ արտահայտված է թե՛ մերկացման և թե հաստատման մեջ: Արտացոլելով հասարակության մեջ տեղի ունեցող հեղափոխական վերելքի տրամադրությունները, Գորկու պիեսներն ինքնին հեղափոխիչ հզոր գործոն են: Նրանք ունեին գաղափարական-դաստիարակչական վիթխարի ուժ»: Դրանք իրենց այդ ուժը չեն կորցրել նաև մեր օրերում:



Գորկու ստեղծագործության մեջ բազմակողմանի արտացոլվեց 1905—1907 թվականների ռուսական առաջին հեղափոխության ժամանակաշրջանը: Բոլշևիկների հետ մեկտեղ նա բանվոր դասակարգին էր համարում հեղափոխության գլխավոր շարժիչ ուժը, նշավակելով լիբերալ բուրժուազիային ու մենշևիկներին: Այդ տարիներին առանձնապես ուժգին հնչեց Գորկի-հրապարակախոսի ձայնը: ԱՄՆ-ի վերաբերյալ նրա երգիծական պամֆլետները, Ֆրանսիայի, Գերմանիայի մասին գրած հոդվածները մերկացնում էին կեղծ բուրժուական «դեմոկրատիան»: Դրանք այժմ ևս ակտուալ են հնչում և, ասես թե, ուղղված են մեր օրերի ամերիկյան ու արևմտա-գերմանական կապիտալիստների, «դեմոկրատիայի» ջատագովների դեմ:

Ռուսական առաջին հեղափոխության թեժ օրերին՝ 1906 թվականին, լույս տեսավ Մաքսիմ Գորկու հանրահռչակ **Մայրը** վեպը, որն այժմ թարգմանված է աշխարհի բոլոր լեզուներով: Համաշխարհային գրականության մեջ դժվար է գտնել մի այլ ստեղծագործություն, որն այնպիսի հեղափոխականացնող ներգործություն ունենար մասսաների վրա, ինչպիսին **Մայրը** վեպը: Նրա հերոսական-ռոմանտիկական հերոսներից հետո Պավել Վլասովը դարձավ ռուս նոր գրականության ամենահուժկու կերպարը, քանի որ այն արտացոլում էր ժողովրդի ազատության ու երջանկության համար պայքարող **գիտակից** մարտիկի վառ կերպարը:

Գորկու **Մայրը** վեպը, որը գրվել էր Լենինի **Կուսակցական կազմակերպությունը և կուսակցական գրականությունը** ծրագրային հոդվածից մեկ տարի հետո, գործնականում մարմնավորեց գրականության կուսակցականության վերաբերյալ լենինյան գաղափարը, դարձավ սոցիալիստական ռեալիզմի մեթոդի անկյունաքարը: Ուստի, պատահական չէ, որ Լենինը շատ բարձր գնահատեց այդ վեպը, այն անվանելով «Խիստ ժամանակակից գիրք»:

Ինքը՝ Մ. Գորկին մասնակցել է 1905 թ. հեղափոխությանը և հունվարի 9-ի ցույցի գնդակոծումից հետո գրել է մի թռուցիկ, որով կոչ էր անում տապալել ինքնակալությունը: Դրա համար Գորկին բանտարկվեց Պետրոպավլովսկի ամրոցում, որտեղ նրանից առաջ բանտարկվել էին դեկաբրիստները, Չեռնիշևսկին, Նալբանդյանը և նարոդովոլեցները... Ռուսաստանի ժողովուրդների ազատագրական շարժման հեղափոխական ավանդույթների ժառանգորդն էր Գորկին: 1905 թվականին նա մտավ բոլշևիկյան կուսակցության շարքերը և առաջին անգամ հանդիպեց Լենինին: Երկու տարի անց Լոնդոնում Գորկին մասնակցում էր կուսակցության V համագումարի նիստերին և հիացած հետևում մարքսիզմի գաղափարների հաղթանակի համար Լենինի մղած պայքարին: Դրանից հետո նրանց միջև հաստատվում է սերտ, բարեկամական նամակագրություն: Ինչպես ասում էր Լենինը՝ «Գորկին իր գեղարվեստական մեծ ստեղծագործություններով իրեն ամուր կապեց Ռուսաստանի և ողջ աշխարհի բանվորական շարժման հետ»: Հատկապես Լենինը Գորկուն օգնեց հասկանալու այն լուրջ սխալների էությունը, որ կատարել էր գրողը, ժամանակավորապես ընկնելով աստվածաշինարարների և օտզովիստների ազդեցության տակ, որոնց ղեկավարում էր հանրահայտ Ա. Ա. Բոգդանովը: Գորկու այդ գաղափարական տատանումներն արտացոլվեցին նրա **Խոստովանություն** (1908) վիպակում, ինչպես նաև 1909 թվականին Իտալիայի Կապրի կղզում կարդացած դասա-

խոսությունններում։ Սակայն Լենինի բարերար ազդեցությամբ Գորկին հրաժարվում է այդ սխալ հայացքներից և արդեն 1909 թվականին իր Ամառը վիպակում բոլշևիկյան կուսակցության դիրքերից նկարագրում է գյուղացիությունը՝ որպես հեղափոխության մեջ բանվոր դասակարգի դաշնակցի։ Վերադառնալով արտասահմանից (1913), նա դառնում է բոլշևիկյան մամուլի ակտիվ գործիչներից մեկը («Правда», «Звезда», «Просвещение»)։

Հեղափոխության վերելքն արտացոլվել է Մ. Գորկու Հեքիաթներ Իտալիայի մասին հայտնի գործում, որը բարձր է գնահատել Լենինը։ Դրան հաջորդեց ինքնակենսագրական տրիլոգիայի առաջին գիրքը՝ Մանկությունը (հետագայում լույս տեսան Մարդկանց մեջ և Իմ համալսարանները գրքերը)։ Հոկտեմբերյան հեղափոխության նախօրյակին Գորկին մեծ ջանքեր է գործադրում պրոլետարական գրողների և Ռուսաստանի տարբեր ազգությունների գրողների ստեղծագործությունները հրատարակելու ուղղությամբ։

Լենինը նորից օգնության հասավ Մ. Գորկուն, երբ այդ մեծ գրողը Հոկտեմբերյան հեղափոխության նախապատրաստման շրջանում՝ 1917 թվականին, նոր սխալներ թույլ տվեց։ Խիստ քննադատելով նրա սխալները՝ Լենինը ձգտում էր ամեն կերպ Գորկուն պահպանել կործանարար գաղափարների ազդեցությունից և նրան մասնակից դարձնել նոր կուլտուրայի ստեղծմանը։ Եվ, ինչպես հայտնի է, Լենինյան այդ հոգատարությունը, սրտացավ վերաբերմունքը տվեց իր դրական արդյունքը։ Գորկին մեծ խանդավառությամբ ձեռնամուխ եղավ պրոլետարական հեղափոխության ստեղծագործ աշխատանքին, որը, սակայն, ժամանակավորապես ընդհատվեց նրա հիվանդության և արտասահմանում բուժվելու (դարձյալ Լենինի խորհրդով) հետևանքով։

Գորկու ստեղծագործությունը մի նոր նշանակալի էտապ է բացել ռուս գրականության մեջ։ Երկրում տեղի ունեցող գաղափարական սուր պայքարի պրոցեսում ստեղծվում էր սովետական երիտասարդ բազմազգ գրականությունը։ Եվ դժվար է գերագնահատել Մ. Գորկու հսկայական դերը այդ գրականության զարգացման մեջ։ Դեռևս 20-ական թվականներին Գորկին գրեց իր Արտամոնովների գործը մոնումենտալ ստեղծագործությունը, Կլիմ Սամգինի կյանքը էպոպեան (որը նա սկսել էր 1925 թվականին և որի վրա շարունակում էր աշխատել մինչև իր կյանքի վերջը)։ 30-ական թվականներին Մ. Գորկին գրում է Եգոր Բուլիչովը և մյուսները, Դոստիգաևը և մյուսները պիեսները, վերամշակում իր Վասսա Ժելեզնովա դրաման։ Այդ տարիներին նոր ուժով հնչեց այդ կրքոտ հրապարակախոսի և հռետորի հուժկու ձայնը։

Մ. Գորկին եռանդագին գործունեություն էր ծավալել երկրի գրողների ուժերը համախմբելու և սովետական գրողների միություն ստեղծելու ուղղությամբ։ Սովետական գրողների առաջին համագումարում նրա կարդացած զեկուցումը սովետական բազմազգ գրականության զարգացման ծրագրային փաստաթուղթն էր, սոցիալիստական ռեալիզմի սկզբունքների հաստատումը՝ հենված պատմական պրոցեսի և կոմունիստական հասարակարգի կառուցման ասպարեզում աշխատավոր մասսաների դերի մարքս-լենինյան ըմբռնման վրա։

## 2

Գրողների համամիութենական առաջին համագումարում կարդացած իր զեկուցման մեջ Մ. Գորկին հատկապես ընդգծեց սովետական գրականության բազմազգ բնույթը։ «Սովետական գրականությունը,—ասում էր նա,— ռուսաց լեզվով գրված գրականություն չէ միայն. դա համամիութենական գրականություն է»։ Սովետական իշխանության տարիներին «փոքր» ժողովուրդների գրականության ու կուլտուրայի զարգացման վերաբերյալ Գորկու ցուցաբերած հոգատարությունը նրա այն ուշադիր վերաբերմունքի շարունակությունն էր, որպիսին դրսևորվում էր դեռևս հեղափոխությունից շատ առաջ։

Գրողի կյանքն ու գործունեությունն այնպես են դասավորվել, որ հենց սկզբից էլ նա սերտորեն կապված էր Կովկասի հետ։ Հայտնի է, որ Կովկասը ստեղծագործության վայր էր նաև դեկաբրիստների, Պուշկինի, Լերմոնտովի, Լև Տոլստոյի, իսկ հետագայում՝ Մայակովսկու, Բրյուսովի, Տիխոնովի և այլոց համար։

1892 թվականին Թիֆլիսի «Кавказ» թերթում հրապարակվեց Գորկու առաջին պատմվածքը՝ Մակար Չուդրան։ Այդ մեծ գրողի ստեղծագործական ուղու սկիզբն էր։ Հենց այդտեղ էլ, Թիֆլիսում, Գորկին շփվում է հայ առաջավոր ինտելիգենցիայի ներկայացուցիչների՝ Ս. Վարդանյանի, Ն. Կարա-Մուրզայի, Գ. Արծրունու[1] և մյուսների հետ։ Հետագայում Ն. Կարա-Մուրզան (Ղ. Աղայանի, Րաֆֆու, Ա. Շիրվանզադեի և այլ հայ գրողների գործերի թարգմանիչը) 1903 թվականին հրապարակած իր հետաքրքրական հուշերում գրել է. «...Ինձ վիճակվել է հանդիպել Ալեքսեյ Մաքսիմովիչ Պեշկովի հետ և միշտ էլ նա համակրությամբ է վերաբերվել տեղական ժողովուրդներին ու հետաքրքրվել է նրանց կյանքով»։

Հիրավի, մեծ ինտերնացիոնալիստը շատ հոգատար, ուշադիր էր Կովկասի ճնշված ժողովուրդների հանդեպ։ Երբ 1905 թվականին ցարական իշխանությունների թելադրանքով Կովկասի բուրժուա-նացիոնալիստական շրջանները եղբայրասպան կոտորածներ հրահրեցին, Գորկին, «Բաքու» թերթում մի հոդված գրեց այդ իրադարձությունների մասին, որտեղ զայրույթով դատապարտեց ցարիզմը և նրա գաղութատիրական քաղաքականությունը Կովկասում։ «Կովկասում եղած ժամանակ,— գրում է Գորկին,— ես ամենուրեք տեսնում էի, թե ինչպես խաղաղ և բարեկամաբար աշխատում էին միասին վրացին, թուրքն ու հայը, ինչպես մանկական ուրախությամբ ու պարզ կատակում էին նրանք, երգում ու ծիծաղում. և այնպես դժվար է հավատալ, որ այդ պարզ և սքանչելի մարդիկ այժմ բութ ու անմիտ կերպով կոտորում են միմյանց, ենթարկվելով իրենց գրգռող չար ու մութ ուժին»։ Այդ նամակ-հոդվածը վերջանում էր հետևյալ խոսքերով. «Մենք բոլորս մի թշնամի ունենք (այսինքն՝ ցարիզմը—Ս. Դ.)։ Թո՛ղ ուրեմն մեր ամենքի միջև լինի հավասարություն և եղբայրություն, թող ամենքիս պայծառացնի բանականության լույսը. ձուլվենք և դառնանք մի մեծ, անպարտելի կամք, և այն ժամանակ կեցցե՛ ազատությունը»։

Գորկին ականատես է եղել Կովկասի ժողովուրդների սերտ բարեկամությանը, պրոլետարական ինտերնացիոնալիզմին, հիացել նրանց ականավոր հեղափոխականների գործունեությամբ։ Լեգենդար Կամոյի (Ս. Տեր-Պետրոսյան) մասին նա գրել է իր լավագույն ակնարկներից մեկը։ «Ինձ համար,— ասել է Գորկին,— Կամոն մեկն է այն հեղափոխականներից, որոնց համար

---

[1] Հայ կուլտուրայի հետ Գորկու ունեցած կապերի մասին հետաքրքրական փաստեր կան Գ. Հովնանի, Հ. Հովհաննիսյանի, Ջ. Ղուկասյանի, Ս. Ռիզաևի և մյուսների գրքերում, ինչպես նաև «Գորկին և Հայաստանը» ժողովածուներում, որը տպագրության է պատրաստել Երևանի Պետական համալսարանը։

ապագան ավելի ուժեղ է, քան ներկան։ Այդ բնավ չի նշանակում, որ նրանք երազողներ են, ո՛չ, այդ նշանակում է, որ նրանց հուզական, դասակարգային հեղափոխական ուժը այնքան ներդաշնակ ու ամուր է, որ սնունդ է տալիս բանականությանը, իբրև հող է ծառայում նրա աճի համար, գնում է, ասես, նրա առջևից»։ Գորկին ձգտում է, որ հայ հեղափոխական լենինյան անօրինակ սխրանքների ու հերոսության մասին իմանան ժողովրդական ամենալայն մասսաները։ Հետագայում մեծ հետաքրքրություն էր ցուցաբերում Կամոյի մասին կինոֆիլմ ստեղծելու գործին, նամակների հեղեղով արագացնում ֆիլմի նկարահանումը։

Այն տարիներին, երբ բուրժուա-լիբերալ քննադատությունն աղմուկ էր բարձրացրել Մ. Գորկու շուրջը, հանդես էր գալիս մարքսիզմի դեմ, աշխատելով շեղել Գորկուն հեղափոխական ուղուց, նրա պաշտպանությամբ հանդես եկան մարքսիստ-քննադատները, նրանց թվում և Ստեփան Շահումյանը։ Ստ. Շահումյանն իր խմբագրած «Современная жизнь» բոլշևիկյան հանդեսում (1911 թ., մարտի 26 № 1) գրեց մի մեծ հոդված, որը Գորկու նախահեղափոխական շրջանի մասին գրված լավագույն հոդվածներից մեկն էր։ Շահումյանն ընդգծում էր Գորկու սերտ կապը ժողովրդի հետ, մերկացնում ոմն Ս. Այվազովի բուրժուա-ինտելիգենտական հայացքները և անողոք ձաղկում նրանց, ովքեր փորձում էին զրպարտել Գորկուն։ Վերլուծելով նրա այդ շրջանի մի շարք գործեր, Շահումյանն իր հոդվածի վերջում գրում է. «Գորկին պրոլետարական գրականության զարդն ու պարծանքն է... Եվ բանվորները հպարտությամբ կարող են ասել. «Այո՛, Գորկին մերն է, նա մեր արվեստագետն է, մեր բարեկամն ու զինակիցը աշխատանքի ազատագրության վեհ պայքարում»։

Հետագայում Ստ. Շահումյանը կրկին անդրադարձավ Գորկու ստեղծագործությանը։ «Պայքար» թերթում (1916, № 37) տպագրվում է նրա Մարդկանց մեջ ինքնակենսագրական վիպակի գրախոսականը։ «Летопись» հանդեսում գրախոսելով այդ վիպակը, Շահումյանը գրում է. «Ներկա համարի գեղարվեստական բաժնի զարդը, ինչպես միշտ, Գորկու գրվածքն է՝ Մարդկանց մեջ վերնագրով, որը դեռ շարունակվում է։ Այդ գրվածքն ինքնակենսագրական բնույթ է կրում և վերաբերում է Գորկու պատանեկան տարիներին։ Նրա Մանկության հետ միասին, որ լույս է տեսել առանձին գրքով, այդ աշխատությունը, անշուշտ, գրավելու է աչքի ընկնող տեղ ռուսական գեղարվեստական գրականության ամենափայլուն գործերի շարքում։ Գորկու ամեն մի տողը կարդացվում է էսթետիկական մեծ հաճույքով ու հետաքրքրությամբ»։

Գորկին այն առաջադեմ ականավոր գործիչներից է, որ ծանոթանալով հայ գրականությանը, զարմացավ, սիրեց ու հիացավ մեր գրականության գոհարներով։ Վալերի Բրյուսովի նման դառնալով մեր ժողովրդի ամենաջերմ բարեկամը, նվիրվեց հայ գրականության լավագույն ստեղծագործությունները համամարդկային ճանաչման արժանացնելու դժվարին գործին։ 1916 թվականին Պետրոգրադում Մ. Գորկու խմբագրությամբ լույս տեսավ Հայ գրականության ժողովածուն (գրեթե միաժամանակ Մոսկվայում լույս տեսավ հայկական պոեզիայի անթոլոգիան՝ հայ ժողովրդի մեծ բարեկամ Վ. Բրյուսովի խմբագրությամբ)։ Գորկու կազմած ժողովածուի նախապատրաստման ու հրատարակման գործին ակտիվ մասնակցեցին Վ. Տերյանը, Ա. Ծատուրյանը, Պ. Մակինցյանը, Կ. Միքայելյանը, Լ. Քալանթարը և այլ հայ գործիչներ։



Հայ գրողների գործերի թարգմանությանը Գորկին ներգրավեց այնպիսի ականավոր ռուս գրողների, ինչպիսիք են՝ Ի. Բունինը, Ա. Բլոկը, Վ. Բրյուսովը, Կ. Բալմոնտը, Ա. Շերվինսկին և ուրիշներ։

Ստ. Շահումյանը «Պայքար» թերթում (1916, № 33) հիացմունքով ողջունեց Գորկու այդ նախաձեռնությունը, նրա հրատարակած ժողովածուն համարելով հայ ժողովրդի բազմադարյան կուլտուրայի նկատմամբ ցուցաբերած խոր հարգանքի ու սիրո նշան։ Նշելով ժողովածուի մեծ արժեքը, միաժամանակ, նա քննադատեց ժողովածուի պակասությունները (Հակոբ Հակոբյանի ոտանավորները չզետեղելը, ներածական հոդվածներում եղած առանձին սխալներ և այլն)։

Հայ բոլշևիկյան մամուլում Գորկու ստեղծագործության մասին հանդես են եկել մարքսիստ-քննադատներ Ս. Սպանդարյանը, Ա. Կարինյանը և ուրիշներ։

Ստ. Շահումյանի նախաձեռնությամբ ծավալվեց Գորկու ստեղծագործությունների հայերեն թարգմանությունը, որին մասնակցում էին Հ. Հակոբյանը, Ա. Մռավյանը և ուրիշներ։ Ինքը՝ Շահումյանը թարգմանել է նրա Մի անգամ աշնանը (1901) պատմվածքը։ Գորկու գործերի թարգմանությունները տպագրվում էին «Մշակ», «Նոր դար» թերթերում, «Մուրճ», «Լումա», «Տարազ» հանդեսներում և այլ պարբերականներում։

Գորկու ստեղծագործությունները մեծ գնահատականի արժանացան հայ գրողների և կուլտուրայի գործիչների շրջանում։ Դեռևս 1901 թվականին Ավետիք Իսահակյանը թարգմանեց նրա Մրրկահավի երգը։ Հետագա տարիներին այդ մասին նա գրել է. «1901 թվականին ես գտնվում էի արևմուտքում, երբ իմ ձեռքն ընկավ Մրրկահավի երգը, Գորկու այդ սքանչելի ստեղծագործությունը, որը հենց նոր էր լույս տեսել։ Ես անմիջապես թարգմանեցի, և այն տպագրվեց արտասահմանյան հայկական թերթերում»։

Գորկու գործերի հայ թարգմանիչներն են եղել նաև Հովհ. Թումանյանը (Զկնորսն ու Ֆեյան, Վալախական Լեգենդ), Նար-Դոսը (Հեքիաթներ Իտալիայի մասին) և ուրիշներ։

Գորկու ստեղծագործության նկատմամբ առանձնահատուկ հետաքրքրասիրություն էր ցուցաբերում Ա. Շիրվանզադեն։ 1916 թվականի հունվարի 26-ին նա Գորկուն նամակ գրեց, որտեղ անկեղծ դրվատանքով էր խոսում նրա Մանկություն վիպակի մասին։ Նույն թվականի փետրվարի 1-ին Գորկին նրան պատասխանում է. «Ձեր գովասանքը խորապես հուզեց ինձ իր անկեղծությամբ... Դուք գրող եք, մի մարդ, որ ապրում է աշխարհի բոլոր ցավերով և ուրախություններով։ Դուք ինքներդ գիտեք, որքա՜ն գնահատելի, որքա՜ն ուրախալի է իմանալ, որ Ձեր խոսքը հասկանալի է Կովկասում և Անգլիայում, Սկանդինավյան թերակղզում և Իտալիայում... Ինձ համար հաճելի է հայտնել Ձեզ, որ ես մի քիչ ճանաչում եմ Ձեզ, կարդացել եմ Ձեր գործերը։ Իսկ Ձեր անունը առաջին անգամ լսել եմ 92 թվականին Թիֆլիսում և հետո՝ 97 թվականին, երբ նստած էի Մետեխի բանտում։ Տեսնո՞ւմ եք՝ մենք հին ծանոթներ ենք»։

Գորկու ստեղծագործությունը ոգեշնչման աղբյուր հանդիսացավ հայ կուլտուրայի մի շարք ականավոր գործիչների՝ կոմպոզիտորների, նկարիչների և դերասանների համար։ 1902 թվականին Ալ. Սպենդիարյանը երաժշտություն գրեց Զկնորսն ու Ֆեյան բալլադի համար։ Գորկին ներկա էր այդ երաժշտական գործի կատարմանը և բարձր գնահատեց այն. Գորկու կիսանդրին ժա-

մանակին պատրաստել էր նրա հայ բարեկամ, ականավոր քանդակագործ Հակոբ Գյուրջյանը։

Գորկին եղել է հայ թատրոնի ամենասիրված դրամատուրգներից մեկը։ 1908 թվականին հայերեն բեմադրվեց նրա Հատակում հայտնի պիեսը՝ Մոսկվայի համալսարանի սան Ս. Քափանակյանի բեմադրությամբ։ Դերերը կատարում էին հայ բեմի ականավոր վարպետներ Ի. Սեւումյանը (Սատին), Գ. Ավետյանը (Լուկա), Օ. Գուլազյանը (Ալյոշկա) և ուրիշներ։ Այդ ժամանակից ի վեր Գորկու պիեսները հաստատուն կերպով մտան հայ թատրոնների ռեպերտուարը։ Հայերեն հաճախ են ներկայացվել նրա Թշնամիները, Վերջինները, Վասսա Ժելեզնովան, Եգոր Բուլիչևը, Քաղքենիները և այլ պիեսներ։

Հայաստանում Գորկու ստեղծագործության նկատմամբ հետաքրքրասիրությունն առանձնապես մեծացավ սովետական իշխանության տարիներին, հատկապես 1928 թվականից հետո, երբ նա առաջին անգամ այցելեց Սովետական Հայաստան։ Այդ հանդիպումների մասին բազմաթիվ հիշողություններ կան, որոնք վկայում են հայ ժողովրդի վիթխարի սերը ռուս մեծ գրողի հանդեպ։ Այդ մասին հուզիչ տողեր են գրել Ստ. Զորյանը, Վ. Ալազանը և սովետահայ այլ գրողներ։ Ինքը՝ Գորկին, իր ակնարկներից մեկում անկեղծ ջերմությամբ է նկարագրել, թե իրեն ինչպես են ընդունել վերածնված Հայաստանի աշխատավորները։ Երևանի խոշորագույն ձեռնարկություններից մեկում, դիմելով բանվորներին՝ Գորկին ասել է. «Շնորհակալություն, ընկերնե՛ր, այն ամենի համար, որ դուք ցույց տվիք ինձ։ Ահա թե ինչ է նշանակում կյանքի տեր դարձած բանվոր դասակարգ։ Այն բոլորը, ինչ որ ես տեսա, դուք կատարել եք ձեր ձեռքով»։

Գորկին հայ գրողների համար հանդիսացել է ժողովրդի գործին, կուսակցության գործին ծառայելու մի ոգեշունչ օրինակ։ Հայաստանում հրատարակվում են նրա ստեղծագործությունների թարգմանությունները։ Դրանք արդեն դարձել են հայ ընթերցողի սեփականությունը, ընթերցողներ, որոնց համար Մ. Գորկին հարազատ գրող է և հավերժ կմնա այդպիսին։

ԴԱՐՈՆՅԱՆ Ս. Կ.

Եղբայրական

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

ԱԹԱԵՎ Զ.

Թուրքմենստանի Կոմկուսի Կենտկոմի քարտուղար

## ԹՈՒՐՔՄԵՆՍՏԱՆՆ ԱՅՍՕՐ



Վերջերս սովետական մարդիկ, աշխարհի բոլոր աշխատավորները, ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը հանդիսավորությամբ տոնեցին Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության կեսդարյա հոբելյանը։ Թուրքմեն ժողովուրդը երբեք չի մոռանա պատմության օրացույցում արձանագրված այդ ուրախալի ու լուսավոր տոնը։ Վերհիշելով սովետական իշխանության անցած ուղին, մեր երկրի ժողովուրդները, այդ թվում նաև թուրքմեն ժողովուրդը, բարձր են գնահատում տնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման բնագավառներում ձեռք բերված վիթխարի հաջողությունները։

Մինչև հոկտեմբերյան հեղափոխությունը Թուրքմենստանը թշվառության ու արցունքի երկիր էր, քաղաքական իրավազրկության, տնտեսական և կուլտուրական հետամնացության, համատարած անգրագիտության երկիր։ Աղքատությունն ու տառապանքը, կիզող արևի տակ առավոտից մինչև երեկո ուժից վեր ծանր աշխատանքը, տոհմա-ցեղային գժտությունները թուրքմեն աշխատավորների մշտական ուղեկիցներն էին։

Մեծ Հոկտեմբերը, սովետական կարգերի հաստատումը թուրքմեն ժողովրդի ուսերից առհավետ թոթափեցին ստրկության և ճնշման ծանր բեռը, նրան ազատեցին աղքատությունից ու հետամնացությունից, ոգեշնչեցին մարքսիզմ-լենինիզմի վերափոխող մեծ գաղափարներով։ Սովետական իշխանության տարիներին թուրքմեն ժողովրդի կյանքում տեղի ունեցան մեծ փոփոխություններ։ Սովետական ժողովուրդների իրավահավասար ընտանիքում Թուրքմենստանը վիթխարի թռիչք կատարեց նախնադարյան հետամնացությունից դեպի առաջադիմություն, վերածվեց ինդուստրիալ-ագրարային սոցիալիստական հանրապետության, որն ունի ժամանակակից առաջնակարգ

արդյունաբերություն, բարձր մեքենայացված գյուղատնտեսություն: Հանրա-
պետությունում ձևավորվել և աճել է բանվոր դասակարգ, կոլտնտեսային
գյուղացիություն, ազգային խոստումնալից մտավորականություն:

Սոցիալիստական շինարարության տարիներին աճեցին ու զարգացան
հանրապետության արտադրաուժերը, դրսևորվեցին թուրքմեն ժողովրդի
ստեղծագործական տաղանդները: Մեր երկրի անսպառ բնական ռեսուրսնե-
րը, նրա ընդերքի հսկայական հարստություններն առաջին անգամ սկսեցին
ծառայել աշխատավոր մարդուն:

Թուրքմեն ժողովրդի իսկական հպարտությունն է կազմում բուռն թա-
փով զարգացող սոցիալիստական արդյունաբերությունը: Այժմյան Թուրք-
մենստանը ծածկված է գործարանների և ֆաբրիկաների, նավթաբուրգերի և
նորակառույց աշտարակների խիտ ցանցով: Ստեղծվել ու բուռն թափով
զարգանում են արդյունաբերական միանգամայն նոր ճյուղեր: Ութերորդ
հնգամյակի առաջին տարում արդյունահանվել է 11 միլիոն տոննա նավթ՝
83 անգամ ավելի, քան 1913 թվականին և գրեթե այնքան, որքան արդյու-
նահանվում էր ամբողջ ցարական Ռուսաստանում: Հոբելյանական տարում
նավթի հանույթը Թուրքմենստանում հասել է գրեթե 12 միլիոն տոննայի:

Կուսակցությունը և կառավարությունն ըստ արժանվույն գնահատել են
հանրապետության նավթագործների հաջողությունները: Անցած յոթնամյա-
կում Թուրքմեննեֆթ արտադրամիավորումը պարգևատրվել է Լենինի շքա-
նշանով, իսկ 130 մարդ՝ Սովետական Միության զանազան շքանշաններով
ու մեդալներով: Սովետական իշխանության տարիներին հատուկ ուշադրու-
թյուն է հատկացվել էներգետիկ բազայի ստեղծմանը, որը հանդիսանում է
հանրապետության ամբողջ ժողովրդական տնտեսության հիմքը: Ներկայումս
մեզ մոտ տարեկան արտադրվում է 500 անգամ ավելի էլեկտրաէներգիա, քան
արտադրվում էր նախահեղափոխական Թուրքմենստանում:

Վերջին վեց տարում էլեկտրաէներգիայի արտադրությունը հանրապե-
տությունում կրկնապատկվել է: Արագորեն զարգանում են քիմիան, մեքե-
նաշինությունը և արդյունաբերության այլ ճյուղեր: Առաջնակարգ տեխնի-
կայով են սարքավորված հանրապետության այնպիսի ձեռնարկություններ,
ինչպիսիք են Կրասնովոդսկու նավթավերամշակման, Ջելեքենի յոդաբրոմա-
յին, Չարջոուի սուպերֆոսֆատի գործարանները, Աշխաբադի ապակյա կոմ-
բինատը, տեքստիլ և մետաքսամանման ֆաբրիկաները, մեքենաշինական,
մետաղամշակման գործարանները և այլն:

Սովետական Թուրքմենստանի արդյունաբերական արտադրանքը վա-
ճառահանվում է մեր երկրի բոլոր կարևորագույն տնտեսական շրջանները:
Առանձնապես մեծ հեռանկարներ են բացվում Թուրքմենստանի գազի ար-
դյունաբերության առջև: 1966 թվականի նոյեմբերին շահագործման հանձնը-
ված Աչակի առաջին գազահորերը Բուխարա-Ուրալ գազամուղով ինդուստրի-
ալ Ուրալին արդեն տվել են մոտ 300 միլիոն խորանարդ մետր բնական գազ:

Դա դեռ սկիզբն է միայն: Սովետական իշխանության հիսնամյակի
նախօրյակին շարք է մտել Միջին Ասիա-Կենտրոն գերհզոր մագիստրալա-
յին գազամուղը, որը ժողովրդատնտեսական վիթխարի նշանակություն ունի:
Այն միջինասիական ընդերքի էժանագին «կապույտ վառելիքը» հասցնում է
երկրի կարևորագույն արդյունաբերական շրջաններին, այդ թվում մեր մեծ
հայրենիքի մայրաքաղաք Մոսկվային, Հոկտեմբերյան մեծ հեղափոխության



օրրան Լենինգրադին: Դա թուրքմեն ժողովրդի լուրջ ավանդն է Սովետական
Միության վառելիքային ընդհանուր հաշվեկշռի մեջ:

Թուրքմենական ՍՍՀ-ի արդյունաբերության արտադրանքը պահանջարկ
ունի նաև մեր երկրի սահմաններից դուրս: Այն արտահանվում է աշխարհի
ավելի քան 40 երկիր: Նրա սպառողներն են (բացի սոցիալիստական երկրնե-
րից), Ասիայի և Աֆրիկայի նոր զարգացող երկրները, նույնիսկ ԱՄՆ-ը,
Անգլիան, Ֆրանսիան և Ճապոնիան:

Արդյունաբերության բուռն զարգացման բազայի վրա ստեղծվել ու
բարգավաճել են ժամանակակից նոր բարեկարգ քաղաքներ՝ Նեբիտ-Դաղը,
Ջելեքենը, Բեզմեինը: Հիմնովին բարեփոխվել է հանրապետության հին քա-
ղաքներ Չարջոուի, Մարու, Տաշաուզի դեմքը: Սովետական Թուրքմենստանի
մայրաքաղաք Աշխաբադը դարձել է արդյունաբերական բազմապիսի ձեռ-
նարկությունների, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնա-
կան հաստատությունների, գիտա-հետազոտական ինստիտուտների, թատ-
րոնների, կուլտուրայի ու արվեստի այլ օջախների քաղաք:

Շատ առաջ է գնացել նաև Սովետական Թուրքմենստանի գյուղատնտե-
սությունը: Մինչև հեղափոխությունը գյուղատնտեսությունը, որ կազմում էր
երկրամասի էկոնոմիկայի հիմքը, գտնվում էր նատուրալ և պրիմիտիվ վի-
ճակում: Գյուղատնտեսության հիմնական գործիքը համարվում էր փայտյա
արորը: Հոկտեմբերյան հեղափոխության նախօրեին ամբողջ Անդրկասպյան
մարզում կար ընդամենը 64 գութան: Ցածր մակարդակի վրա էր գտնվում
անասնաբուծությունը. այն քոչվորական էր:

Այդ ամենը վաղուց են անցել պատմության գիրկը: Երկրի ինդուս-
տրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման՝ կուսակցության քաղա-
քականության շնորհիվ մեր գյուղատնտեսությունը դրվեց ինդուստրիալ հիմ-
քերի վրա, լայն ասպարեզ բացվեց նրա զարգացման համար. կարճ ժամա-
նակաշրջանում գյուղատնտեսական արտադրությունը դարձավ բարձրապ-
րանքային:

Այժմ Թուրքմենստանի կոլտնտեսություններն ու սովխոզները բազմա-
ճյուղ ձեռնարկություններ են, զինված նորագույն տեխնիկայով: Հանրապե-
տության գյուղատնտեսության մեջ այսօր գործում են տարբեր մարկայի
և հզորության 25 հազար տրակտոր, 1300 կոմբայն, մոտ 5 հազար բամբա-
կահավաք և կնգուղահավաք մեքենաներ, գրեթե 8 հազար ավտոմեքենա և
տասնյակ հազար այլ գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ: Տնտե-
սությունների ճնշող մեծամասնությունը մշակում է բամբակ, բանջարա-
բոստանային կուլտուրաներ, պտղատու և խաղողի այգիներ, զարգացնում է
անասնաբուծությունը: Նրանք տարեցտարի արտադրում են ավելի շատ գյու-
ղատնտեսական մթերքներ և դրա հիման վրա աճում են նրանց հիմնական
արտադրաֆոնդերը, դրամական և բնամթերային եկամուտները, ավելի լավ
բավարարվում կոլտնտեսությունների և սովխոզների աշխատողների նյութա-
կան ու կուլտուրական պահանջմունքները:

Բերենք մի երկու թիվ, որոնք ցույց են տալիս բարձր մեքենայացված
սոցիալիստական գյուղատնտեսության հաջողությունները: 1966 թվականին
հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները արտադրել և պե-
տությանը վաճառել են 656 հազար տոննա բամբակի հումք՝ 186 հազար
տոննայով ավելի, քան պլանավորված էր:

Օգտագործելով նախորդ տարվա աշխատանքի դրական փորձը, համա-

ժողովրդական լայն մրցություն ծավալելով Հոկտեմբերի 50-ամյակին արժանավայել դիմավորելու համար, մեր կոլտնտեսությունները և սովխոզներն անցյալ տարվա դեկտեմբերի 26-ի դրությամբ արտադրեցին և պետությանը վաճառեցին 700 հազար տոննա բամբակի հումք (այդ թվում 135 հազար տոննա նրբաթել տեսակի), կամ տասն անգամ ավելի, քան այն արտադրվել է նախահեղափոխական Թուրքմենստանում։ Այդպիսով Հոբելյանական տարում հանրապետությունը բամբակի հումքի վաճառքի պլանը կատարել է 145,86 տոկոսով։ Հաջողությամբ կատարվել է նաև հացահատիկի, մսի, կաթի, բանջարեղենի, մորթիների, բրդի, մետաքսի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրության ու վաճառքի պլանները։ Հոբելյանական տարում իրենց սոցիալիստական պարտավորությունները պատվով կատարեցին հանրապետության բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզները։

Կուսակցությունը և կառավարությունը միշտ բարձր են գնահատել մեր կոլտնտեսականների և սովխոզների բանվորների հայրենանվեր աշխատանքը։ Դեռևս 1966 թվականին ձեռք բերած արտադրական հաջողությունների համար ՍՍՀՄ Մինիստրների սովետը և ՀԱՄԿԽ-ը մեր հանրապետությանը շնորհեցին փոխանցիկ կարմիր դրոշ։ Գյուղատնտեսական արտադրության զարգացման և պլանային բոլոր առաջադրանքների հաջող կատարման համար Աշխաբադի շրջանի «Սովետ Թուրքմենիստանի» և Լենինյան շրջանի Թելմանի անվան կոլտնտեսությունները պարգևատրվեցին Լենինի շքանշանով, Չարջոու շրջանի «XX կուսհամագումարի», Թեջենի շրջանի Կալինինի անվան կոլտնտեսությունները, Կարակումի Լենինի անվան ջրանցքի գոտում հողերի ոռոգման և յուրացման «Կարակումստրոյ» վարչությունը՝ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով։

Հանրապետության կուսակցական և սովետական կազմակերպությունները, բոլոր աշխատավորները հերոսական ջանքեր են գործադրել, որպեսզի ամրապնդեն այդ հաջողությունները, նվաճեն նոր բարձունքներ։ Թուրքմեն ժողովուրդը բամբակի արտադրության ավելացումը դիտում է որպես ինտերնացիոնալ պարտականություն, որպես Թուրքմենստանի կարևոր ներդրումն աշխատանքի համամիութենական բաժանման գործում։

Թուրքմենստանի համար ոռոգումը խիստ կենսական հարց է։ Ահա թե ինչու մեզ մոտ մեծ մասշտաբներով ջրատնտեսական շինարարություն է իրականացվում։ Կառուցված են Կարակումի ջրանցքը, որը 800 կիլոմետր երկարությամբ ձգվում է թավշյա փխրուն ավազների միջով, ոռոգման և կոլեկտորա-դրենաժային սիստեմներ՝ Տաշաուզի, Չարջոուի և Մարու շրջաններում։ Ներկայումս իրականացվում է Կարակումի ջրանցքի երրորդ հերթի շինարարությունը, որը բարենպաստ պայմաններ է ստեղծելու հողային նոր մասսիվները տնտեսական շրջանառության մեջ մտցնելու և դրանցից բարձր բերք ստանալու համար։

Հանրապետության գյուղատնտեսության զարգացման բնագավառում ծառացած խնդիրների լուծմանը մեծապես օգնել են և շարունակում են օգնել կուսակցության XXII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965) և մայիսյան (1966) պլենումների որոշումները։ Դրանցում նախատեսված միջոցառումների իրականացումը անհրաժեշտ նախադրյալներ ստեղծեց յուրաքանչյուր կոլտնտեսության և սովխոզի շահութաբեր աշխատանքի համար



և բարձրացրեց գյուղատնտեսության բոլոր աշխատողների նյութական շահագրգռվածությունը։

Կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության, եղբայրական ժողովուրդների և առաջին հերթին, ռուս մեծ ժողովրդի մշտական ու հարաճուն օգնությունը թուրքմեն աշխատավորներին անփոխարինելի ազդակ են մեր զարգացման համար։ Տնտեսական բնագավառում թուրքմեն ժողովրդի ձեռք բերած աչքի ընկնող հաջողությունները ապահովել են աշխատավորների կենսամակարդակի անշեղ բարձրացումը, նրանց նյութական բարեկեցության արագ աճը։ Թուրքմենստանի բանվորների և ծառայողների ռեալ եկամուտներն անցած յոթնամյակում աճել են 32,5 տոկոսով, իսկ կոլտնտեսականներինը՝ 31,5 տոկոսով։ Կոլտնտեսականի ամսական միջին վաստակը 1966 թվականին, 1964 թվականի համեմատությամբ աճել է մոտ 2 անգամ։ Այդ նույն ժամանակամիջոցում մարդ-օրվա վարձատրությունն ավելացել է գրեթե երկու անգամ։

Գյուղատնտեսության առաջընթացի հետ միասին մեր կոլտնտեսությունները լուրջ ուշադրություն են դարձնում աշխատավորության կուլտուրական մակարդակի բարձրացման և նրանց կենցաղային պայմանների բարելավման վրա։ Այդ նպատակով մեր հանրապետությունում ստեղծված է կոլտնտեսության նախագահի՝ կուլտուրայի գծով տեղակալի ինստիտուտ։ Այդ պաշտոնը, որպես կանոն, վարում են գյուղական ինտելիգենտ կանայք։

Թե ինչ կարող են անել կոլտնտեսությունները կուլտուրական շինարարության բնագավառում, ցույց է տալիս Կերկինի «Կոմունիզմ» գյուղատնտեսական արտելը, որին 30 տարի շարունակ ղեկավարում է սոցիալիստական աշխատանքի հերոս, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Ջամակուլի Մահամովը։ Այստեղ կա գյուղատնտեսական գիտելիքների հասարակական հիմունքներով գործող համալսարան, որի երկու ֆակուլտետներում (հողագործության և անասնաբուծության) սովորում են 160 մարդ։ Դասախոսությունները կարդում են շրջանային արտադրական վարչության մասնագետները, գիտնականները։

Շատ բան կարելի է պատմել կոլտնտեսության յոթ դպրոցի մասին, որոնցում ընդգրկված են ավելի քան 2 հազար սովորող։ Այստեղ յուրաքանչյուր կոլտնտեսային ընտանիք, միջին թվով, ստանում է 4 թերթ և ամսագիր։ Կոլտնտեսությունում կա 3 մանկապարտեզ և 14 մանկամսուր—գրեթե այնքան, որքան 1925 թվականին կար ամբողջ հանրապետությունում։

Սովետական իշխանության տարիներին Թուրքմեն ժողովուրդը հասել է ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական իր կուլտուրայի ծաղկմանը։ Մինչև մեծ Հոկտեմբերի հաղթանակը թուրքմեն ժողովուրդը գրեթե անգրագետ էր։ Բնակչության ամեն հազար մարդուց այս կամ այն աստիճանի գրագետ էր միայն յոթը, նրանք էլ ցարական չինովնիկների, բեկերի և մոլլաների զավակներ էին։ Սովետական կարգերի շնորհիվ Թուրմենստանում կատարվել է իսկական կուլտուրական հեղափոխություն։ Ներկայումս հանրապետությունում կա 1611 հանրակրթական դպրոց, 514 հազար աշակերտներով, պետական համալսարան, պոլիտեխնիկական, գյուղատնտեսական, բժշկական և մանկավարժական ինստիտուտներ և այլն։

Հատկանշական է, որ Թուրքմենստանը բարձրագույն մասնագետների պատրաստման գծով առաջ է անցել ոչ միայն Արևելքի, այլև Եվրոպայի բարձր զարգացած երկրներից։ Բնակչության յուրաքանչյուր 10 հազար մար-

դուն մեզ մոտ ընկնում է 115 ուսանող: Դա երկու անգամ ավելի է, քան Ֆրանսիայում, 4 անգամ ավելի, քան Թուրքիայում, 11 անգամ ավելի, քան Իրանում:

Թուրքմենական ՍՍՀ-ի Գիտությունների ակադեմիայում և հանրապետության 56 գիտահետազոտական ինստիտուտներում աշխատում են 2600-ից ավելի գիտնական:

Բուռն ծաղկում է Թուրքմենական սովետական գրականությունը, որը յուրացրել է ժողովրդական բանաստեղծության հարուստ ժառանգությունը, ռուսական և մյուս եղբայրական ժողովուրդների, ինչպես նաև արտասահմանյան կլասիկ գրականության լավագույն տրադիցիաները: Թուրքմեն բանաստեղծները և արձակագիրները ստեղծել են մի շարք հիանալի երկեր, որոնք ճիշտ են արտացոլում մեր ժողովրդի կյանքն ու ստեղծագործական առօրյան: Թուրքմեն լավագույն արձակագիրներ և բանաստեղծներ Բերդի Քերբաբաևի, Բեկի Սեյտակովի, Խիդիր Դերյաևի, Կարա Սեյտլիևի, Տոուշան Էսեններայի և մյուսների անունները լավ հայտնի են ոչ միայն մեր հանրապետությունում, այլև ՍՍՀՄ-ում և արտասահմանում:

Մեծ վերելք է ապրում նաև Սովետական Թուրքմենստանի արվեստը: Հանրապետության թատրոնները վերջին տարիներում տվել են մի շարք նոր բեմադրություններ, որոնք ճշմարտացիորեն են պատկերում մեր ժամանակակիցների կյանքը: Աշխաբադի կինոստուդիան թողարկել է հաջողված նոր կինոնկարներ: Դրանց թվին է պատկանում երկսերիանոց «Վճռական քայլ» կինոնկարը (Բերդի Քերբաբաևի համանուն վեպի հիման վրա), որը բեմադրել է տաղանդավոր ռեժիսոր՝ ՍՍՀՄ ժողովրդական դերասան Ալթի Կալիևը: «Վճռական քայլ» կինոֆիլմը հաջողությամբ ցուցադրվում է ոչ միայն Սովետական Միությունում, այլև արտասահմանյան երկրներում:

Թուրքմենստանի կոմունիստական կուսակցությունը և նրա Կենտկոմը մասսաների կոմունիստական դաստիարակության գործում մեծ նշանակություն են տալիս ՍՍՀՄ եղբայրական ժողովուրդների տնտեսական և կուլտուրական համագործակցությանը: Այդ իմաստով լավ արդյունք տվեցին ռուսական, իսկ այնուհետև ուզբեկական գրականության և արվեստի տասնօրյակները Թուրքմենական ՍՍՀ-ում, որոնք վերածվեցին մեր ժողովուրդների կուլտուրաների փոխադարձ հարստացման կարևոր գործոնի: Կուլտուրայի նվաճումների փոխանակումը մեր երկրում դարձել է կենսական պահանջ, քանի որ այն օգնում է ժողովուրդների հոգեկան զարգացմանը, հնարավորություն է ընձեռում մեկ ժողովրդի հաջողությունը դարձնել բոլորի սեփականությունը:

Մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը տրադիցիոն է և այն դրսևորվում է կյանքի բոլոր բնագավառներում: Այդ մասին են վկայում փորձի մշտական փոխանակումը արդյունաբերության բոլոր ճյուղերում, հանրապետության արվեստի աշխատողների հյուրախաղերը Միության մայրաքաղաքը և Մոսկվայի ստեղծագործական լավագույն կոլեկտիվների փոխադարձ այցելությունները Թուրքմենստան: Մեր ժողովուրդը ուրախ էր իր հնամենի հողում ընդունելու ռուս գրականության և արվեստի աշխատողներին. ցույց տալու նրանց, թե ինչպիսի հաջողությունների է հասել հանրապետությունը սովետական իշխանության տարիներին:

Սովետական իշխանության մեծագույն նվաճումն է աշխատավոր կնոջ ազատագրումը, նրա ակտիվ մասնակցությունը հասարակական-քաղաքական



կյանքին, տնտեսական և կուլտուրական շինարարությանը: Կանանց տաղանդը, որոնող միտքը, սուր աչքը, հոգատար սիրտը զգացվում է ամենուրեք, աշխատանքի բոլոր տեղամասերում: Թուրքմենստանի աշխատավորները երկրի 112 դուստրերի ընտրել են ՍՍՀՄ և հանրապետության Գերագույն սովետների դեպուտատներ: 7220 կին ընտրվել են տեղական սովետների դեպուտատներ, 81 թուրքմենուհի հանդիսանում են կուսակցության շրջկոմների և քաղկոմների քարտուղարներ, շրջգործկոմների նախագահների տեղակալներ: Միթե՞ նշանակալից երևույթ չէ այն, որ Թուրքմենստանի 55 աշխատավոր կանանց շնորհվել է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում, ավելի քան 55 հազար կին պարգևատրվել է Սովետական Միության շքանշաններով և մեդալներով, հազարից ավելի կանայք կրում են մայր-հերոսուհու պատվավոր կոչումը: Թուրքմենուհիների մեջ կան գիտության շատ դոկտորներ և թեկնածուներ:

Կանանց շրջանում տարվող աշխատանքում կուսկազմակերպությունները հենվում են կինխորհուրդների վրա, որոնք ավելի մոտ են կանգնած կանանց տարբեր խավերին, լավ գիտեն նրանց կարիքներն ու պահանջները, մշտապես ջանում են, որպեսզի կանանց համար ստեղծվի բեղմնավոր աշխատանքի և խելացի հանգստի անհրաժեշտ պայմաններ: Այդ խորհուրդները հնարավորություն ունեն զարգացնել կանանց ունակությունները և քաղաքական ակտիվությունը, օգնել կուսկազմակերպություններին ստեղծելու կին կադրերի ռեզերվներ, աշխատավորուհիներին դաստիարակելու կոմունիստական բարձր գաղափարայնության, ժողովուրդների բարեկամության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով:

Թուրքմեն ժողովուրդը խորապես գիտակցում է, որ իր բոլոր հաջողություններով, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում ձեռք բերած համաշխարհային-պատմական հաղթանակներով երախտապարտ է կոմունիստական կուսակցությանը, ռուս և եղբայրական մյուս ժողովուրդներին:

Մենք անսահման երջանիկ ենք նրանով, որ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, հանճարեղ Լենինը, նրա կոփած կոմունիստական կուսակցությունը թուրքմեն ժողովրդին խավարից և իրավազրկությունից դուրս են բերել սոցիալիստական շինարարության լուսավոր ուղին, թուրքմեններին առհավետ ազատագրել դարավոր ճնշումից ու կեղեքումից, բարենպաստ պայմաններ ստեղծել նրանց ինքնուրույնության ու պետության զարգացման համար:

Թուրքմեն ժողովուրդը սովետական իշխանության տարիներին համաշխարհային-պատմական հաղթանակների է հասել շնորհիվ այն բանի, որ նոր կյանքի համար միշտ պայքարել է կոմունիստական կուսակցության լենինյան դրոշի ներքո, որ սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում հանրապետության աշխատավորների գործունեությունը ղեկավարել ու ղեկավարում է Թուրքմենստանի կոմկուսակցությունը՝ ՍՄԿԿ մարտական ջոկատներից մեկը:

Իր գոյության տարիներին Թուրքմենստանի կոմկուսակցությունը քաղաքական և գաղափարա-կազմակերպչական տեսակետից զգալիորեն աճել է ու ամրապնդվել, ձեռք բերել կոմունիստական շինարարության ղեկավարման փորձ և հմտություն, դարձել մասսաների շրջահայաց ղեկավար և կազմակերպիչ: Եթե 1925 թվականի հունվարի 1-ին ԹԿԿ շարքերում կար ընդամենը 5240, ապա այժմ՝ 62672 կոմունիստ:

Վերջին ժամանակներս, հատկապես Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հիսնամյակին նախապատրաստվելու ժամանակաշրջանում, հանրապետության կուսակցական կազմակերպություններում գաղափարական կյանքն բավականին հարստացել և ակտիվացել է։

Կուսկազմակերպություններն այժմ ավելի հմտորեն և նպատակասլաց են պրոպագանդում կոմունիստների հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթները, որոնք էական դեր են խաղում նոր մարդու հոգեկան կերպարի ձևավորման գործում։

Նոր հնգամյակը վիթխարի հեռանկարներ է բացել հանրապետության ժողովրդական տնտեսության առջև։ Այս հնգամյակում արդյունաբերական արտադրությունը կաճի 1,57 անգամ։ Զգալիորեն կզարգանան այնպիսի առաջատար ճյուղեր, ինչպիսիք են էներգետիկան, մեծ քիմիան, նավթա-գազային և թեթև արդյունաբերությունը։ Առաջիկայում պետք է շարք մտնեն Մարու շրջանային պետական էլեկտրակայանը և պլաստմասսայի գործարանը։ Նեբիտ-Դաղի յոդ-բրոմի գործարանը, Չարջոուի ձեթ-օճառի և նավթավերամշակման կոմբինատները, բամբակազտիչ 14 գործարան և այլ նոր ձեռնարկություններ։ Մեծ զարգացում է ստանալու նաև հանրապետության գյուղատնտեսությունը և, մանավանդ, բամբակի արտադրությունը։

Հնգամյա պլանը, որի գլխավոր նպատակն է ժողովրդի բարօրության և երջանկության ապահովումը, հաջողությամբ կենսագործվում է։ Հանրապետության էկոնոմիկայի հետագա զարգացման գործում մեծ նշանակություն կստանան արդյունաբերության, տրանսպորտի, շինարարական կազմակերպությունների, կոլտնտեսությունների և սովխոզների առաջավոր կոլեկտիվների նախաձեռնությամբ հնգամյակը չորս տարում կատարելու համար ծավալված սոցիալիստական մրցությունը։

Պաշտպանելով առաջավոր կոլեկտիվների հայրենասիրական այդ նախաձեռնությունը, Թուրքմենստանի կուսակցական կազմակերպությունները հանրապետության բանվորների, գյուղացիների և մտավորականության ստեղծագործական ուժերն ուղղում են հնգամյակի երրորդ տարվա առաջադրանքները ժամկետից շուտ և բարձր որակով կատարմանը։

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԱՐԱՐԱՏՅԱՆ ՀԱՐԹԱՎԱՅՐԻ ՎԱՐԵԼԱՀՈՂԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ՄԱՍԻՆ

ԿԱՐԱԳՅՈԶՅԱՆ Ս. Մ.

Գյուղատնտեսական էկոնոմիկայի և կազմակերպման հայկական գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտոր

Արարատյան հարթավայրը հանրապետության գյուղատնտեսության ամենաեկամտաբեր գոտին է։ Հողը, արևը և ջուրը այստեղ բացառիկ նպաստավոր պայմաններ են ստեղծում գյուղատնտեսական արժեքավոր բույսերի աճի ու զարգացման համար։ Կազմելով հանրապետության տերիտորիայի շուրջ 13 տոկոսը, այս գոտին տալիս է գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքի ավելի քան մեկ երրորդը։ Այստեղ հասունանում են իրենց քաղցրությամբ, համով և բուրմունքով մեծ համբավ վայելող խաղող, ծիրան, դեղձ, պոմիդոր, սեխ, ձմերուկ և այլ արժեքավոր պտուղներ։

Կլիմայական բարենպաստ պայմանների և երկարատև վեգետացիոն շրջանի շնորհիվ այս գոտում հնարավոր է միևնույն տարում ստանալ վաղահաս կուլտուրաների երկու, երբեմն, նույնիսկ երեք բերք։ Արարատյան դաշտավայրի կոլտնտեսություններն ու սովխոզներն ստանում են գյուղատնտեսական կուլտուրաների բարձ բերք։ Առաջավոր տնտեսությունները, բրիգադները և օղակները հեկտարից հավաքում են խաղող՝ 150—200, պտուղ՝ 80—100, բանջարանոցային կուլտուրաներ՝ 500—800, հացահատիկ՝ 40—50, առվույտ (չոր խոտ)՝ 120—150 ցենտներ։ Այսպիսի պայմաններում մեկ հեկտարի ընդհանուր եկամուտը կարող է հասնել մինչև 5—6 հազար ռուբլու։

Արարատյան հարթավայրը միշտ էլ աչքի է ընկել իր արգավանդ հողերով, փարթամ այգիներով և ցանքերով։ Ժողովուրդն արդարացիորեն այս գոտին անվանել է «Հայաստանի մարգարիտը»։ Սակայն, ինչպես ամբողջ հանրապետության, այնպես էլ այս գոտու գյուղատնտեսությունն առանձնապես մեծ չափերով զարգացավ սովետական կարգերի հաստատումից հետո, երբ հնարավոր դարձավ սոցիալիստական գյուղատնտեսությունը զինել գյուղատնտեսական հզոր մեքենաներով, ստեղծել ոռոգման լայն ցանց, արտադրությունն ապահովել հանքային պարարտանյութերով և այլ միջոցներով։ Դրանք հնարավորություն տվին կոլտնտեսային և սովխոզային արտադրությունն ինտենսիվացնելու և գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու։

Ահա այս պայմաններում, յուրաքանչյուր հեկտար հողային տարածու-
թյան մտածված և ճիշտ օգտագործումը, մանավանդ Հայաստանի սակավա-
հողության պայմաններում, ժողովրդական տնտեսության համար կունենա
շատ կարևոր նշանակություն։
Հայտնի է, որ բանջարա-բոստանային և մասամբ էլ կերային կուլտու-
Հայտնի է, որ բանջարա-բոստանային և մասամբ էլ կերային կուլտու-
րաների արտադրությունն ավելացնելու նպատակով, 1961 թվականից սկսած,
Արարատյան դաշտավայրում բամբակի մշակումն աստիճանաբար կրճատ-
վում է և այս տարվանից այն լրիվ կդադարեցվի։ Նշենք, որ միշտ էլ բամբա-
կի ցանքերին տրամադրվել են լավագույն հողեր, որոնք տարիներ շարունակ
պարարտացվել են մեծ նորմաներով և մշակվել ագրոտեխնիկական կա-
նոններին լիովին համապատասխան։ Ուստի, բամբակից ազատված տարա-
ծությունները այս գոտու ամենաարգավանդ վարելահողերն են։ Եթե հաշվի
առնենք, որ բամբակենու ցանքատարածությունները կազմում էին Արարատ-
յան դաշտավայրի վարելահողերի ավելի քան 30 տոկոսը, այսինքն՝ մոտ 14
հազար հեկտար, ապա կարող ենք ասել, որ դրանց նպատակահարմար օգ-
տագործումը հնարավորություն կտա, առաջին հերթին, լրիվ բավարարելու
Երևանի բնակչության բանջարա-բոստանային մթերքների պահանջը և միա-
ժամանակ զգալիորեն կբարելավվի թարմ կաթի մատակարարումը։
Բամբակից ազատված հողերի հաշվին, վերջին 5—6 տարիներում, 2,4
անգամ մեծացել են բանջարա-բոստանային կուլտուրաների ցանքատարա-
ծությունները. դրա, ինչպես և բերքատվության բարձրացման շնորհիվ այդ
կուլտուրաների համախառն արտադրանքն ավելացել է 3 անգամ. որոշ չա-
փով ավելացել են նաև կերային կուլտուրաների, հատկապես, առվույտի
ցանքատարածությունները։ Սակայն դեռևս բամբակից ազատված տարածու-
թյունների զգալի մասն օգտագործվում են ցածր արդյունավետությամբ։ Այդ
հողերի օգտագործման կայուն պլան նախօրոք չսահմանելու հետևանքով
տեղի է ունեցել որոշ դիմազրկություն. ընդհանրապես այս գոտու ցանքերի
մոտ 36 տոկոսը կազմում են հացահատիկային կուլտուրաները, որը ոչ մի
կերպ արդարացնել չի կարելի։
Ներկայումս, կառավարության որոշմամբ, մշակվում են հանրապետու-
թյան գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման հարցերը, որով
կլուծվի նաև բամբակից ազատված հողերի ճիշտ օգտագործման խնդիրը։
Այդ կապակցությամբ մեքերի փոխանակության կարգով, հայտնում ենք
մեր նկատառումները, որոնց կենսագործումը, մեր կարծիքով, կնպաստի Արա-
րատյան դաշտավայրի վարելահողերի առավել նպատակահարմար օգտա-
գործմանը։
Հանրապետության պետպլանի մշակած ծրագրի համաձայն և որոշ տըն-
տեսագետների[1] կարծիքով, Երևանի բնակչության թարմ կաթի պահանջի մեծ
մասը (60—70 տոկոսը) պետք է բավարարել Արարատյան դաշտավայրում

1 Օ. Կ. Պերվիչինա—Երևանի մերձքաղաքային գոտու կոլտնտեսություններում կաթի
արտադրության կազմակերպման մի քանի հարցերի մասին («Հայաստանի գյուղատնտեսու-
թյան էկոնոմիկայի հարցերը» հ. 3, 1963 թ.)։ Ա. Կ. Այրումյան, Օ. Կ. Պերվիչինա—Կաթի ար-
տադրությունը մերձքաղաքային գոտում և Երևանի բնակչության մատակարարումը նրանով
(«Հայաստանի գյուղատնտեսության էկոնոմիկայի հարցերը», հ. 4—5, 1966 թ.)։ Ռ. Ի. Դա-
նիելյան, «Արարատյան հարթավայրի կոլտնտեսությունների և սովխոզների զարգացումը և
ներշրջանային, ներտնտեսային մասնագիտացման հեռանկարները»— զեկուցում՝ կարդացված
ՀՍՍՀ գյուղմինիստրության գիտական սեսիայում, 1967 թ.



զարգացող կաթնատնտեսային անասնապահության միջոցով, որի համար ան-
հրաժեշտ է զգալիորեն ավելացնել խոշոր եղջերավոր անասունների (հատ-
կապես կովերի) գլխաքանակը, մեծ չափով ընդարձակել կերաբույսերի
(գլխավորապես առվույտի, եգիպտացորենի և արմատապտուղների) ցանքա-
տարածությունները, դրանք հասցնելով ավելի քան 20 հազար հեկտարի
(այսինքն՝ այդ գոտու բոլոր վարելահողերի մոտ 50 տոկոսին)։ Այդ տեսա-
կետի հեղինակները գտնում են, որ թարմ վիճակում օգտագործվող կաթի
արտադրությունը նպատակահարմար է կազմակերպել դրա սպառման մոտիկ
վայրերում։ Այս առաջին հայացքից ճիշտ է թվում։ Սակայն, երբ բազմակող-
մանի քննում ենք տվյալ խնդիրը, չի կարելի անվերապահորեն համաձայնել
այդ տեսակետին։ Նախ, միտք ունի՞, արդյոք, Արարատյան դաշտավայրի
բացառիկ բարձրորակ վարելահողերի ընդհանուր տարածության կեսն զբա-
ղեցնել առվույտով և այլ կերաբույսերով, երբ դրանց օգտագործմամբ ստաց-
վող կաթի եկամուտը երբեք չի կարող համեմատվել այս գոտում մշակվող
որևէ այլ կուլտուրայի տված արդյունքի հետ. այստեղ մեծ են կաթի արտա-
դրման ծախսերը, ուստի և դրա ինքնարժեքը վաճառքի գնից շատ ավելի
բարձր է։ Արարատյան հարթավայրի շրջաններում հողատարածությունների
համեմատ գյուղատնտեսական կենդանիների գլխաքանակը, համեմատած
հանրապետության միջին ցուցանիշների հետ, հետևյալ պատկերն է ներկա-
յացնում։

Անասունների գլխաքանակը գյուղատնտեսության գծով օգտագործվող 100
հեկտար հողատարածության հաշվով (առ 1 հունվարի 1967 թ. դրությամբ)։

| | Արարատյան դաշտավայրում | Հանրապետությունում |
|---|---|---|
| Խոշոր եղջերավոր անասուններ | 58,6 | 50,0 |
| Այդ թվում՝ | | |
| կովեր | 23,5 | 19,7 |
| Մանր եղջերավոր անասուններ | 203,0 | 167,0 |
| Խոզեր | 43,2 | 21 |

Ինչպես տեսնում ենք, Արարատյան դաշտավայրի յուրաքանչյուր 100
հեկտար հողատարածության հաշվով պահվող անասնագլխաքանակն ավելի
շատ է, քան հանրապետության առումով։ Եթե ամբողջ անասնագլխաքանակը
պայմանականորեն վերածենք կովերի, ապա Արարատյան դաշտավայրի 100
հեկտար օգտագործելի տարածությանը կհասնի 77,4 կով, իսկ հանրապետու-
թյունում՝ 65։ Այս գոտում խոշոր եղջերավոր անասունների, ինչպես և կո-
վերի գլխաքանակը (100 հեկտար տարածության հաշվով) ավելի բարձր է,
քան, նույնիսկ, Ստեփանավանի և Կալինինոյի շրջաններում, իսկ ոչխարների
գլխաքանակը՝ քան Բասարգեչարի շրջանում և այլն։
Արարատյան դաշտավայրի պայմաններում անասնապահության այսպի-
սի զարգացումը, իհարկե, չի կարող իրեն արդարացնել։ Նախ՝ պետք է մտա-
ծել անասնապահության որոշ ճյուղերի, հատկապես ոչխարների գլխաքանա-
կի կրճատման, ինչպես և մյուս անասունների գլխաքանակի ավելացումը
սահմանափակելու մասին։ Այլապես, հնարավոր չէ սեփական կերով ապա-
հովել այդպիսի գլխաքանակը, առանց լուրջ վնասներ պատճառելու բուսա-

բուծությանը, մանավանդ, եթե հաշվի առնենք նաև կոլտնտեսականների և
սովխոզների բանվոր-ծառայողների օժանդակ տնտեսություններում եղած
անասունների կերի պահանջը: Ապարդյուն կլինի հուսալ, որ վերջինս հնա-
րավոր է ապահովել տնամերձ հողերի հաշվին, քանի որ դրանց մեծ մասն
զբաղված է խաղողով, պտուղներով, մի մասն էլ՝ բանջարանոցային կուլ-
տուրաներով:

Մի հարց ևս. Արարատյան դաշտավայրի պայմաններում արտադրվող
կաթի որակը, համը, վիտամինների պարունակությունը կարելի՞ է համեմա-
տել մեր լեռնային շրջաններում արտադրվող կաթի որակի հետ: Ահա հար-
ցեր, որոնց չի կարելի անտեսել: Կարող են հարցնել, հապա ինչպե՞ս ապա-
հովել Երևան քաղաքի արագ աճող բնակչության թարմ կաթի պահանջը:
Իրոք, այդ շատ կարևոր է. և դրա լուծումը կապված է որոշ դժվարությունների
հետ: Սակայն այդ բնավ իրավունք չի տալիս հարցը լուծելիս ընտրել թույլ
դիմադրության ուղին և Արարատյան դաշտավայրը մասնագիտացնել գերա-
զանցապես կաթնաանասնապահական ուղղությամբ:

Կարծում ենք, այդ հարցը կարելի է շատ ավելի նպատակահարմար լու-
ծել, եթե նկատի ունենանք ժամանակակից գիտության ու տեխնիկայի նվա-
ճումները և սոցիալիստական գյուղատնտեսության լայն հնարավորություն-
ները:

Նախ՝ պետք է ընդունել, որ Երևանի բնակչության թարմ կաթի պահան-
ջի մի մասը, ինչպես այժմ, բավարարելու են Արարատյան դաշտավայրի
տնտեսությունները. ընդ որում այդ գոտու տնտեսություններում հիմնակա-
նում պետք է ծավալվի կաթնաանասնապահությունը՝ առավել ինտենսիվ
զարգացման մակարդակով: Երկրորդ, նպատակահարմար է այդ գոտու վա-
րելահողերի 30—35 տոկոսը միայն հատկացնել կերային կուլտուրաների
մշակությանը (չհաշված խոզանացան կուլտուրաների տարածությունը) և
անասնապահության ծավալը պայմանավորել այդ տարածությունից ստաց-
վող կերի ու, մասամբ, գնման միջոցով ձեռք բերվող խտացրած կերի քա-
նակով (հաշվի առնելով նաև կոլտնտեսականների ու բանվոր ծառայողների
սեփական անասունների կերի պահանջի մի մասը):

Այս պայմաններով, Արարատյան դաշտավայրի հաշվին կարելի է ապա-
հովել Երևանի բնակչության թարմ կաթի պահանջի մոտ 35—40 տոկոսը: Մնա-
ցած մասը պետք է ապահովել այլ շրջաններից ստացվող կաթի միջոցով: Ընդ
որում, առաջին հերթին, պետք է նկատի ունենալ Ապարանի ու Աշտարակի
շրջանները, որոնցից առաջինն ունի կաթնաանասնապահության զարգացման
նպաստավոր պայմաններ և ընդգրկված է Երևան քաղաքն սպասարկող գոտու
մեջ: Իսկ մյուսը (Աշտարակ) Արզնի-Շամիրամ ջրանցքի երկրորդ հերթի
կառուցմամբ կստացվի մոտ 17 հազար հեկտար ջրովի նոր տարածություն,
որի մի մասը կարելի է հատկացնել կերաբույսերի մշակությանը և այդպի-
սով զարգացնել կաթնատնտեսային անասնապահությունը:

Ներկայիս կատարելագործված փոխադրականների պայմաններում բա-
վականին հնացել են արագ փչացող մթերքների տեղափոխման հնարավոր
հեռավորությունների նախկին հասկացողությունները: Հայրենական արտա-
դրության, սառցարանային հարմարանքներով կաթ փոխադրող մեքենաները՝
(ռեֆրի ժերատորներ) կաթը թարմ վիճակում կարող են կարճ ժամանակա-
միջոցում փոխադրել հեռավոր տարածություններ: Ըստ որում, այս մեքենա-
ներով կաթը փոխադրելիս (համեմատած բիդոններով փոխադրման հետ) մի



քանի անգամ պակասում են կորուստները (թե՛ քաշի և թե յուղայնության
տեսակետից) և զգալի չափով նվազում փոխադրածախսերը: Նկատի ունե-
նալով մեր հանրապետության շատ շրջանների նպաստավոր դիրքը, կարծում
ենք, նպատակահարմար կլինի որոշ տարածություններ կաթը փոխադրել հա-
տուկ խողովակներով: Եվ, վերջապես, հեռու չէ այն ժամանակը, երբ կաթը
լեռնային շրջաններից կարելի կլինի տեղափոխել այդ նպատակին հարմա-
րեցված ուղղաթիռներով:

Կաթի արտադրման շատ կարևոր միջոց է մասնագիտացած արդյունա-
բերական տիպի տնտեսություն-ֆաբրիկաների կազմակերպումը: Այսպիսի
տնտեսություններում նպատակահարմար է պահել հազար և ավելի գլխաքա-
նակով, բարձր կաթնատվությամբ կթու կովեր, որպիսիք կստանան պլանա-
յին կարգով կեր համապատասխան կազմակերպություններից: Ընդ որում,
այստեղ պետք է արտադրվի միայն հյութալի կեր:

Մյուս խնդիրը, որի վրա առանձնապես լուրջ ուշադրություն պետք է
դարձնել, հանրապետությունում արտադրվող կաթի ընդունման և առաքման
կարգավորումն է: Այս հարցում կան լուրջ թերություններ, որոնց հետևան-
քով տեղի է ունենում կաթի զգալի կորուստ՝ թե քանակի և թե որակի տեսա-
կետից: Ներկայումս, հանրապետության Մինիստրների սովետի հանձնարա-
րությամբ, գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման գիտահե-
տազոտական ինստիտուտն ուսումնասիրում ու մշակում է կաթնատնտեսական
ձեռնարկությունների գործունեությունը բարելավելու տնտեսագիտական մի-
ջոցներ: Այս հարցի ճիշտ լուծումը պահանջում է արմատականորեն բարելա-
վել ու կարգավորել ընդունող և վերամշակող կետերի ցանցը, ինչպես նաև
ճիշտ կազմակերպել կաթի փոխադրումը տնտեսություններից և դրա առաքու-
մը սպառողին: Այս գործում շատ կարևոր նշանակություն ունի նաև ճանա-
պարհների բարեկարգումը:

Այս և մի շարք այլ ձեռնարկումների (հատկապես զոոտեխնիկական մի-
ջոցառումների բարելավման ուղղությամբ) շնորհիվ կավելանա կաթի արտա-
դրությունը և շատ ավելի արդյունավետ ճանապարհով կլուծվի բնակչությա-
նը թարմ կաթով ապահովելու խնդիրը: Միաժամանակ Արարատյան դաշտա-
վայրը կազատվի անասնապահական գերծանրաբեռնվածությունից, որն այդ
գոտու բնակլիմայական պայմաններում մյուս ճյուղերի հետ երբեք չի կա-
րող մրցել և ավելի շահութաբեր լինել:

Հաշվի առնելով այս բոլորը, պետք է ասել, որ Արարատյան դաշտավայ-
րի վարելահողերը կարելի է շատ ավելի նպատակահարմար օգտագործել,
քան այժմ կամ առաջիկա տարիների համար նախագծվում է:

Ներկայումս այս գոտու վարելահողերի մոտ 70 տոկոսը կոլտնտեսու-
թյունների տրամադրության տակ է, 23-ը սովխոզների և մնացած 7 տոկոսն
օգտագործում են կոլտնտեսականներն ու սովխոզների բանվոր-ծառայողնե-
րը: Կոլտնտեսություններում և սովխոզներում վարելահողերը գյուղատնտե-
սական կուլտուրաներով զբաղված են հետևյալ կերպ (1966 թ. վիճակով).
աշնանացան ցորեն՝ 30 տոկոս, բանջարա-բոստանային կուլտուրաներ՝ 22,9,
կերային (այդ թվում գարի)՝ 35,8, տեխնիկական՝ 8,7, այլ կուլտուրաներ
2,6 տոկոս:

Ինչպես տեսնում ենք, աշնանացան ցորենը և կերային կուլտուրաները
միասին վերցրած զբաղեցնում են Արարատյան դաշտավայրի վարելահողերի
մոտ 66 տոկոսը և միայն մնացած 34 տոկոսն է օգտագործվում բանջարա-

բոստանային, տեխնիկական և այլ կուլտուրաների համար: Դաշտավարական
կուլտուրաների այսպիսի կառուցվածքը երբեք չի կարող ապահովել վարե-
լահողերի արդյունավետ օգտագործումը և այդ գոտին, որպես Երևան քա-
ղաքն սպասարկող, չի կարող ինչպես հարկն է իրեն արդարացնել: Գյուղա-
տնտեսական արտադրության ճիշտ մասնագիտացման նպատակն է՝ յուրա-
քանչյուր գոտում, շրջանում ու տնտեսությունում տեղադրել և զարգացնել
այն ճյուղերը, որոնք այդ պայմաններում առավել արդյունավետ կլինեն: Այս
տեսակետից, նպատակահարմար ենք գտնում Արարատյան դաշտավայրի կոլ-
տնտեսություններում ու սովխոզներում մշակվող դաշտավարական կուլտու-
րաների համար սահմանել մոտավորապես հետևյալ կառուցվածքները՝ հա-
ցահատիկ (աշնանացան ցորեն)՝ 15%, բանջարա-բոստանային կուլտուրա-
ներ և կարտոֆիլ՝ 40, կերային կուլտուրաներ՝ 30 և շարահերկ կուլտուրաներ
(խորդենի, ընդեղեններ, արմատապտուղ և այլն)՝ 15%: Գյուղատնտեսական
կուլտուրաների այսպիսի հարաբերակցության 7—8 դաշտյա ցանքաշրջա-
նառության պայմաններում, կապահովվի մեկ դաշտ աշնանացան, երկուսը,
առվույտ, երեքը՝ բանջարա-բոստանային կուլտուրաներ ու կարտոֆիլ և մեկ
կամ երկու դաշտ մնացած կուլտուրաները:

Վարելահողերի օգտագործման այս ձևն առաջարկում ենք մոտակա տա-
րիների համար: Հետագայում, ցանքատարածությունների ընդարձակման
հետ միասին (աղակալած հողերի իրացման և այլ նոր տարածությունների
յուրացման հաշվին) կարող է այդ հարաբերակցությունը որոշ չափով փոփոխ-
վել:

Անհրաժեշտ ենք համարում նշել, որ Արարատյան դաշտավայրի հարուստ
պայմաններն ավելի լիարժեք օգտագործելու, այդ գոտուն մեծ ուշադրու-
թյուն նվիրելու դեպքում, այն կարելի է դարձնել հարավային արժեքավոր,
բարձրորակ պտուղների ու բանջարեղենի հարուստ շտեմարան և այդ բարիք-
ներով ո՛չ միայն լրիվ բավարարել հանրապետության բնակչության պահանջ-
ները, այլև ավելի մեծ չափերով արտահանել Միության կենտրոնական քա-
ղաքները, քան արվում է այժմ: Այսպիսով, Արարատյան դաշտավայրի բա-
ցառիկ հարուստ բնապատմական հնարավորությունները կօգտագործվեն շատ
ավելի ճիշտ ու լիարժեք:

# ՁԵՌՔ ԲԵՐԱԾԸ ՍԱՀՄԱՆ ՉԻ

ԽԱՉԱՏՐՅԱՆ Ս. Ս.

Մարտունու շրջանի Վարդենիկ գյուղի կոլտնտեսության նախագահ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հիսնամյա հոբել-
յանական տարին վառ ու անմոռաց տպավորություններ թողեց մեր կոլտնտե-
սականների ու կոլտնտեսուհիների վրա: Նրանց հայրենանվեր գործերի՝ գյուղա-
տնտեսական մթերքների արտադրության ավելացման բնագավառում ձեռք
բերած հաջողությունների համար կոլտնտեսությունը պարգևատրվեց կառավա-
րական ամենաբարձր պարգևով՝ Լենինի շքանշանով, ինչպես նաև ՍՍՀՄ Մի-
նիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի փոխանցիկ դրոշով, իսկ կոմերիտական կազ-
մակերպությունը՝ համԼԿԵՄ Կենտկոմի հուշադրոշով:

Իսկ կոնկրետ որոնք են այն հաջողությունները, որ Գեղամա բարձ-
րանիստ լեռների հյուսիս-արևմտյան ստորոտում փռված 1200 տնտեսությու-
նից բաղկացած Վարդենիկի կոլտնտեսությանը հնարավորություն տվին
Լենինի շքանշանի և միութենական փոխանցիկ դրոշի արժանանալու: Ասենք
համառոտակի:

Հետևողականորեն կենսագործելով կուսակցության և կառավարության
մշակած միջոցառումները, մեր սկզբնական կուսակցական կազմակերպու-
թյունն ու կոլտնտեսության վարչությունը վերջին տարիներին ավելի խելոք,
ավելի մտածված կազմակերպեցին արտադրությունը և հասան այն բանին, որ
տարեց-տարի, պրոգրեսիվ կերպով բարձրացավ գյուղատնտեսական կուլտու-
րաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը: Դրանք
ցույց տանք համապատասխան տվյալներով:

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը
(յուրաքանչյուր հեկտարի՝ ցենտներով)

| Թվականներ | Հացահատիկ | Պտուղ | Կարտոֆիլ | Ծխախոտ |
|---|---|---|---|---|
| 1964 | 14,83 | 54,20 | 197,20 | 20,47 |
| 1965 | 16,80 | 57,30 | 150 | 23,33 |
| 1966 | 21,0 | 73,7 | 110 | 23,70 |
| 1967 | 21,5 | — | 180 | 28,20 |

Բերված տվյալներից երևում է, որ գյուղատնտեսական կուլտուրաների
բերքատվությունը զգալի չափով բարձրացել է։ Սակայն 1965 և 1966 թվական-
ներին, 1964 թվականի համեմատությամբ, իջել է միայն կարտոֆիլի բերքա-
տվությունը, որը հետևանք է բնական անբարենպաստ եղանակների, որոնք
թույլ չտվին բերքն անկորուստ հավաքելու։ Դրությունը փոխվեց 1967 թ., երբ
կոլտնտեսությունը ամեն մի հեկտարից ստացավ 180, իսկ Նորիկ Աբգարյանի,
Սուրիկ Օհանյանի և սոցիալիստական աշխատանքի հերոս Վաչագան Գաս-
պարյանի ղեկավարած բրիգադները՝ 253—290 ցենտներ կարտոֆիլ։ Այստեղից
հետևում է, որ մեր հողագործները կարտոֆիլի մշակության և նրա բերքա-
տվության բարձրացման ասպարեզում բավականին փորձ ունեն, որն անհրա-
ժեշտ է ավելի լավ օգտագործել։
Անցած գյուղատնտեսական տարում մի քանի անգամ կարկտահարության,
ցրտահարության հետևանքով մենք այգիներից համարյա բերք չստացանք, իսկ
ծխախոտի պլանտացիաների՝ կրկնակի սածիլման, լավ խնամքի և լրացուցի-
այլ ծախսերի միջոցով հեկտարից ապահովեցինք 28,20 ցենտներ բերք։
Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և հանրային անաս-
նաբուծության մթերատվության ավելացման բնագավառում մեր կոլտնտեսու-
թյան ձեռք բերած հաջողությունները, ամենից առաջ, արդյունք են կոլտնտե-
սականների նյութական շահագրգռվածության բարձրացման, հիմնական ար-
տադրաֆոնդերի աճման և հանրային արտադրության ինտենսիվացման։
Գաղտնիք չէ, որ ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումի որոշման
համաձայն գյուղատնտեսական հիմնական մթերքների գնման գների բարձ-
րացման շնորհիվ համապատասխանաբար բարձրացավ նաև կոլտնտեսությու-
ների դրամական եկամուտը։ Դա լուրջ խթան հանդիսացավ հանրային ար-
տադրության հետագա զարգացման և, հատկապես, արտադրության ապ-
րանքային մասի ավելացման համար։ Այդ ճանապարհով մեր կոլտնտեսու-
թյան դրամական եկամուտը 1964 թվականի 825 հազար ռուբլու դիմաց 1965
թվականին կազմեց մեկ միլիոն 61 հազար, 1966-ին՝ մեկ միլիոն 68 հազար
և 1967-ին՝ մեկ միլիոն 300 հազար ռուբլի։ Գրավականն այն է, որ նույն-
պիսի համամասնությամբ էլ ավելացավ կոլտնտեսականների աշխօրերի դիմաց
բաշխվող եկամուտը։ Այսպես, 1964 թվականին մեկ աշխօրին տրված 1 ռ.
96 կ. դիմաց 1966 թ. բաշխվեց 3 ռ., 1967 թվականին 3 ռ. 10 կոպ.։
Մոտավոր հաշվումներով մեր յուրաքանչյուր աշխատունակ կոլտնտեսա-
կան հանրային տնտեսությունից տարեկան ստանում է 1000 ռ. եկամուտ։ Եթե
նկատի ունենանք, որ ամեն մի ընտանիքում կա 3 աշխատունակ կոլտնտե-
սական (միջին թվով), ապա պարզ կդառնա, որ յուրաքանչյուր ընտանիք
հանրային տնտեսությունից տարեկան ստանում է 3000 ռ. եկամուտ։ Դա,
ինչ խոսք, բոլորը չէ։ Մեր հաշվարկումների համաձայն, կոլտնտեսականների
յուրաքանչյուր ընտանիք 1500 ռ. եկամուտ էլ ստանում է իր օժանդակ տնտե-
սությունից։ Այսպիսով կոլտնտեսականի ընտանիքի տարեկան եկամուտը
կազմում է 4500 ռուբլի, որն ապահովում է նրա բարեկեցիկ կյանքը։ Հենց
դա էլ այն կարևոր գործոններից մեկն է, որ մեր բոլոր կոլտնտեսականները
ակտիվ մասնակցում են հանրային տնտեսության աշխատանքներին և ամեն
կերպ ձգտում բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, ավե-
լացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Նրանցից ամեն
մեկն շատ լավ գիտի, որ ինչքան բարձրանա գյուղատնտեսական կուլտուրա-



ների բերքատվությունն ու անասնաբուծության մթերատվությունը, այնքան
էլ կբարձրանա հանրային տնտեսությունից իրենց ստացած եկամուտը։
Առաջներում, երբ կոլտնտեսականներն ստանում էին իրենց արտա-
դրանքի չնչին մասը, երբ ցածր էր աշխօրի արժեքը, կոլտնտեսությունում
լուրջ տեղաշարժեր չէին նկատվում։ Եվ ինչպես կարող էր նկատվել, երբ կու-
տակման ու սպառման միջև չկար շատ թե քիչ նորմալ համամասնություն։
Աշխօրերի դիմաց բաշխվող ֆոնդը առանձնացվում էր բոլոր տեսակի ֆոնդերի
առանձնացումից հետո։ Այլ կերպ ասած, աշխօրերի դիմաց բաշխվում էր
այն, ինչ մնում էր, իսկ հաճախ այդ մնացածը այնքան քիչ էր, որ կոլտնտե-
սականներին չէր շահագրգռում կոլտնտեսությունում աշխատելու, հանրային
տնտեսության արտադրանքը ավելացնելու։ Հենց որ վերջին տարիներում
էական քայլեր արվեցին կուտակման ու սպառման հարաբերակցությունը կա-
նոնավորելու, ընդ որում հանրային արտադրանքից առաջին հերթին առանձ-
նացվեց աշխօրերի դիմաց բաժանվող ֆոնդը, առանց վարչական որևէ մի-
ջամտության կոլտնտեսականները ակտիվորեն մասնակցեցին դաշտավարա-
կան բրիգադների ու անասնապահական ֆերմաների աշխատանքներին և,
որ կարևոր է, հոգատարությամբ պահպանեցին ու բազմապատկեցին հան-
րային ունեցվածքը։
Մեր կոլտնտեսության հաջողությունների մյուս կարևոր պայմանը հիմ-
նական արտադրաֆոնդերի ամրապնդումն ու զարգացումն է։ Բանն այն է,
որ ամեն տարի, որպես կանոն, համապատասխան կապիտալ ներդրումներ
ենք կատարում արտադրաֆոնդերի նորացման ու ավելացման համար, քաջ
իմանալով, որ առանց դրա կոլտնտեսային արտադրությունը չի զարգանա և
մենք կդոփենք տեղում։
Կապիտալ ներդրումներ կատարելիս մենք հետևում ենք, որ հիմնական
արտադրաֆոնդերում առավել մեծ տեսակարար կշիռ կազմեն արտադրության
ակտիվ ու կարևոր տարրերը, ինչպիսիք, ասենք, գյուղատնտեսական մեքե-
նաներն են։ Այդ գործում ցուցաբերած հետևողականության շնորհիվ կոլտնտե-
սության հիմնական արտադրաֆոնդերում այժմ կան 19 տրակտոր, 10 հացա-
հատիկի կոմբայն, 7 շարքացան, 32 բեռնատար ավտոմեքենա և 4 մամլիչ։
Մեքենայական պարկի հզորության սիստեմատիկ ավելացումը հնարա-
վորություն է տալիս աստիճանաբար, բայց աչքի ընկնող չափերով, կրճատե-
լու ձեռքի ծանր աշխատանքը։ Բավական է ասել, որ հանրային տնտեսու-
թյունում գյուղատնտեսական բոլոր տեսակի աշխատանքների 55 տոկոսը
մեքենայացված է։ 1966 թվականին, 1964 թվականի համեմատությամբ,
գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման ծավալն աճել է 15 տո-
կոսով։ Դա մեր լեռնային պայմաններում փոքր ցուցանիշ չէ, եթե նկատի
ունենանք, որ դրա համար դրամական մեծ միջոցներ են ծախսվում։ Ինչար-
կե, այդ ուղղությամբ ծախսված յուրաքանչյուր ռուբլու դիմաց տնտեսությու-
նը ավելին է ստանում, երբ արդյունավետ է օգտագործում տեխնիկան։ Այս-
պես. մամլիչների ճիշտ օգտագործման շնորհիվ հնձված խոտն ու կոմբայն-
ների կալսած հացահատիկի ծղոտը համարյա ամբողջապես մամլվում ու
հակկերի են վերածվում։ Դա ոչ միայն կանխում է կորուստը և փչացումը,
այլև 4—5 անգամ արագացնում է բեռնումը, բեռնաթափումը ու դիզումը և
մոտ 20 տոկոսով իջեցնում է կոշտ կերի ինքնարժեքը։

Նույնը մենք կարող ենք ասել տրակտորների, կոմբայնների և մյուս
մեքենաների օգտագործման մասին: Ցավոք բացառություն են կազմում գո-
մերում տեղադրված մեխանիզմներն ու սարքավորումները, առանձնապես,
կթի ագրեգատները, որոնք դեռևս լավ չեն օգտագործվում: Մենք, ինչպես
վերը նշել եմ, ունենք 760 կով, որոնց համար պահում ենք 65 կթվորից ավելի:
Մինչդեռ կթի ագրեգատների օգտագործման դեպքում բավական են 15 մարդ,
որ փոխարինեն 65 կթվորին: Սա կաթի ինքնարժեքի իջեցման մի այնպիսի
կարևոր ռեզերվ է, որի օգտագործումը պետք է գտնվի ինչպես կոլտնտեսու-
թյան վարչության, այնպես էլ «Հայգյուղտեխնիկայի» Մարտունու շրջանային
բաժանմունքի ուշադրության կենտրոնում:

Կոլտնտեսության հանրային արտադրության ինտենսիվացման ու այդ
հիման վրա ձեռք բերված հաջողությունների մասին կարելի է շատ փաստեր
բերել: Բայց այդ հաջողությունները վերջնական սահման չեն: Արտադրու-
թյան առավել հաջող կազմակերպման, հետագա ինտենսիվացման և կոլտըն-
տեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման միջոցով հնա-
րավոր է ավելի մեծ հաջողությունների հասնել:

Այդ առումով ցանկանում ենք խոսել մի քանի հարցերի մասին, որոնք,
իմ կարծիքով, համապատասխան լուծում պետք է ստանան: Նշածս հար-
ցերը, իհարկե, նոր չեն և տարբեր առիթներով ու տարբեր ժամանակներում
արծարծվել են: Բայց, ցավոք, իրենց հետևողական ու լրիվ լուծումը չեն
ստացել: Այսպես.

Սովորաբար յուրաքանչյուր կոլտնտեսություն պետք է ունենա արտա-
դրության 2—3 հիմնական և մի քանի օժանդակ ճյուղեր: Այլ կերպ ասած,
ելնելով տեղական պայմաններից, այն պետք է մասնագիտացվի և զբաղվի
գյուղատնտեսական այնպիսի մթերքների արտադրությամբ, որոնք մեծ եկա-
մուտ են տալիս և ապահովում տնտեսության շահութաբերությունը: Արտաք-
նապես, դատելով մեր կոլտնտեսության ձեռք բերած հաջողություններից ու
փորձից, ոմանց կարող է թվալ, թե մենք տվյալ հարցը հիմնականում լու-
ծել ենք: Ցավոք այդպես չէ:

Մեր կոլտնտեսությունը զբաղվում է այգեգործությամբ, ծխախոտագոր-
ծությամբ, անասնապահությամբ, հացահատիկի և կարտոֆիլի արտադրու-
թյամբ: Դրանք կոլտնտեսային արտադրության հիմնական ու գլխավոր ճյու-
ղերն են: Ունենալով արտադրության 5 գլխավոր ճյուղ (օժանդակ ճյուղերի
մասին չեմ ասում) կոլտնտեսությունը, բնականաբար, հնարավորություն չի
ունենում խոր մասնագիտացում անցկացնելու և գլխավորապես զբաղվելու
այն մթերքների արտադրությամբ, որոնք իրեն ձեռնտու են բոլոր գծերով:
Այսպես. ներկայումս մեր կոլտնտեսությունն իր դրամական եկամուտների
մոտ 50 տոկոսն ստանում է ծխախոտագործությունից: Բայց, չնայած դրան,
մենք գտնում ենք, որ ծխախոտագործության փոխարեն մեզ մոտ պետք է
առավել զարգացում ստանա այգեգործությունը կամ կարտոֆիլի արտադրու-
թյունը և ահա թե ինչու:

1964—1966 թվականներին, երեք տարվա ընթացքում, կոլտնտեսության
յուրաքանչյուր հեկտար այգու մշակության հետ կապված աշխատանքային,
դրամական ու նյութական ծախսերը կազմել են 1400 ռուբլի, իսկ եկամուտը՝
7500 ռուբլի: Ծխախոտի գծով դա համապատասխանաբար կազմել է 10.000:
:12000 ռուբլի: Ինչպես տեսնում ենք, հողատարածության յուրաքանչյուր



հեկտարի հաշվով, այգեգործությունից կոլտնտեսությունը օգուտ է ստացել
6100 ռ., իսկ ծխախոտագործությունից՝ 2000 ռ.:

Այս երկու կուլտուրայի մշակության շահավետության հաշվարկը ճիշտ
չի լինի, եթե նկատի չունենանք հողի որակը: Ասեմ պարզ, ծխախոտը մշակ-
վում է ավելի լավ, ոռոգվող ու բերրի հողերում, քան հատապտուղը: Եթե դա
արտահայտենք արժեքային հարաբերությամբ, ապա այն կկազմի 5:4:
Այլ կերպ ասած, ծխախոտի մշակության համար օգտագործվող հողի արժեքը
մեկ միավորով (որը մեր մոտավոր հաշվարկի համաձայն կազմում է 350 ռ.)
բարձր է, քան այգիների տակ դրվածը: Պարզ բան է, եթե ծխախոտի զբա-
ղեցրած հողերում այգի տնկվի, ապա դրանցից ավելի շատ եկամուտ կըս-
տացվի:

Կա և հարցի մյուս կողմը: Մինչև օրս ծխախոտի մշակության ասպարե-
զում տեխնիկան համարյա մուտք չի գործել, բացառությամբ վարից ու
որոշ տեղերում էլ միջշարային տարածությունների առաջին փխրեցումից:
Այսպիսով, ծխախոտի մշակումը, ջերմոցների ցանքից, սածիլների աճեցու-
մից սկսած մինչև տերևաքաղը, չորացումը և հակավորումը, կատարվում է
ձեռքով, որը թանկ է նստում կոլտնտեսության վրա: Մինչդեռ այգեգործու-
թյունը (տանձ, խնձոր) ձեռքի շատ աշխատանք չի պահանջում և դրա հետ
միասին մեծ եկամուտ է տալիս: Էլ ինչո՞ւ տնտեսությունը չմասնագիտացնել
այդ ուղղությամբ և դաշտավարության գծով ունենալ երեք գլխավոր ճյուղ՝
հացահատիկային, կարտոֆիլային և այգեգործական:

Ծխախոտագործության փոխարեն այգեգործության զարգացման հարցը
դնելիս, ես ելնում եմ միայն մեր կոլտնտեսության պայմաններից, նրա
էկոնոմիկայի հեռանկարային զարգացումից: Իսկ մյուս կոլտնտեսությունների
համար, որոնց մոտ այգեգործությունը զարգացած չէ կամ էլ նրանց արտա-
դրության գլխավոր ճյուղերից մեկը չէ, ծխախոտագործությունը, իհարկե,
եղել է և կմնա որպես արտադրության գլխավոր ճյուղերից մեկը, որից նրանք
ստանում են իրենց դրամական եկամտի հիմնական մասը:

***

Բնակլիմայական պայմանները, ալպյան արոտավայրերի առկայությու-
նը մեր կոլտնտեսությանը հնարավորություն են տալիս առավել զարգացնելու
նաև հանրային անասնաբուծությունը և այն դարձնելու տնտեսության գլխա-
վոր ու եկամտաբեր ճյուղերից մեկը:

Այս բնագավառում մեր կոլտնտեսության հաջողությունները քիչ չեն,
որոնք երևում են ստորև բերված աղյուսակից:

Հանրային անասնաբուծության զարգացումը

| Թվականներ | Անասունների գլխաքանակի աճը (հատով) | | | Արտադրած մթերքները (ցենտներով) | | |
|---|---|---|---|---|---|---|
| | խոշոր եղջր. անասուններ | որից կովեր | ոչխարներ | կաթ | միս | բուրդ |
| 1964 | 2116 | 684 | 9726 | 7744 | 3161 | 132 |
| 1965 | 2154 | 721 | 9780 | 8340 | 2657 | 173 |
| 1966 | 2167 | 743 | 9950 | 8875 | 3350 | 173 |
| 1967 | 2200 | 760 | 10400 | 9200 | 3400 | 213 |

Նույնը մենք կարող ենք ասել տրակտորների, կոմբայնների և մյուս մեքենաների օգտագործման մասին: Ցավոք բացառություն են կազմում գոմերում տեղադրված մեխանիզմներն ու սարքավորումները, առանձնապես, կթի ագրեգատները, որոնք դեռևս լավ չեն օգտագործվում: Մենք, ինչպես վերը նշել եմ, ունենք 760 կով, որոնց համար պահում ենք 65 կթվորից ավելի: Մինչդեռ կթի ագրեգատների օգտագործման դեպքում բավական են 15 մարդ, որ փոխարինեն 65 կթվորին: Սա կաթի ինքնարժեքի իջեցման մի այնպիսի կարևոր ռեզերվ է, որի օգտագործումը պետք է գտնվի ինչպես կոլտնտեսության վարչության, այնպես էլ «Հայգյուղտեխնիկայի» Մարտունու շրջանային բաժանմունքի ուշադրության կենտրոնում:

Կոլտնտեսության հանրային արտադրության ինտենսիվացման ու այդ հիման վրա ձեռք բերված հաջողությունների մասին կարելի է շատ փաստեր բերել: Բայց այդ հաջողությունները վերջնական սահման չեն: Արտադրության առավել հաջող կազմակերպման, հետագա ինտենսիվացման և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման միջոցով հնարավոր է ավելի մեծ հաջողությունների հասնել:

Այդ առումով ցանկանում ենք խոսել մի քանի հարցերի մասին, որոնք, իմ կարծիքով, համապատասխան լուծում պետք է ստանան: Նշածս հարցերը, իհարկե, նոր չեն և տարբեր առիթներով ու տարբեր ժամանակներում արծարծվել են: Բայց, ցավոք, իրենց հետևողական ու լրիվ լուծումը չեն ստացել: Այսպես.

Սովորաբար յուրաքանչյուր կոլտնտեսություն պետք է ունենա արտադրության 2—3 հիմնական և մի քանի օժանդակ ճյուղեր: Այլ կերպ ասած, ելնելով տեղական պայմաններից, այն պետք է մասնագիտացվի և զբաղվի գյուղատնտեսական այնպիսի մթերքների արտադրությամբ, որոնք մեծ եկամուտ են տալիս և ապահովում տնտեսության շահութաբերությունը: Արտաքնապես, դատելով մեր կոլտնտեսության ձեռք բերած հաջողություններից ու փորձից, ոմանց կարող է թվալ, թե մենք տվյալ հարցը հիմնականում լուծել ենք: Ցավոք այդպես չէ:

Մեր կոլտնտեսությունը զբաղվում է այգեգործությամբ, ծխախոտագործությամբ, անասնապահությամբ, հացահատիկի և կարտոֆիլի արտադրությամբ: Դրանք կոլտնտեսային արտադրության հիմնական ու գլխավոր ճյուղերն են: Ունենալով արտադրության 5 գլխավոր ճյուղ (օժանդակ ճյուղերի մասին չեմ ասում) կոլտնտեսությունը, բնականաբար, հնարավորություն չի ունենում խոր մասնագիտացում անցկացնելու և գլխավորապես զբաղվելու այն մթերքների արտադրությամբ, որոնք իրեն ձեռնտու են բոլոր գծերով: Այսպես. ներկայումս մեր կոլտնտեսությունն իր դրամական եկամուտների մոտ 50 տոկոսն ստանում է ծխախոտագործությունից: Բայց, չնայած դրան, մենք գտնում ենք, որ ծխախոտագործության փոխարեն մեզ մոտ պետք է առավել զարգացում ստանա այգեգործությունը կամ կարտոֆիլի արտադրությունը և ահա թե ինչու:

1964—1966 թվականներին, երեք տարվա ընթացքում, կոլտնտեսության յուրաքանչյուր հեկտար այգու մշակության հետ կապված աշխատանքային, դրամական ու նյութական ծախսերը կազմել են 1400 ռուբլի, իսկ եկամուտը՝ 7500 ռուբլի: Ծխախոտի գծով դա համապատասխանաբար կազմել է 10.000: :12000 ռուբլի: Ինչպես տեսնում ենք, հողատարածության յուրաքանչյուր



հեկտարի հաշվով, այգեգործությունից կոլտնտեսությունը օգուտ է ստացել 6100 ռ., իսկ ծխախոտագործությունից՝ 2000 ռ.:

Այս երկու կուլտուրայի մշակության շահավետության հաշվարկը ճիշտ չի լինի, եթե նկատի չունենանք հողի որակը: Ասեմ պարզ, ծխախոտը մշակվում է ավելի լավ, ոռոգվող ու բերրի հողերում, քան հատապտուղը: Եթե դա արտահայտենք արժեքային հարաբերությամբ, ապա այն կկազմի 5 : 4: Այլ կերպ ասած, ծխախոտի մշակության համար օգտագործվող հողի արժեքը մեկ միավորով (որը մեր մոտավոր հաշվարկի համաձայն կազմում է 350 ռ.) բարձր է, քան այգիների տակ դրվածը: Պարզ բան է, եթե ծխախոտի զբաղեցրած հողերում այգի տնկվի, ապա դրանցից ավելի շատ եկամուտ կըստացվի:

Կա և հարցի մյուս կողմը: Մինչև օրս ծխախոտի մշակության ասպարեզում տեխնիկան համարյա մուտք չի գործել , բացառությամբ վարից ու որոշ տեղերում էլ միջշարային տարածությունների առաջին փխրեցումից: Այսպիսով, ծխախոտի մշակումը, ջերմոցների ցանքից, սածիլների աճեցումից սկսած մինչև տերևաքաղը, չորացումը և հակավորումը, կատարվում է ձեռքով, որը թանկ է նստում կոլտնտեսության վրա: Մինչդեռ այգեգործությունը (տանձ, խնձոր) ձեռքի շատ աշխատանք չի պահանջում և դրա հետ միասին մեծ եկամուտ է տալիս: Էլ ինչո՞ւ տնտեսությունը չմասնագիտացնել այդ ուղղությամբ և դաշտավարության գծով ունենալ երեք գլխավոր ճյուղ՝ հացահատիկային, կարտոֆիլային և այգեգործական:

Ծխախոտագործության փոխարեն այգեգործության զարգացման հարցը դնելիս, ես ելնում եմ միայն մեր կոլտնտեսության պայմաններից, նրա էկոնոմիկայի հեռանկարային զարգացումից: Իսկ մյուս կոլտնտեսությունների համար, որոնց մոտ այգեգործությունը զարգացած չէ կամ էլ նրանց արտադրության գլխավոր ճյուղերից մեկը չէ, ծխախոտագործությունը, իհարկե, եղել է և կմնա որպես արտադրության գլխավոր ճյուղերից մեկը, որից նրանք ստանում են իրենց դրամական եկամտի հիմնական մասը:

***

Բնակլիմայական պայմանները, ալպյան արոտավայրերի առկայությունը մեր կոլտնտեսությանը հնարավորություն են տալիս առավել զարգացնելու նաև հանրային անասնաբուծությունը և այն դարձնելու տնտեսության գլխավոր ու եկամտաբեր ճյուղերից մեկը:

Այս բնագավառում մեր կոլտնտեսության հաջողությունները քիչ չեն, որոնք երևում են ստորև բերված աղյուսակից:

Հանրային անասնաբուծության զարգացումը

| Թվականներ | Անասունների գլխաքանակի աճը (հատով) | | | Արտադրած մթերքները (ցենտներով) | | |
|---|---|---|---|---|---|---|
| | խոշոր եղջր. անասուններ | որից կովեր | ոչխարներ | կաթ | միս | բուրդ |
| 1964 | 2116 | 684 | 9726 | 7744 | 3161 | 132 |
| 1965 | 2154 | 721 | 9780 | 8340 | 2657 | 173 |
| 1966 | 2167 | 743 | 9950 | 8875 | 3350 | 173 |
| 1967 | 2200 | 760 | 10400 | 9200 | 3400 | 213 |

Այս հաջողությունները, իհարկե, դեռևս վերջնական սահման չեն: Ավելին, այդ բնագավառում վիճակն այնպիսին է, որ մեզանից հրամայաբար պահանջում է արագ թափով ինտենսիվացնել տնտեսության այդ հիմնական ու գլխավոր ճյուղերից մեկը, վճռապես հրաժարվել ֆերմաներում կատարվող աշխատանքի հնացած բոլոր ձևերից ու ոչ ազնվացեղ անասուններից: Պարզ ասեմ: Մեր ունեցած 760 կովերից յուրաքանչյուրի (ֆուրաժային) տարեկան միջին կաթնատվությունը 1964 թվականին կազմել է 1100, 65-ին՝ 1145, 66-ին, 1150, 67-ին՝ 1180 կիլոգրամ: Իսկ ինչո՞ւ, ասենք, 760 կովի փոխարեն չպահենք տոհմային 500 կով, որոնցից յուրաքանչյուրը կտա 2200—2400 կոլոգրամ կաթ, եթե ոչ ավելին:

Սրա տնտեսական օգուտը պատկերացնելու համար նշենք հետևյալը, նախ ազատվում ենք 260 կովի համար գոմեր ունենալու, նրանց խնամողներ պահելու, մոտ 740 տոննա կոշտ կեր կուտակելու և այլ հոգսերից: Դրանց փոխարեն, իհարկե, կառաջանան նոր հոգսեր՝ կովերի կերակրման ու խնամքի առավել բարելավում, մսուրային շրջանի երկարում ու աշխատատար պրոցեսների մեքենայացում, հյութալի կերի արտադրության ավելացումը և այլն: Բայց այդ ամենով հանդերձ տոհմական ու բարձրակիթ կովերից ավելի շատ կաթ ու միս կարտադրվի և ավելի շատ եկամուտ կստացվի: Այլ կերպ ասած, անասնաբուծությունը, հատկապես կաթի արտադրությունը, մեզ մոտ, վերջապես, կդառնա շահութաբեր և դա տնտեսապես կշահագրգռի անասնապահ կոլտնտեսականներին:

Լավ, կհարցնի ընթերցողը, հապա ինչո՞ւ կոլտնտեսությունը ցածրակիթ 760 կովի փոխարեն 500 բարձրակիթ կով չի պահում: Նախ, մենք չենք կարող կովերի գլխաքանակը մեր հայեցողությամբ պակասեցնել, որովհետև գլխաքանակի պահպանումն ու աճեցումը վերևից է պլանավորվում: Գործի շահից ելնելով մենք գտնում ենք, որ վերևից պետք է պլանավորվի միայն կաթի ու մսի արտադրությունը, իսկ թե քանի գլուխ կով պետք է պահել, այդ թող որոշեն իրենք, կոլտնտեսությունները: Պարզ բան է, որ այսպիսի պլանավորման դեպքում յուրաքանչյուր կոլտնտեսություն կպահի այնքան ազնվացեղ կովեր, որոնց միջոցով հնարավոր կլինի ապահովել հոտի վերարտադրության, ինչպես նաև կաթի ու մսի արտադրության և վաճառքի պլանների կատարումը:

Այլ կերպ ասած, անասնաբուծությունը կինտենսիվացվի: Դա, ինչ խոսք մեկ տարում լուծվող հարց չէ, բայց որ առաջիկա մի քանի տարում պետք է հասնել դրան, կասկածից վեր է: Մնում է, որ պլանավորող և գյուղատնտեսական բոլոր օրգանները միասնաբար զբաղվեն այդ գործով և կոլտնտեսությանը իրական օգնություն ցույց տան անասնաբուծության ինտենսիվացումը հաջողությամբ պսակելու:

Հանրային անասնապահության ինտենսիվացումը կլուծի մեկ հարց ևս: Խոսքը կոլտնտեսականների օժանդակ տնտեսության մեջ եղած անասունների գլխաքանակի մասին է: Օգտվելով օժանդակ տնտեսությունների զարգացման սահմանափակումների վերացման՝ վերջին տարիներս ընձեռած հնարավորություններից, ինչպես մյուս, այնպես էլ մեր գյուղի կոլտնտեսականները զգալի չափով ավելացրին իրենց անձնական օգտագործման անասունների գլխաքանակը: Նրանք այժմ ունեն 8000 մանր և 4000 խոշոր եղջերավոր անասուն, այսինքն այնքան, որքան ունի կոլտնտեսությունը:

Այսպիսով ստեղծվել է այնպիսի իրավիճակ, որ կոլտնտեսության դաշ-



տերում եղած կերի կեսը օգտագործվում է հանրային, իսկ մյուս կեսը՝ կոլտնտեսականների օժանդակ տնտեսություններում եղած անասունների համար: Չնայած դրան, կոլտնտեսությունը ռենտա է վճարում իրեն ամրացրած բոլոր հողատարածությունների համար: Իսկ կոլտնտեսականները, ինչպես հայտնի է, ոչ մի ռենտա չեն վճարում, չնայած նրան, որ հանրային տնտեսությանը հավասար իրենց անասունների համար օգտագործում են կոլտնտեսության խոտհարքներից ու արտերից հավաքած կոշտ կերը, ինչպես նաև արոտավայրերը:

Նման պարագայում, ինչպես տեսնում ենք, անձնական օժանդակ տնտեսությունը հանրայինի նկատմամբ գտնվում է որոշ արտոնյալ պայմաններում, որի պատճառով էլ կոլտնտեսականների մի մասը, աշխօրերի պարտադիր մինիմումը չկատարելով հանդերձ, պահում է շատ անասուններ: Դա արդեն նկատելի կերպով խանգարում է հանրային տնտեսությանը: Ի միջիայլոց այդ մասին միայն ես չէ, որ ասում եմ: Շատ կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներ այդ հարցը արծարծում են մամուլում և այլ տեղերում, բայց հարցի լուծումը չեն ստանում: Ասենք դա այնքան էլ հեշտ չէ: Վարչական ճանապարհով անիմաստ է օժանդակ տնտեսությունների զարգացումը սահմանափակել: Նախկին դառը փորձից գիտենք, թե դա ինչպիսի մեծ վնաս է հասցնում ժողովրդական տնտեսությանը: Այստեղ գործը գլուխ կգա միայն տնտեսական ճիշտ հարաբերությունների իրականացման միջոցով, ըստ որի կոլտնտեսականների եկամուտները (հանրային և օժանդակ տնտեսություններից) ոչ թե պետք է պակասեն, այլ՝ ընդհակառակը, ավելանան: Դա կարող է տեղի ունենալ միայն ու միայն հանրային տնտեսության զարգացման և նրա շահութաբերության ավելացման միջոցով: Հենց որ հանրային տնտեսությունից ստացած եկամտով կոլտնտեսականները կարողանան բավարարել իրենց մինիմալ պահանջները, իրենք իրենց կհրաժարվեն շատ անասուն պահելուց, որը խլում է նրանց ազատ ժամանակի մեծ մասը և հաճախ ավելի շատ ծախսեր պահանջում, քան ստացված եկամուտն է:

Սակայն, այնուամենայնիվ, օժանդակ տնտեսությունը (տարբեր շրջանների ու կոլտնտեսությունների պայմանները հաշվի առնելով) պետք է իր որոշակի չափն ունենա: Օրինակ, մեր կոլտնտեսությունում, աշխօրին 3 ռ. 50 կոպեկ տալու դեպքում (ներկայիս 3 ռ. 10 կ. փոխարեն) նպատակահարմար է յուրաքանչյուր կոլտնտեսականի ընտանիքին թույլ տալ պահելու 2—3 խոշոր եղջերավոր անասուն (որից մեկը կով, ներկայիս 2 կովի փոխարեն) և 5—7 ոչխար: Այս դեպքում կոլտնտեսականի յուրաքանչյուր ընտանիք (3 աշխատողով 700 աշխօր վաստակելիս) լրացուցիչ կստանա՝ 700 × 40 կ. = 28000 կ. սա էլ = է 280 ռ.: Վերջինիս միջոցով կոլտնտեսականը պետական խանութից կարող է գնել 72 կիլոգրամ հալած յուղ, մոտ մեկուկես անգամ ավելի շատ, քան կստանա իր պահած տեղական մեկ կովից: Կարծում եմ, որ այս դեպքում կոլտնտեսականը 2 կով պահելու կարիք չի ունենա:

Բայց, չնայած դրան, կան առանձին կոլտնտեսականներ, որոնք չարաշահում են իրենց տրված արտոնությունները և, աշխօրերի պարտադիր մինիմումը չկատարելով հանդերձ, ուռճացնում են իրենց օժանդակ տնտեսությունը և զբաղվում հասարակական ոչ օգտակար աշխատանքով: Կարծում եմ, որ կոլտնտեսությունների վարչություններին պետք է իրավունք վերապահել նման կոլտնտեսականների տնամերձ հողամասը կրճատելու և արգելելու անձնական օգտագործման անասունները կոլտնտեսության արոտավայրերում պահելու:

*Գուցե սա խիստ թվա: Երբեք: Եթե որևէ մեկը օգտվում է կոլտնտեսականի արտոնությունից, ապա պետք է ենթարկվի կոլտնտեսության ներքին կարգ ու կանոնին, բարեխղճորեն կատարի իր պարտականությունը և ամեն կերպ ամրապնդի ու զարգացնի հանրային տնտեսությունը:*

*Մեր կոլտնտեսության հետագա զարգացման առնչությամբ ես արծարծեցի մի քանի հարցեր (տնտեսության մասնագիտացում, արտադրական հիմնական ֆոնդերի կառուցվածքի բարելավում, անասնաբուծության ինտենսիվացում և հանրային տնտեսության հաշվին կոլտնտեսականների եկամուտների ավելացում), որոնց հաջող լուծման համար կան բոլոր պայմաններն ու հնարավորությունները: Մնում է առավել բարձրացնել արտադրողների, բոլոր կոլտնտեսականների ու կոլտնտեսուհիների նյութական շահագրգռվածությունը և արտադրական ակտիվությունը:*

*Ոգևորված ձեռք բերված հաջողություններով, մեր կոլտնտեսության աշխատողները, երկրի արդյունաբերական առաջավոր ձեռնարկությունների օրինակով, մրցության են դուրս եկել նոր հնգամյա պլանով իրենց առջև դրված բոլոր առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու և հարազատ հայրենիքին առավել շատ ու էժան գյուղատնտեսական մթերքներ տալու համար:*

*Ինչպես միշտ, այնպես էլ այս անգամ, բանիմաց ու աշխատասեր վարդենիկցիների խոսքը գործից չի տարբերվի: Նրանք գնացել ու գնում են վերելքի ուղիով:*

# ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԸ ԵՎ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ

ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Ա.

Դոցենտ

*Արդի էտապում մեր կուսակցությունը մեծ ուշադրություն է նվիրում սովետների հետագա ամրապնդմանն ու նրանց աշխատանքի բարելավմանը: Սովետների զարգացման պատմությունն անխզելիորեն կապված է կոմունիստական կուսակցության պատմության հետ: Սովետները,— ասել է Վ. Ի. Լենինը,— ստեղծվել են հենց իրենց, աշխատավորների կողմից, նրանց հեղափոխական էներգիայի և ստեղծագործության շնորհիվ, և միայն դրանում է այն բանի երաշխիքը, որ նրանք ամբողջապես աշխատում են մասսաների պահանջներն իրականացնելու համար:*

*Իր կեսդարյա պատմության ընթացքում սովետները բռնել են համակողմանի քննություն: Ե՛վ սոցիալիստական հասարակական ու պետական կարգի հաղթանակը, և՛ նոր էկոնոմիկայի ստեղծումը, և՛ կուլտուրայի ծաղկումը, և՛ ժողովրդի բարեկեցության սիստեմատիկ աճը, շատ բանով սովետների գործունեության արդյունք են:*

*Սովետների միջոցով և սովետների շնորհիվ կառավարման դպրոց են անցնում միլիոնավոր քաղաքացիներ: Հոկտեմբերի 50-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում նշված է, որ հասարակական կոմունիստական ինքնավարության կարելի է անցնել սովետների դերի բարձրացման միջոցով: Սովետներին մեծ դեր է պատկանում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, կոմունիստական հասարակական հարաբերությունների զարգացման, նոր մարդու ձևավորման գործում:*

*Սակայն մինչև ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումը (1964 թ.) այդ ուղղությամբ կուտակված արժեքավոր փորձի հետ միասին շատ տեղերում կաշկանդվում էին նախաձեռնությունն ու ակտիվությունը, գործի նկատմամբ գիտական մոտեցումը փոխարինվում էր սուբյեկտիվիզմով, ցուցաբերվող կամայական որոշումներով և անվերջ վերակառուցումներով, որոնք հանգեցնում էին բացասական երևույթների: Մասնավորապես թուլացել էր շրջանային օղակը. մինչև անգամ լիկվիդացվել էին շրջգործկոմների պլանային հանձնաժողովները, նսեմացվել տեղական սովետների դերը: Դրանք փաստորեն զրկվել էին արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացմանը միջամտելուց. տեղական արդյունաբերության գրեթե բոլոր ձեռնարկությունները տեղական սովետների տնօրինությունից վերցվել և հանձնվել էին*

ժողտնտխորհին, շինարարության մինիստրությանը և այլ գերատեսչություններին։

Այժմ, երբ դրանց վերջ է տրված, ավելի է բարձրանում սովետների դերը։ Այդ մասին կուսակցության ծրագրում պարզ ու որոշակի ասված է. «Կընդլայնվեն աշխատավորների դեպուտատների տեղական սովետների (տեղական ինքնավարության) իրավունքները։ Նրանք վերջնականապես կլուծեն տեղական նշանակություն ունեցող բոլոր հարցերը։

Հատուկ ուշադրության է արժանի շրջանային օղակի ամրապնդումը։ Կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունը համաժողովրդական սեփականությանը մոտենալու համեմատ աստիճանաբար կկազմավորվի շրջանային նշանակություն ունեցող բոլոր ձեռնարկությունների, կազմակերպությունների և հիմնարկների կառավարման միասնական դեմոկրատական օրգան» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, էջ 526)։

Ծրագրի այդ դրույթը վերաբերում է թե՛ նյութական արտադրության և թե՛ սպասարկման ոլորտին։ Վ. Ի. Լենինը քննադատելով սովետների լիազորությունները սոսկ քաղաքական ոլորտով սահմանափակելու վերաբերյալ դատողությունները, նշում էր, որ սովետները պետք է լինեն պետական կառավարման լիիշխան օրգաններ, իսկ «...իշխանության ամբողջ լիակատարությունը պահանջում է բոլոր հողերի, բոլոր բանկերի, բոլոր ֆաբրիկաների վրա իշխելու իրավունք...» (Երկեր, հ. 26, էջ 126)։

Տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր գործերում տեղական սովետներին լիիշխան իրավունք տալու համար ՍՄԿԿ XXIII համագումարն իր բանաձևում ընդգծեց, որ «Առանձնահատուկ նշանակություն է ստանում աշխատավորների դեպուտատների սովետների դերի բարձրացումը, որպեսզի նրանք լրիվ չափով օգտագործեն իրենց լիազորությունները տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրների իրականացման և կատարման ստուգման գործում, ավելի մեծ նախաձեռնություն ցուցաբերեն պլանային, ֆինանսական, հողային հարցերը լուծելու, տեղական արդյունաբերության ձեռնարկությունները, բնակչության կենցաղային ու սոցիալ-կուլտուրական սպասարկումը ղեկավարելու գործում»։ Համագումարը սովետներին կոչ արեց՝ «...բարձրացնելու գործադիր օրգանների, դեպուտատների և պաշտոնատար անձանց պատասխանատվությունը ժողովրդի հանդեպ, ակտիվացնելու սեսիաների աշխատանքը, նրանց քննարկմանը ներկայացնելու ավելի բազմազան հարցեր» (ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը, էջ 311—312)։

Որպեսզի սովետները կարողանան արդյունավետ ապահովել, մասնավորապես, տեղական արդյունաբերության հետագա զարգացումն ու կենցաղի բարելավումը, մեր կարծիքով, պետք է լուծել կենսական որոշ հարցեր։ Անհրաժեշտ է արտադրության նկատմամբ տեղական սովետների ղեկավարությունը դարձնել կոնկրետ և ներգործուն, որպեսզի դրանք ավելի լրիվ և նպատակասլաց օգտագործեն իրենց տրված իրավունքներն ու լիազորությունները։

Այդ առումով բնորոշ է հետևյալ փաստը։ Անցյալում Լենինականի քաղսովետի գործկոմի տնօրինության տակ էին գտնվում հացի գործարանները, ավազի ու քարի հանքերը, կահույքի երկու ֆաբրիկան, սննդի, արդշին, մետաղյա իրերի արտադրության կոմբինատները և այլ ձեռնարկություններ, որոնց շահույթների հաշվին իրականացվում էին բարեկարգման ու շինարարական աշխատանքները։



Այս ձեռնարկությունները հետագայում հանձնվեցին ժողտնտխորհին,
իսկ այնուհետև՝ համապատասխան մինիստրություններին, որը զգալիորեն
բարդացրեց դրանց գործունեությունը։ Այսպես, որոշ ժամանակ հացի մատա-
կարարման գործում դժվարություն առաջացավ. պահեստամասերի բացակա-
յության պատճառով երկու վառարան չէին աշխատում։ Ժողտնտխորհի հա-
մապատասխան վարչությունները չէին մտահոգվել, որպեսզի դրանք ժամա-
նակին ապահովվեին անհրաժեշտ պահեստամասերով։ Եվ երբ քաղսովետի
գործկոմն այդ հարցով դիմել էր պետպլանին, վերջինս պատասխանել էր,
որ ժողտնտխորհի վարչությունն այդպիսի մասեր չի խնդրել։ Իսկ եթե հացի
գործարաններն ենթարկվեին գործկոմին, ապա պարզ է, որ ժամանակին
պահանջարկներ կներկայացվեին պետպլանին և հացի մատակարարման
գործում դժվարություններ չէին լինի։

Կարելի է բերել նաև այլ օրինակներ. երբ քաղաքային տնտեսության
կարիքների համար պահանջվում է պատրաստել մետաղյա որևէ կոնս-
տրուկցիա կամ կատարել ձուլման աշխատանքներ, ապա հարկադրված դի-
մում են մի քանի գործարանների, մինչև մեկը համաձայնում է պատվերը
կատարել։

Հանրապետական մի շարք նոր մինիստրություններ ու գերատեսչություն-
ներ կազմակերպելիս Երևանի քաղաքային սովետից նույնպես նրանց անցան
տեղական տնտեսության որոշ ճյուղեր։ Օրինակ, ծառայությունների ոլորտը
տեղական տնտեսության կենցաղային սպասարկման մինիստրությանը, էլեկ-
հանձնվեց բնակչության կենցաղային սպասարկման մինիստրությանը, էլեկ-
տրացանցը՝ էներգետիկայի ու էլեկտրիֆիկացման գլխավոր վարչությանը,
ավտոպարկը՝ ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրությանը, գազի տնտե-
սությունը՝ գազիֆիկացման գլխավոր վարչությանը, շինանյութերի ձեռնար-
կությունները՝ շինարարության մինիստրությանը։ Այդպիսով, քաղաքային
տնտեսությունը, որպես միասնական կոմպլեքս, մասնատվեց, որը, բնակա-
նաբար, սահմանափակեց քաղաքային ու շրջանային սովետների հնարավո-
րությունների սպասարկման ձեռնարկությունների ղեկավարման գործում։
Գործկոմները փաստորեն խնդրողների դերում են, որը վնասում է գործին,
վատթարացնում սպասարկումը։

Վերցնենք, օրինակ, հացի պրոբլեմը։ Երբ գործկոմը դեռ լիիշխան տեր
էր, որոշել էր նոր ձևով կազմակերպել փոխադրումները և ապահովել հացի
անխափան մատակարարումը։ Պատրաստվել էին հատուկ հացադիրներ, վե-
րասարքավորվել ավտոմեքենաները, գործարաններում ստեղծվել էին բեռն-
ման հրապարակներ, իսկ խանութներում՝ հարմարանքներ բեռնաթափման
համար։ Ամբողջ աշխատանքը, համեմատաբար, հեշտ էր կատարվել, որով-
հետև և՛ հացի գործարանները, և՛ տրանսպորտը, և՛ առևտրի ցանցը ենթարկ-
վում էին մի տիրոջ։ Իսկ այժմ նմանօրինակ հարցը լուծելու համար գործկոմը
հարկադրված դիմում է սննդարդյունաբերության մինիստրությանը, որովհետև
նրա տնօրինության տակ են հացի գործարանները, նաև՝ ավտոտրանսպորտի
մինիստրությանը, որովհետև նա տնօրինում է ավտոմեքենաներին։ Եվ, ահա
օպերատիվ լուծման փոխարեն անվերջ գրագրություն, համաձայնեցումներ,
հորդորումներ, վեճեր, քաշքշուկ։

Բավական է ասել, որ նախկինում, երբ տրանսպորտը գործկոմինն էր,
մեկ տոննա հացի փոխադրման վրա ծախսվում էր 2 ռ. 30 կ., իսկ այժմ, երբ
մեքենաները պատկանում են ավտոտրանսպորտի մինիստրությանը, այդ
ծախսերը հասել են մինչև երեք ռուբլու։

Ավելի ապշեցուցիչ օրինակ կարելի է բերել տեղական արդյունաբերության գծով։ Այսպես՝ ժամանակին Երևանի քաղսովետի գործկոմի մոտ քառասուն ձեռնարկություն տարեկան տալիս էին 37 միլիոն ռուբլու արտադրանք, որը գերազանցապես բավարարում էր բնակչության պահանջներն ու քաղաքային տնտեսության կարիքները։ Սեփական միջոցների հաշվին տեղական արդյունաբերությունն անընդհատ ընդլայնվում էր։ Այսպես, 1957—1960 թվականներին կառուցվել էին լավաշի հինգ փուռ, հացի գործարաններում՝ երկու նոր արտադրամաս, ստեղծվել կենցաղ-սպասարկման կոմբինատ, լայն սպառման առարկաների ու կոշիկի նորոգման ֆաբրիկաներ, երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարան, ընդլայնվել էր մեխանիկական գործարանը և կազմակերպվել խոշոր ավտոպարկ։ Տեղական արդյունաբերության ձեռնարկությունները կառուցում էին բնակելի տներ. ամեն տարի իրենց շահույթներից մինչև երեք միլիոն ռուբլի մասհանումներ էին անում դպրոցների, մանկական հիմնարկների շինարարության, բարեկարգման համար։

Արդեն մի քանի տարի է, ինչ Երևանի բնակչությունը խմելու ջրի սուր կարիք է զգում։ Մինչդեռ քաղաքային ջրմուղից ջրի գրեթե կեսը, իրենց տեխնիկական կարիքների համար, վերցնում են ձեռնարկությունները։ Ինչո՞վ բացատրել այս աննորմալ երևույթը։ Նրանով, որ քաղաքի սահմանագծում արդյունաբերական օբյեկտների տեղաբաշխումով զբաղվում են մի քանի գերատեսչություններ, որոնցից յուրաքանչյուրը պաշտպանում է իր շահերն ու իրավունքները, քիչ հոգս տանելով ձեռնարկությունների ջրամատակարարման մասին։ Նույնն է վիճակը նաև բնակարանային շինարարության բնագավառում։ Քաղաքային սովետի գործկոմը չի կատարում քաղաքի կոմպլեքսային կառուցումն ու բարեկարգումը, որովհետև կապիտալ ներդրումները փոշիանում են տարբեր գերատեսչությունների միջև։

Հայտնի է, որ հանրապետական և միութենական պլանային օրգանները չեն զբաղվում բարեկարգման աշխատանքների պլանավորմամբ, հետևաբար, չեն կարող լուծել քաղաքային մեծ կոմպլեքսների զարգացման հրատապ հարցերը։ Բայց, ընդարձակելով քաղաքը, անհրաժեշտ է հաշվի առնել դրա արտադրական, կոմունալ, կուլտուր-կենցաղային և էսթետիկական առանձնահատկությունները։ Ո՞վ պետք է միասնական, կոմպակտ ամբողջի մեջ միավորի այդ խնդիրների ողջ կոմպլեքսը, որպեսզի անպատասխանատվության և շեղումների տեղիք չտրվեն։ Պատասխանը մեկ է—քաղաքային սովետների գործկոմները, դրանց պլանային օրգանները։ Այլ կերպ ինչպես անել, եթե կոմպլեքսի բաղկացուցիչ մասերը մեկուսացվել են և հանձնվել տարբեր տերերի, որոնք կապված չեն մեկը մյուսի հետ և իրենց խնդիրները լուծում են ինքնուրույն։ Այստեղից հետևում է, որ հարկավոր է վերացնել քաղաքային տնտեսության անջատվածությունը։

Հանրապետական նշանակություն ունեցող մնացած քաղաքների ու գյուղական շրջանների տնտեսությունը ևս այդ վիճակում է, որից դուրս գալու համար անհրաժեշտ է աշխատավորների դեպուտատների սովետների գործադիր կոմիտեներում ստեղծել տեղական տնտեսության կառավարման համապատասխան օրգաններ և դրանց հանձնել այն ձեռնարկությունները, որոնք արտադրում են ժողովրդական սպառման առարկաներ, անմիջապես սպասարկում տեղական տնտեսությանն ու բնակչությանը և հիմնականում աշխատում տեղական հումքի ու արտադրության մնացորդների բազայի վրա։ Միաժամանակ հարկավոր է բոլոր մինիստրությունների ու գերատեսչություն-



ների կանոնադրություններում որոշել ու սահմանել իշխանության տեղական օրգանների հետ դրանց կապի ձևերը։ Դժբախտաբար, սոցիալիստական պետական արտադրական ձեռնարկության կանոնադրության մեջ անգամ ոչինչ չի ասված տեղական սովետների հետ նրա փոխադարձ գործողության մասին։ Մեր կարծիքով, անհրաժեշտ է տեղական տնտեսության ողջ օպերատիվ ղեկավարությունը թողնել հենց իրենց՝ տեղական սովետներին, իսկ ճյուղային մինիստրություններին ու գերատեսչություններին՝ տեխնիկական առաջադիմության և տեղական տնտեսության համապատասխան ճյուղերի գիտատեխնիկական ղեկավարման սկզբունքային պրոբլեմները։

Տեղական տնտեսության բուռն աճը, ՍՄԿԿ XXIII համագումարի կողմից սովետների առջև դրված մեծ խնդիրները պահանջում են դրանց կազմակերպական-տնտեսական դերի բարձրացում։ Որպեսզի սովետները դառնան տեղական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման համար պատասխանատու լիիշխան տերեր, պետք է օժտված լինեն ո՛չ միայն իրավական իրավունքներով, այլև ունենան այն կառավարելու համապատասխան ստորաբաժանումներ ու նյութական հնարավորություններ, գործնականորեն մասնակցեն տնտեսական կյանքին, հետևեն ֆինանսական, աշխատանքային ռեսուրսների ու բնական հարստությունների ճիշտ և արդյունավետ օգտագործմանը։

Աշխատավորների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային սովետների կանոնադրությունը պարտավորեցնում է՝ ղեկավարել տեղական պետական ու կոոպերատիվ արդյունաբերության զարգացումը, վերահսկել ձեռնարկությունների արտադրական պլանների կատարմանը, հետևել հումքի, վառելանյութի ու էլեկտրաէներգիայի արդյունավետ օգտագործմանը, միջոցներ ձեռնարկել աշխատանքի արտադրողականության բարձրացման, որակի բարելավման և ինքնարժեքի իջեցման համար։ Նրանք արտադրական պլանների կատարման գործում պետք է բազմակողմանի աջակցեն իրենց տերիտորիայում գտնվող ձեռնարկություններին և հասարակական կազմակերպությունների հետ մեկտեղ լայն աշխատանք տանեն սոցիալիստական մրցության ծավալման, նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման համար։ Տեղական սովետների ուշադրության կենտրոնում պետք է լինի լայն սպառման առարկաների արտադրության կազմակերպման (տեղերում գոյություն ունեցող մատչելի հումքի և արտադրական մնացորդների բազայի վրա) ու կադրերի պատրաստման և ուսուցման հարցերը։ Այդ պայմաններում նրանք ինքնուրույն են լուծում տեղական արդյունաբերության գործունեության բոլոր հիմնական, այդ թվում և արտադրության պլանավորման, կապիտալ շինարարության, նյութատեխնիկական մատակարարման, տեղական կարիքների համար գերպլանային արտադրանքի օգտագործման հարցերը։ Սովետները մշակում են տնտեսական և կուլտուրական շինարարության տեղական պլաններ, կազմակերպում ու մոբիլիզացնում մասսաներին՝ նախագծած միջոցառումների կենսագործումն ապահովելու համար։

Ուրեմն, հարկ կա՞ ապացուցելու, որ այժմ, երբ այնքան մեծացել է տեղական սովետների դերը և տնտեսության ղեկավարման բնագավառում ընդլայնվել նրանց ֆունկցիաները, տեղական նշանակություն ունեցող ձեռնարկությունները պետք է լրիվին գտնվեն նրանց տնօրինության տակ։ Կարծում ենք ոչ, որովհետև դա տրամաբանորեն բխում է նաև զարգացման նոր շրջանը թևակոխած մեր երկրի ժամանակակից խնդիրներից, որոնք արտացոլվել են մեր էկոնոմիկայի զարգացման ընթացիկ հնգամյա պլանի դիրեկտիվներում։

Տնտեսական գործերում սովետական իշխանության տեղական օրգանների մշտական ներգրավմամբ են պայմանավորված երկրի բոլոր ռեսուրսների ճիշտ օգտագործումը, աշխատավորության կուլտուր-կենցաղային սպասարկման հարցերի ժամանակին լուծումը։

Դրան, անշուշտ, նպաստելու է «Աշխատավորների դեպուտատների սովետների աշխատողների պատրաստումն ու վերապատրաստումը բարելավելու միջոցառումների վերաբերյալ» ՍՄԿԿ Կենտկոմի կողմից վերջերս ընդունած որոշման անշեղ կատարումը։ Որոշման մեջ հատկապես ուշադրություն է դարձվում կոմունիզմի կառուցման գործում սոցիալիստական պետության դերի, հասարակության կյանքում աշխատավորների դեպուտատների սովետների նշանակության մասին մարքսիզմ-լենինիզմի դրույթների խոր յուրացման վրա։ Մասնավորապես, խնդիր է դրվում ավելի մեծ ուշադրություն նվիրել էկոնոմիկայի գիտական կառավարման պրոբլեմներին, սովետական իշխանության օրգանների աշխատանքի ոճի ու մեթոդների կատարելագործման հարցերին, կազմակերպելով սովետների աշխատանքի փորձի համակողմանի ուսումնասիրություն՝ նրանց կողմից տնտեսական ու կուլտուրական շինարարության հասունացած խնդիրները լուծելու ուղղությամբ։ Այդ որոշմամբ պահանջվում է մամուլում խոր լուսաբանել սովետական շինարարության թեորիայի ու պրակտիկայի հարցերը, տնտեսության ու կուլտուրայի բնագավառում սովետների աշխատանքի դրական փորձը։

Տեղական սովետների առջև նոր ու պատասխանատու խնդիրներ է դնում «Տեղական արդյունաբերության և գեղարվեստական զբաղմունքների հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՍՀՄ Մինիստրների սովետի վերջին որոշումը, որն ընդունվեց մեծ Հոկտեմբերի հոբելյանական տարվա նախօրյակին։ Այնտեղ ընդգծված է նրանց հատուկ դերը հումքի, նյութերի, արտադրական մնացորդների տեղական ռեսուրսների օգտագործման հաշվին բազմապիսի ապրանքներով բնակչության պահանջմունքներն առավել չափով բավարարելու գործում։

Տեղական արդյունաբերության զարգացման գործում իշխանության տեղական օրգանների շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով, 1967 թվականից սկսած, տեղական հումքից և արտադրական մնացորդներից պատրաստվող ամբողջ արտադրանքը մնում է նրանց տրամադրության տակ։ Բացի այդ, շահույթների մասհանումների հաշվին ստեղծվել են տեղական արդյունաբերության զարգացման հատուկ ֆոնդեր, որոնք կապիտալ ներդրումների պլանից դուրս օգտագործվում են նրա ձեռնարկությունների ընդլայնման, մոդեռնացման ու նորերի կառուցման, ինչպես նաև բնակարանային ու կուլտուր-կենցաղային շինարարության համար։ Ֆինանսական գործի հետ մեկտեղ կբարելավվի նաև ձեռնարկությունների մատակարարման դրվածքը, տեղական արդյունաբերությանը կտրամադրվեն ավելի շատ հանգույցներ, դետալներ, կիսաֆաբրիկատներ և այլ նյութեր։

Տեղական արդյունաբերությունը պետք է օգտագործի ժամանակակից տեխնիկայի բոլոր նվաճումները։ Ուստի, հետազոտական և նախագծային—կոնստրուկտորական բազայի ամրապնդումն այստեղ ունի սկզբունքային նշանակություն։ Ահա թե ինչու տեղական արդյունաբերության գիտահետազոտական, կոնստրուկտորական-տեխնոլոգիական և նախագծային ինստիտուտների ստեղծումը արդեն կենսական անհրաժեշտություն է։ Գյուտարարների ու ռացիոնալիզատորների ստեղծագործական ակտիվությունը խթանելու



նպատակով թույլատրված է ստեղծել տեղական արդյունաբերության ձեռնարկությունների պարգևատրման կենտրոնացված ֆոնդեր՝ արտադրանքի նոր տեսակների յուրացման ու մասսայական թողարկման համար։

Մինչև հիմա տեղական արդյունաբերության մեջ կադրերի հարցը բավականին բարդ էր։ Այժմ ձեռնարկություններն իրավունք ունեն ոչ լրիվ հերթափոխության ընդունելու տնային տնտեսուհիներին, ինչպես և տնայնագործներին. կբարելավվեն կադրերի պատրաստման ու բանվոր-ծառայողների աշխատանքային պայմանները։

Տեղական արդյունաբերությունը մեր երկրի, այսպես կոչված, «փոքր ինդուստրիան է», որի առջև նոր հեռանկարներ են բացվում՝ տնտեսական ռեֆորմի իրականացման կապակցությամբ։ Լուրջ հաջողությունների կարելի է հասնել միայն կառավարման տեղական օրգաններին տրված իրավունքներն ու հնարավորությունները լրիվ օգտագործելու դեպքում։ Թե ինչպես են իրագործվելու տվյալ հնարավորություններն ու իրավունքները, զգալի չափով պայմանավորված են նաև այդ օրգանների ֆինանսներով։ Հայտնի է, որ տեղական արդյունաբերությունը շահավետ է, իսկ շահույթների զգալի մասը մտնում է տեղական բյուջե։ Դրանից բացի, տեղական արդյունաբերության զարգացման ֆոնդի հաշվին, բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության համար կարելի է ստանալ լրացուցիչ միջոցներ։

«Փոքր ինդուստրիայի» զարգացումը տեղական սովետներին կօգնի նաև լուծելու ապրանքաշրջանառության շատ կարևոր պրոբլեմներ և կարճ ժամկետում բնակչությանը կապահովի ժողովրդական սպառման պահանջվող առարկաներով։ Դրա համար կան բոլոր պայմանները. այժմ յուրաքանչյուր տեղական սովետ կարող է սեփական հումքից և մնացորդներից պատրաստած արտադրանքն իրացնել «սեփական» շուկայում, քանի որ տեղական արդյունաբերության արտադրանքն անհրաժեշտ է յուրաքանչյուր մարդու, յուրաքանչյուր ընտանիքի։ Չէ՞ որ տեղական արդյունաբերությունը մեծ դեր է խաղալու ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացման ուղղությամբ կուսակցության ու կառավարության ընդունած միջոցառումների սիստեմում։ Այն էականորեն լրացնելու է համապետական արդյունաբերության արտադրած ապրանքների նոմենկլատուրան, ծառայելով սոցիալիստական էկոնոմիկային՝ հումքի, նյութերի տեղական ռեսուրսների, արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության մնացորդների օգտագործմամբ թողարկվող բազմապիսի առարկաների նկատմամբ բնակչության պահանջմունքներն առավել չափով բավարարելու գործին։

Ահա թե ինչու տեղական սովետները խորապես շահագրգռված են էկոնոմիկայի այդ օղակի ըստ ամենայնի կատարելագործմամբ։ Ընդունված կուրսը հետևողականորեն իրականացնելու համար, առաջին հերթին, անհրաժեշտ է մշակել խոր մտածված և լավ հիմնավորված պլաններ, ընդլայնելով բնակչության ճաշակին ու պահանջներին համապատասխանող ապրանքների արտադրությունը։ Այդ նպատակով պետք է ջանալ առավելագույն չափով օգտագործել սեփական հումքը և արտադրության մնացորդները։

Մյուս լուրջ խնդիրը՝ արտադրության արդյունավետության բարձրացումն է։ Մեր կարծիքով, սխալ կլիներ փոքր քաղաքներում և գյուղական վայրերում ստեղծել տնայնագործական, ցածր արտադրողականություն ունեցող ֆաբրիկաներ ու գործարաններ։ Տեղական արդյունաբերությանը հարկավոր են ժամանակակից մասնագիտացված ձեռնարկություններ, որոնցում բարենպաստ

պայմաններ կստեղծվեն աշխատատար պրոցեսների մեքենայացման, նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման համար։

Այնուհետև, տեղական արդյունաբերության զարգացման մեծ ծրագիրը, որն ընդունվել էր մեր կուսակցության ու կառավարության կողմից, կպահանջի մասնագետների նոր հոսք դեպի այդ ոլորտը։ Ուստի, կարևոր է քննարկել ու լուծել արդեն ընթացիկ տարում առկա տեխնիկումներում ու պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում, ինչպես նաև հատուկ կազմակերպվող ուսումնական հաստատություններում տեխնիկների, տնտեսագետների, վարպետների, բարձր որակավորում ունեցող բանվորների պատրաստումն ընդլայնելու հարցը։

Վերջապես, անհրաժեշտ է մտածել գյուղական շրջանների էկոնոմիկայի մեջ տեղական արդյունաբերության ձեռնարկությունների և գեղարվեստական գրաղմունքների ավանդն ավելացնելու հնարավորությունների բազմակողմանի, խոր ուսումնասիրության մասին։ Դրանք լայնորեն օգտագործելու են անձնական ու տնային տնտեսություններում զբաղված մարդկանց, ինչպես նաև գյուղական բնակչությանը՝ միջսեզոնային ժամանակաշրջանում։ Այդ նպատակով նոր հնգամյակում կոլտնտեսություններում, սովխոզներում և միջտնտեսային կոոպերացիաներում լայնորեն կզարգանան գյուղատնտեսական մթերքների վերամշակման, տեղական շինանյութերի, ժողովրդական սպառման առարկաներ արտադրող օժանդակ ձեռնարկությունները. գյուղական վայրերում (որտեղ նպատակահարմար է) կստեղծվեն համապատասխան արդյունաբերական ձեռնարկությունների ֆիլիալներ, ապահովելով դրանք անհրաժեշտ նյութա-տեխնիկական բազայով։

Հարկավոր է այդ աշխատանքում ներգրավել գիտնականներին ու մասնագետներին, ժողովրդական ճարտարագործներին ու գյուտարարներին, գավառագետներին ու հնէաբանականներին. անցյալի փորձն ու տրադիցիան զուգակցելով արդիականության տեխնիկական նվաճումներին, սովետական մարդուն պետք է տալ նոր, բարձրորակ բազմապիսի ապրանքներ. այդպիսով, կկենսագործվի մեր կուսակցության սոցիալական պատվերը— «փոքր ինդուստրիայի» ձեռնարկություններում ավելացնել ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը, բարելավել ասորտիմենտը, բարձրացնել որակը։

# ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ԱՎԻԱՑԻԱՅԻ ԴԵՐԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

ՊՈՂՈՍՅԱՆ Զ. Պ.

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության կարևոր ճյուղերից մեկը քաղաքացիական օդային նավատորմն է, որի զարգացումն անխզելիորեն կապված է երկրի ինդուստրացման հետ։ Դեռ նախապատերազմյան տարիներին ՍՍՀՄ-ում ստեղծվեց հզոր ավիացիոն արդյունաբերություն։ Մեծացավ նաև թռիչքուղիների ընդհանուր երկարությունը, հատկապես երկրի ինդուստրիալ շրջաններում։ Առանձնապես մեծ ուշադրություն էր նվիրվում Հեռավոր Հյուսիսի, Սիբիրի, Հեռավոր Արևելքի անծայրածիր տարածություններում ավիագծերի զարգացմանը, ուր տրանսպորտի այլ միջոցներ չկային կամ շատ թույլ էին զարգացած։ Այդ ամենի հետ միասին զգալի աշխատանք կատարվեց օդանավակայանների, ինքնաթիռների նորոգման արհեստանոցների շինարարության, օդաչուների, ինժեներների, տեխնիկների և այլ մասնագետների պատրաստման ուղղությամբ։

Սակայն քաղաքացիական օդային նավատորմը բուռն զարգացավ միայն հետպատերազմյան, հատկապես վերջին 10—12 տարիներում, երբ տուրբինա-պտուտակային և տուրբոռեակտիվ մարդատար ինքնաթիռների արտադրությամբ այդ բնագավառում տեխնիկական հեղաշրջման սկիզբը դրվեց։ Բավական է նշել, որ ներկայումս մեր երկրում «Իլ—62» և «Տու—114» ռեակտիվ օդանավերով մեկ շաբաթվա ընթացքում փոխադրվում է 100 հազարից ավելի ուղևոր, գրեթե այնքան, որքան ամբողջ օդային նավատորմը փոխադրել է 1935 թվականին։

Վերջին տարիներին զարգացել է նաև մեր հանրապետության օդային տրանսպորտը։ Այդ են վկայում ՍՍՀՄ քաղաքացիական ավիացիայի հայկական ավիացիոն վարչության տնտեսական գործունեության ցուցանիշները, որոնք բերվում են հետևյալ աղյուսակում։

| Տնտեսական գործունեության ցուցանիշները | 1933 | 1953 | 1963 | 1967 |
|---|---|---|---|---|
| Ուղևորների փոխադրում (հազար մարդ) . . . . | 0,03 | 8,6 | 215,0 | 455 |
| Փոստային փոխադրումներ (տոննաներով) . . . . | 15 | 115 | 678 | 1128 |
| Բեռնափոխադրումներ (տոննաներով) . . . . . | 42 | 992 | 6875 | 9860 |
| Օդային գծերի երկարությունը (կիլոմետրերով) . . | 221 | 3820 | 19,975 | 2 2,900 |

Աղյուսակից երևում է, որ վերջին տարիներին հատկապես շատ է ավելացել ուղևորների փոխադրումը (10 տարում ավելի քան 23, վերջին հինգ տարում՝ 5,6 անգամ)։ Հետաքրքրական է նշել, որ նույն ժամանակամիջոցում երկաթուղային տրանսպորտով երթևեկողների թիվը գրեթե չի փոխվել, իսկ վերջին տարիներին նույնիսկ պակասել է։

Աստիճանաբար ավելանում են նաև օդային նավատորմով բեռների և փոստային փոխադրումները։ Ինչպես ցույց են տալիս վերը բերված աղյուսակի տվյալները, հանրապետությունում օդային նավատորմով բեռնափոխադրումները 1963 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ավելացել են մոտ 7 անգամ, իսկ փոստային փոխադրումները՝ ավելի քան 6 անգամ։ Հայաստանի արդյունաբերական ավելի քան 40 ձեռնարկություն, օդային նավատորմով միութենական հանրապետություններին մատակարարում են ավելի քան 300 տեսակի արտադրանք։

Ամեն օր Երևանի օդանավակայանից տրանսպորտային ինքնաթիռները Սովետական Միության բազմաթիվ քաղաքներ են փոխադրում էլեկտրաշարժիչներ, կոմպրեսորներ, լատեքսներ, ավտոդողեր, արդյունաբերական այլ արտադրանք ու գյուղատնտեսական մթերքներ։ Միայն 1966—1967 թվականների ամռան ամիսներին Երևանից Սվերդլովսկ, Մուրմանսկ, Ռիգա, Մոսկվա և Լենինգրադ է փոխադրվել մոտ 2200 տոննա միրգ։

Սակայն Սովետական Միությունում, այդ թվում և մեր հանրապետությունում, ընդհանուր բեռնափոխադրումների մեջ օդային տրանսպորտի փոխադրումների տեսակարար կշիռը դեռ աննշան է (2,2 տոկոս)։ Չնայած նրան, որ 1966 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, բեռների ու փոստային փոխադրումների մեկ տոննա—կմ ինքնարժեքն իջել է 27,5 տոկոսով, բայց օդային տրանսպորտով բեռնափոխադրումներինը դեռևս շատ բարձր է։ Այսպես, 1966 թվականին օդային նավատորմում մեկ տոննա—կմ բեռնափոխադրման ինքնարժեքը կազմել է մոտ 23 կոպեկ, ընդհանուր օգտագործման ավտոտրանսպորտում՝ 3,2, երկաթուղային տրանսպորտում՝ 0,24 կոպեկ։ Դա բացատրվում է նրանով, որ օդային տրանսպորտով մեկ տոննա—կմ բեռնափոխադրումներին ընկնում է անհամեմատ ավելի մեծ հզորությամբ շարժական ուժ և մի քանի անգամ ավելի սեփական ծանրություն, քան տրանսպորտի մյուս տեսակներին։

Այդ առումով երբ համեմատում ենք ուղևորների փոխադրումները, մարդատար գնացքում տրանսպորտային միջոցների սեփական ծանրությունը մեկ ուղևորի հաշվով տատանվում է 1,2—2 տոննայի, իսկ օդային տրանսպորտում՝ 0,4—0,7 տոննայի սահմաններում։ Ինքնաթիռը հնարավորություն է տալիս մեծ չափով կրճատել բնակավայրերի միջև ընկած երթուղին։ Այսպես, եթե գնացքով Երևանից—Մոսկվա գնալու համար պահանջվում է անցնել մոտ 3000 կիլոմետր, ապա «Իլ—18» ինքնաթիռով գնալիս, այդ տարածությունը կրճատվում է գրեթե 1200 կիլոմետրով։ Տարբերությունն էլ ավելի է մեծանում բարդ, կտրտված ռելեֆ ունեցող վայրերում, մասնավորապես մեր հանրապետությունում։ Այսպես, Երևան—Ղափան ավիագծի երկարությունը 210 կիլոմետր է, իսկ գնացքով 382։ Երևանից Գորիս ավտոմեքենայով գնալու համար անհրաժեշտ է անցնել մոտ 300, իսկ ավիագծով 185 կմ։

Օդային նավատորմով մի բնակավայրից բեռ կամ ուղևոր փոխադրելիս, միջին հաշվով, 35—55 տոկոսով պակաս տոննա—կմ ճանապարհորդություն է կատարվում, քիչ ժամանակ ու ծախս պահանջվում, քան երկաթուղային կամ ավտոմոբիլային տրանսպորտով։

Օդային տրանսպորտի ամենակարևոր առավելությունն արագությունն է, որը մեր երկրի անծայրածիր տարածության պայմաններում ունի առանձնահատուկ նշանակություն. Ավիացիայի, հատկապես ժամանակակից տուրբոռեակտիվ ու տուրբինապտուտակային օդանավերի շնորհիվ զգալի ժամանակ է խնայվում։

Այդ են ցույց տալիս հետևյալ տվյալները.

| Երթուղի | Ժամանակը (ժամերով) | | Տարբերությունը (անգամ) |
|---|---|---|---|
| | արագընթաց գնացքով | Իլ—18 ինքնաթիռով | |
| Մոսկվա—Ռիգա | 19 | 1,5 | 13 |
| Մոսկվա—Օմսկ | 75 | 3 | 25 |
| Մոսկվա—Ալմա-Աթա | 108 | 5 | 21,5 |
| Մոսկվա—Երևան | 58 | 3,3 | 17,5 |

Բերված տվյալներից երևում է, թե հեռավոր բնակավայրերի միջև օդային կապի դեպքում ժամանակի ինչպիսի մեծ խնայողություն է լինում, որը և օդային հաղորդակցության արդյունավետությունն է։ Կարճ տարածության վրա ավիացիայի հետ կարող է մրցել ավտոտրանսպորտը։ Սակայն այդ դեպքում էլ ինքնաթիռով բեռների և ուղևորների փոխադրումը, հատկապես մեր հանրապետության պայմաններում, ժամանակի մեծ խնայողություն է տալիս։ Այսպես, նույնիսկ հնացած տիպի ինքնաթիռով (ԱՆ—2) Երևանից Գորիս գնալու համար պահանջվում է ընդամենը 55 րոպե, իսկ Ղափան՝ 1 ժամ 05 րոպե։ Մինչդեռ ավտոբուսով Գորիս գնալու համար պահանջվում է 10—11, իսկ գնացքով Ղափան գնալու համար 12—13 ժամ։

Հաշվված է, որ ինքնաթիռով մեկ միլիոն ուղևոր փոխադրելիս, տրանսպորտի մյուս տեսակների համեմատությամբ, հասարակական ժամանակի տնտեսումը կազմում է 2 միլիոն 800 հազար մարդ—ժամ։ Հասկանալի է, որ այդ ժամանակը օգտակար աշխատանքի վրա ծախսելու դեպքում կարելի է հսկայական նյութական ու կուլտուրական բարիքներ ստեղծել։ Բայց արագության հարցը միայն ժամանակի խնայողությամբ ու տնտեսական արդյունավետությամբ չի սահմանափակվում։ Օդային տրանսպորտը, մեծ արագության շնորհիվ, ամրապնդում է ժողովուրդների հասարակական ու կուլտուրական կապերը, նպաստում քաղաքի ու գյուղի տարբերությունների վերացմանը, բնակչությանը հնարավորություն ընձեռում օգտվելու խոշոր քաղաքներում կենտրոնացված կուլտուրական ու նյութական բարիքներից։

Վերջին ժամանակներս ուղևորների փոխադրումների ուղղությամբ օդային տրանսպորտում ձեռք է բերվել մի կարևոր առավելություն ևս, որն ավիացիոն տեխնիկայի զարգացմանը համընթաց ավելի մեծ դեր կարող է խաղալ։ Դա փոխադրակարողության ցուցանիշն է, այսինքն այն, թե ժամանակի միավորի հաշվով մեկ կիլոմետր հեռավորության վրա որքան մարդ կամ բեռ կարելի է փոխադրել։ Այդ տեսակետից որոշակի հետաքրքրություն են ներկայացնում ներքոհիշյալ տվյալները.

| Տրանսպորտի տեսակը | Ուղևորների տեղերի թիվը | Արագությունը կմ/ժամ | Փոխադրակարողությունը (կմ) |
|---|---|---|---|
| Արագընթաց գնացք . . | 720 | 60—70 | 36000 |
| Ավտոբուս . . . . . . . | 50 | 90 | 5000 |
| «Իլ—18» . . . . . . . | 100 | 650 | 65000 |

Ներկայումս խնդիր է դրվում «Իլ—18» տիպի ինքնաթիռի տարեկան թռիչքը հասցնել մինչև 6000 ժամի (օրական մոտ 15 ժամ)։ Դրանով հնարավոր կլինի այդպիսի մի քանի ինքնաթիռի միջոցով կատարել, ասենք, Երևան—Մոսկվա մարդատար գնացքի դերը։

Օդային տրանսպորտում տեղի ունեցող տեխնիկական պրոգրեսը վերջին տարիներին զգալիորեն իջեցրել է ուղևորների փոխադրումների ինքնարժեքը և դրա հիման վրա փոխադրավարձը։ Բավական է նշել, որ 1952 թվականի համեմատությամբ, օդային տրանսպորտով ուղևորների փոխադրավարձը իջել է 47,5 տոկոսով, իսկ մի շարք ավիագծերում ավելի։ Ինքնաթիռի տոմսի արժեքը ներկայումս փաստորեն մարդատար գնացքի (փափուկ վագոններով) տոմսի արժեքից բարձր չէ։

Այսպիսով, քաղաքացիական օդային նավատորմն արագընթաց ու հարմար տրանսպորտի միջոց է ոչ միայն այն վայրերում, որտեղ տրանսպորտի մյուս միջոցների զարգացումը կապված է մի շարք դժվարությունների հետ, այլև այն շրջաններում, որոնք ապահովված են փոխադրական մյուս տեսակներով։ Օդային նավատորմի բազմաթիվ առավելությունները թույլ են տալիս ենթադրելու, որ մոտ ապագայում տուրբոռեակտիվ տեխնիկայի հիման վրա արագորեն զարգացող օդային նավատորմը կդառնա տրանսպորտի հիմնական միջոց։

Օդային տրանսպորտով բեռնափոխադրումների ծավալի հետագա ավելացմանը խոչընդոտում է բարձր փոխադրավարձը։ Բայց չնայած դրան, օդային տրանսպորտով բեռների փոխադրումը շատ դեպքերում կարող է իրեն արդարացնել։ Օրինակ, արտասահմանյան շատ ֆիրմաներ գերադասում են պատրաստի փոքրածավալ արտադրանքը կամ հումքը փոխադարձաբար մատակարարել օդային տրանսպորտով։ Ապրանքների բարձր փոխադրավարձն այդ դեպքում փոխհատուցվում է նորմատիվային պաշարների ու պահեստային տնտեսությունների խիստ կրճատման հաշվին։

Տրանսպորտի ֆունկցիայից բացի օդային նավատորմը ժողովրդական տնտեսության մեջ կատարում է բազմաթիվ այլ գործեր։ Ինքնաթիռների և ուղղաթիռների օգնությամբ պայքարում են գյուղատնտեսական վնասատուների, հիվանդությունների դեմ, ոչնչացնում մոլախոտերը, սնուցում հողը։ Բավական է նշել, որ հենց քաղաքացիական ավիացիայի շնորհիվ մեր երկրում մեկընդմիշտ վերացվեց մորեխը։ Այդ չարիքին վերջ տալու համար մեծ օգնություն է ցույց տրվում նաև հարևան մի շարք երկրներին՝ Իրանին, Աֆղանստանին, Հնդկաստանին։

Սովետական Միությանն է պատկանում՝ այգիների ու դաշտերի վնասատուների դեմ պայքարի ավիաքիմիական մեթոդների մշակման առաջնությունը։ Այդ տեսակետից առանձնապես մեծ արդյունք են տալիս հերբիցիդների ավիակիրառումը։ Այդ քիմիկատներով, ավիացիայի օգնությամբ, դաշտերը մշակելիս ոչնչացվում է մոլախոտերի 60—80, իսկ մի շարք դեպքերում՝ 100



տոկոսը։ Մոլախոտերի ոչնչացման նպատակով ավիացիայի կիրառումը հնարավորություն է ընձեռում լրիվին մեքենայացնել այդ աշխատանքը և հասնել բարձր արտադրողականության։ Այսպես, «ՅԱԿ—12» ինքնաթիռը մեկ օրում հերբիցիդի լուծույթը շաղ է տալիս 350—400 հեկտարի վրա։

Մոլախոտերի դեմ պայքարի ավիաքիմիական մեթոդների կիրառմամբ հացահատիկի մեկ հեկտարի բերքատվությունը բարձրանում է 2—3 ցենտներով, աշխատանքային ծախսումները կրճատվում 15—20 անգամ։

Ինքնաթիռի օգնությամբ քիմիական հատուկ լուծույթ է շաղ տրվում նաև բամբակի ցանքատարածությունների վրա, բամբակը տերևաթափելու համար։ Դա առավել արդյունավետ է դարձնում բամբակահավաք մեքենաների աշխատանքը և միաժամանակ նպաստում բամբակի արագ հասունացմանը։

Գյուղատնտեսության մեջ ավիացիայի կիրառման համեմատական արդյունավետության մասին որոշակի պատկերացում են տալիս հետևյալ թվերը։ 1966 թվականին հատուկ նպատակներով կիրառվող ինքնաթիռների ու ուղղաթիռների միջոցով Սովետական Միությունում մշակվել է շուրջ 275 միլիոն հեկտար հողատարածություն, խաղողի և պտղատու այգի, իսկ մեր հանրապետությունում՝ ավելի քան 700 հազար հեկտար։ Եթե մի քանի տարի առաջ Հայաստանում ընդամենը 5—6 հնամաշ «Պո—2» ինքնաթիռն էր սպասարկում գյուղատնտեսությանը, ապա այժմ տրամադրվել է «Ան—2» և «Մի» ինքնաթիռների ու ուղղաթիռների մի ամբողջ ստորաբաժանում, որը կատարում է շուրջ 10 տեսակի աշխատանք։ Հատուկ նպատակների համար կիրառվող ավիաէսկադրիլիայի օդաչուները չնայած թռիչքային ծանր պայմաններին, 1967 թվականին պատվով կատարեցին ոչ միայն Հայաստանի, այլև Կրասնոդարի երկրամասի, Նախիջևանի և մի շարք այլ շրջանների կոլտնտեսությունների, սովխոզների դաշտերի ու այգիների մշակման առաջադրանքները։

Մեր անծայրածիր հայրենիքի անտառները պաշտպանելու և ուսումնասիրելու գործում մեծ է քաղաքացիական ավիացիայի դերը։ Ինքնաթիռների և ուղղաթիռների օգնությամբ են հայտնաբերվում անտառային հրդեհների 80—85 տոկոսը։ Աերոնկարահանումների և դիտումների միջոցով որոշվում են անտառափայտի պաշարները, տեսակները։ Թեթև ինքնաթիռն ամառային սեզոնի ընթացքում կարողանում է հետազոտել 500 հազար հեկտար անտառ։ Եթե մեկ միլիոն հեկտար անտառը հետազոտելու համար պահանջվում է 20 հազար մարդ-օր, ապա ինքնաթիռի օգնությամբ՝ ընդամենը 120—150։

Քաղաքացիական օդային նավատորմը կարևոր դեր է խաղում ձկնորսության ու գազանորսության գործում։ Ավիացիայի օգնությամբ մի քանի անգամ արագացվում է ձկների ու ծովային կենդանիների մեծ կուտակումների հայտաբերումը և անմիջապես օգնություն է ցույց տրվում ձկնորսներին։ Հատկապես կարևոր նշանակություն է ստանում ծովերի ու օվկիանոսների հեռավոր վայրերից ինքնաթիռների միջոցով ձկան որսի փոխադրումը։ Չնայած փոխադրման համեմատաբար բարձր ինքնարժեքին, դա հնարավորություն է ընձեռում ավելի արդյունավետ օգտագործել ծովային նավատորմի սառցարանային տնտեսությունը և զգալիորեն ավելացնել ձկան ու ծովային կենդանիների որսը։

Պատասխանատու և շնորհակալ աշխատանք է կատարում սանիտարական ավիացիան։ Սանիտարական ինքնաթիռներն ու ուղղաթիռներն անփոխարինելի են այնտեղ, ուր անհրաժեշտ է շտապ բուժօգնություն, հատկապես ճանապարհազուրկ շրջաններում։

Ժողովրդական տնտեսության գրեթե բոլոր ճյուղերն օգտվում են քաղաքացիական օդային նավատորմի ծառայություններից: Այսպես, հանրապետության ավիացիոն վարչությունը գիտահետազոտական հիմնարկների հետ զգալի աշխատանք է կատարում մեծ բարձրությունների վրա մթնոլորտային պայմաններն ուսումնասիրելու համար: Մեր օդաչուները ակտիվորեն օգնում են նաև երկրաբանական հետախուզական հարստությունները հայտնաբերելու գործում: Ավիացիոն վարչությունն այդ աշխատանքը կատարում է ոչ միայն Հայաստանում, այլև Ադրբեջանում ու Վրաստանում: Սովետական Միության վաստակավոր շտուրման, հայկական ավիացիոն վարչության հնագույն աշխատող Հովհաննես Արուցյանը, հանրապետության բազմավաստակ և հմուտ օդաչու Մամիկոն Խանզրաթյանի հետ միասին, երկրաբանների հատուկ խմբի ներկայացուցիչների օգնությամբ, հայտնաբերել են բազմաթիվ օգտակար հանածոներ:

Վերջին տարիներին ավիացիան օգտագործվում է նաև շինարարության ասպարեզում: Առաջիններում ինժեներ-հետազոտողներն ստիպված էին անցնել անտառների կամ ճահիճների միջով նոր երկաթգծեր, գազամուղներ, նավթամուղներ կամ այլ ճանապարհներ ու գծեր նախագծելու համար: Այժմ այդ աշխատանքների մեծ մասը կատարվում է աերոնկարահանումների և աերոհետազոտության օգնությամբ: Մեծ հզորությամբ ուղղաթիռներն օգտագործվում են խոշորապանել բազմահարկ շենքեր կառուցելիս:

Ինչպես տրանսպորտային, այնպես էլ հատուկ նպատակների համար օգտագործվող ավիացիան հետագայում ավելի արագ տեմպերով կզարգանա: Դա պայմանավորված է ոչ միայն ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա բուռն զարգացմամբ, ներքին ու արտաքին ապրանքափոխանակության արագ աճով, այլև բնակչության ճանապարհորդության պահանջմունքների խիստ ավելացմամբ:

Օդային տրանսպորտի հետագա զարգացումն ապահովելու համար համապատասխանաբար կավելանա ժամանակակից արագընթաց ինքնաթիռների արտադրությունը, շահագործման կհանձնվեն բազմաթիվ նոր օդանավակայաններ, կընդլայնվեն ավիացիոն գծերը: Հեռավոր մագիստրալներում երևան կգան 120—220, նույնիսկ 720 տեղանոց և ժամում 1000—2500 կմ արագություն ունեցող ինքնաթիռներ («Տու 144», «Ան—22»): Միջին հեռավորության երթուղիներում կաշխատեն 66—129 տեղանոց և ժամում 1000 կմ արագություն ունեցող ինքնաթիռներ («Տու—134», «Իլ—62»): Տեղական ավիացիաներում կաշխատեն առավել խնայողական, 5-ից մինչև 30 տեղանոց և ժամում 270—600 կմ արագություն ունեցող նոր ինքնաթիռներ և ուղղաթիռներ («ԲԵ—30», «ՅԱԿ—40»):

Օդային նավատորմի հետագա զարգացումն էլ ավելի կնպաստի ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի բուռն ծաղկմանը:

# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

## ՍՈՑԻԱԼ-ՇՈՎԻՆԻԶՄԻ ԴԵՄ ԼԵՆԻՆԻ ՊԱՅՔԱՐԻ ԱՐՏԱՑՈԼՈՒՄԸ «ՊԱՅՔԱՐ» ԹԵՐԹՈՒՄ (1915-1917ԹԹ.)

1914 թվականի օգոստոսին, երբ սկսվեց առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմը, երկրորդ Ինտերնացիոնալի գրեթե բոլոր կուսակցությունները սեփական երկրների բուրժուական կառավարությունների կողմն անցան: Պատերազմի դեմ պայքարելու փոխարեն նրանք սկսեցին բոլոր միջոցներով արդարացնել իրենց երկրների կողմից մղվող զավթողական պատերազմը, այսինքն՝ սոցիալ-շովինիստական դիրք գրավեցին: Պատերազմը սկսվելուց անմիջապես հետո գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցության ֆրակցիան Շեյդեմանի գլխավորությամբ Ռայխստագում քվեարկեց պատերազմական վարկերի օգտին. նույնը կատարեցին մնացած երկրների սոցիալ-դեմոկրատական կուսակցությունները:

Միակ կուսակցությունը, որը պատերազմի սկզբից հետևողական ինտերնացիոնալիստական դիրք գրավեց և հանդես եկավ պատերազմի դեմ, դա բոլշևիկների կուսակցությունն էր Վ. Ի. Լենինի գլխավորությամբ: Այս պայմաններում բոլշևիկները պետք է պայքարեին ոչ միայն ռուսական սոցիալ-շովինիզմի, այլև, առհասարակ, միջազգային օպորտունիզմի և սոցիալ-շովինիզմի դեմ:

Ելնելով այն բանից, որ «Համաշխարհային պատմական մեծագույն կարևորություն ներկայացնող մոմենտին... երկրորդ Ինտերնացիոնալի առաջնորդների մեծամասնությունը փորձում է սոցիալիզմը ենթափոխել նացիոնալիզմով... արդարացնելով և պաշտպանելով պատերազմը, մտնելով պատերազմող երկրների բուրժուական մինիստրությունների մեջ» (Երկեր, հ. 21, էջ 20), Վ. Ի. Լենինը խնդիր դրեց բոլոր պատերազմող երկրներում բանվորներին բացատրել բուրժուազիայի կողմից առաջ քաշած «Հայրենիքի պաշտպանություն» լոզունգի ողջ խաբեությունը: «...Չի կարելի XX դարում «հայրենիքը պաշտպանել» այլ կերպ,— գրում էր նա,— քան բոլոր հեղափոխական միջոցներով պայքարել իր հայրենիքի միապետության, կալվածատերերի ու կապիտալիստների, այսինքն՝ մեր հայրենիքի վատթարագույն թշնամիների դեմ» (Նույն տեղ, էջ 120):

Համաշխարհային պատերազմի տարիներին մասսաների հեղափոխական շարժումները առավել նպատակասլաց դարձնելու համար բոլշևիկները պետք է պարզեին սկսված պատերազմի բնույթը և պատճառները, որովհետև բուրժուազիան, դաշնակցած օպորտունիզմի հետ, աշխատում էր ապացուցել, թե իբր պատերազմը պատահականություն է: Վ. Ի. Լենինը անդրադառնալով այդ հարցին նշել է, որ «պատերազմը պատահականություն չէ, «մեղք չէ», ինչպես կարծում են քրիստոնյա տերտերները... այլ կապիտալիզմի անխուսափելի աստիճանը, կապիտալիստական կյանքի նույնքան օրինական մի ձև, ինչպես և խաղաղությունը» (Վ. Ի. Լենին. Երկ. հ. 21, էջ 34):

1914 թվականի նոյեմբերի 1-ին կուսակցության կենտրոնական օրգան «Սոցիալ-դեմոկրատում» հրապարակվում է ՌՍԴԲ կուսակցության մանիֆեստը՝ «Պատերազմը և Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատիան», որտեղ նշվում է, որ սկսված պատերազմի նպատակն է «երկրների գրավում և օտար ազգերի նվաճում, մրցակից ազգի քայքայում, նրա հարստությունների թալանում, Ռուսաստանի, Գերմանիայի, Անգլիայի և այլ երկրների ներքին քաղաքական կրիզիսներից աշխատավոր մասսաների ուշադրության հեռացում, բանվորներին իրարից բաժանում ու ազգայնականությամբ հիմարացում և նրանց ավանգարդի ոչնչացում՝ պրոլետարիատի ռևոլյուցիոն շարժումը թուլացնելու նպատակով—այս է արդի պատերազմի միակ իսկական բովանդակությունը, նշանակությունն ու իմաստը» (Վ. Ի.

Լենին. Երկ. հ. 21, էջ 17)։

Վ. Ի. Լենինը ժամանակին մերկացրել է իմպերիալիստական բուրժուազիայի հորինած այն կեղծիքը, թե իբր սկսված պատերազմը փոքր ազգերի ազատագրման համար է, ցույց տալով, որ Մեծ տերությունները ձգտում են նվաճել նաև այն փոքր ազգերին, որոնց «պաշտպանությամբ» հանդես են գալիս, որը և հաստատվեց պատերազմի ընթացքում։ Ելնելով լենինյան գնահատականից «Պայքարին» աշխատակցող բոլշևիկները նույնպես քննադատել են համաշխարհային պատերազմի զավթողական, թալանչիական բնույթը։ 1916 թվականի հունիսին «Պայքարը» պարզաբանելով համաշխարհային պատերազմի պատճառները, գտնում է, որ «Ներկա իմպերիալիստական պատերազմի պատճառները պետք է որոնել ներկա հասարակական կապիտալիստական կազմակերպության մեջ» («Պայքար» № 24, 1916, 12 հունիսի)։ Ստ. Շահումյանը, առարկելով Գ. Վ. Պլեխանովին, Ալեքսինսկուն, Իորդանսկուն, որոնք սկսված պատերազմում Գերմանիային համարում էին մեղավոր, իսկ Ռուսաստանին անմեղ, գրում է, որ պատերազմը բոլոր մեծ տերությունների կողմից զավթողական, թալանչիական է, որ այն «...այս կամ այն թագակիր անձի փառասիրական տենչերի կամ առանձին պետությունների անսանձ ագահության ու տիրական ձգտումների արդյունք չէ, այլ կապիտալիստական բոլոր պետությունների մրցության բնական ու անխուսափելի հետևանքը» («Պայքար» № 40, 1916, 1 հոկտ. նաև Ստ. Շահում. երկ. հ. 2, էջ 388)։ Ականավոր բոլշևիկ հրապարակախոս Արսեն Ամիրյանն իր «Ազգային թե՞ դասակարգային քաղաքականություն» հոդվածում անդրադառնալով համաշխարհային պատերազմի բնույթին, նշում է, որ «Պրոլետարիատի մեծ ուսուցիչներ Մարքսը և Էնգելսը տվել են մի մեթոդ, որի օգնությամբ մենք ուսումնասիրում ենք կապիտալիստական կարգի օրենքները և ձգտումները, որ գործում են երկաթյա անխուսափելիությամբ կապիտալիստական երկրներում» («Պայքար» № 33, 1916, 14 օգոստոս)։ Ելնելով այդ մեթոդոլոգիայից, Ա. Ամիրյանը գտնում է, որ համաշխարհային պատերազմը իմպերիալիստական, թալանչիական, զավթողական պատերազմ է, որովհետև «...այն մղվում է նոր շուկաների և հումքի աղբյուրների զավթման նպատակով» (Նույն տեղը)։

Պատերազմի տարիներին «Պայքար» սոցիալ-դեմոկրատական հայերեն լեգալ թերթի շուրջը համախմբված բոլշևիկները, առաջնորդվելով պատերազմի, խաղաղության և հեղափոխության վերաբերյալ լենինյան լոզունգներով, նույնպես քննադատել են սոցիալ-շովինիզմը։ Հարկ է նշել, որ «Պայքար» թերթը, որպես քննադատության հիմնական օբյեկտ, վերցրել էր Գերմանիան, որովհետև խստագույն գրաքննչության պայմաններում Անտանտի երկրներին քննադատել հնարավոր չէր, սակայն հենց ինքը՝ «Պայքարը» բազմաթիվ անգամ նշել է, որ իր քննադատությունը վերաբերում է ոչ միայն Գերմանիային, այլ կռվող բոլոր երկրներին («Պայքար» № 19, 1916, 8 մայիսի, № 31, 1916, 31 հուլիսի, № 33, 1916, 14 օգոստոսի)։ Համաշխարհային պատերազմի սկզբից «Պայքարը» նկատի ունենալով սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների մեծամասնության գործարքը իրենց երկրների բուրժուազիայի հետ, գրում էր, որ «Գերմանական Ռայխստագում սոցիալ-դեմոկրատական ֆրակցիայի ձայն տալը պատերազմական վարկերին, սոցիալիզմի համար մի մեծ աղետ էր» («Պայքար» № 7, 1917, 19 փետրվարի)։

1915 թվականի սեպտեմբերին մենշևիկների և էսեռների պարագլուխները Ժնևում տեղի ունեցած խորհրդակցությունում որոշեցին «պաշտպանել հայրենիքը և ձգտել նրա հաղթանակին»։ Այդ նպատակով նրանք կոչով դիմեցին Ռուսաստանի պրոլետարիատին, որպեսզի նա ոչ միայն հեռու մնա հեղափոխական պայքարից, այլև ակտիվորեն համագործակցի բուրժուազիայի հետ՝ «Հայրենիքը պաշտպանելու» համար։ Մենշևիկների և էսեռների կարծիքով թշնամու դեմ կռվող բանակի թիկունքում ամեն մի հեղափոխական ընկում հավասարազոր է դավաճանության։ Կովկասյան մենշևիզմի լիդեր Ն. Ժորդանիան «հայրենիքի պաշտպանության» հարցում միանգամայն համամիտ էր վերը նշված կարծիքին։ Մենշևիկյան «Самозащита» ժողովածուում տպագրած իր հոդվածներում նա ամենառեակցիոն մտքերն էր արտահայտում բոլշևիկյան լոզունգների, նրանց տակտիկայի և ստրատեգիայի առթիվ։ Ն. Ժորդանիան փարիսեցիաբար հայտարարում էր, որ իբր հետևողական մարքսիստները և ինտերնացիոնալիստները ոչ թե բոլշևիկներն են, որոնք վճռաբար հանդես են գալիս իմպերիալիստական պատերազմի դեմ, այլ «հայրենիքի պաշտպանության» կողմնակիցները, այսինքն՝ սոցիալ-շովինիստները։ Ն. Ժորդանիան կաշվից դուրս էր գալիս ապացուցելու, որ «ինտերնացիոնալը չի կործանվել, այլ այն կա ու գործում է»։

Լենինը, որ ուշի-ուշով հետևում էր դեպքերի զարգացման ընթացքին Ռուսաստանում ու Անդրկովկասում, 1915 թվականի ամռանը գրած իր Սոցիալիզմը և պատերազմը հոդվածում խստորեն քննադատեց Ն. Ժորդանիայի գործելակերպը, որպես սոցիալ-շովինիստի։ «Наша заря»-ն, Պլեխանովը, Ալեքսինսկին, կովկասյան ս-դ առաջնորդ Անը (Ն. Ժորդանիան—Մ. Բ.) դառնում են բացահայտ սոցիալ-շովինիստներ»—գրում է Լենինը (Երկեր, հ. 21, էջ 428)։

Ն. Ժորդանիայի և Գ. Վ. Պլեխանովի հայացքների միասնությանը պատերազմի տարիներին անդրադարձել է Ստ. Շահումյանը։ 1915 թ. ամռանը Լենինին գրած իր նամակում նա ընդգծում է, որ «Պլեխանովի բարի կամեցողը Անդրկովկասում Ն. Ժորդանիան է» (Ստ. Շահումյան, Երկեր, հ. 2, էջ 348)։

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին հայ բուրժուազիան նույնպես դարձավ իմպերիալիստական պատերազմի ջատագովը։ Դաշնակցությունն իր օրգան «Հորիզոնի» բերանով հայ ժողովրդին կոչ էր անում պաշտպանելու Անտանտի երկրներին, որովհետև ըստ նրա՝ «ապագան նրանցն է»։ Իսկ ի՞նչ էր փնտրում դաշնակցությունը Անտանտի երկրների հաղթանակի մեջ։ Իր վաղեմի երազանքի իրականացումը և այդ պատճառով ամեն կերպ բորբոքում էր «հայկական հարցը», հավատացնելով ժողովրդին, որ դրա լուծումը իմպերիալիստական մեծ տերությունների խնդիրներից մեկն է համաշխարհային ներկա պատերազմում։ Նույն քաղաքականությունն էին վարում մանրբուրժուական մնացած կուսակցություններն ու հոսանքները։ «Մշակում» տպագրած իրենց բազմաթիվ հոդվածներում սպեցիֆիկները դասակարգային խաղաղության քարոզ էին կարդում։ Նրանց գաղափարախոսներից մեկը՝ Դ. Անանունը քննադատելով բոլշևիկներին, նշում էր, որ «նրանք պառակտում են բոլոր ազգերին» և խորհուրդ էր տալիս հետևել ֆրանսիական կամ գերմանական սոցիալիստներին, որոնք, ըստ նրա, իսկական սոցիալիստներ են, իսկ բոլշևիկները» ազգի հոգսերով ապրող չեն» («Մշակ» № 103, 1916)։

«Պայքար» թերթն այս փաստերի կողքով անցնել չէր կարող և սպեցիֆիկներին մերկացնում էր որպես հայ իրականության մեջ գործող լեգալ մարքսիստների։ Այս առիթով խիստ ուշագրավ է Ա. Ամիրյանի «Մեր մարքսիստանմանները» հոդվածը, որը լույս է տեսել թերթում՝ գրաքննչական խիստ կրճատումներով։ Հոդվածի կրճատված մասում խոսվում է հայ լեգալ մարքսիստների մերկացման անհրաժեշտության մասին։ «Որովհետև մարքսիզմի ամենավտանգավոր թշնամիները նրա բացարձակ թշնամիները չեն,— գրում է նա,— այլ նրա աղավաղողները, ինչպիսիք են հայ իրականության մեջ սպեցիֆիկները» (ՄԼԻ հայկ. ֆիլ. արխ., ֆոնդ 33, գործ 477, ցուցակ 5, թերթ 2)։

Իր գոյության ընթացքում «Պայքարը» հետևողական և անհաշտ մաքառել է հայ իրականության մեջ գործող հասարակական բոլոր այս հոսանքների ու խմբավորումների դեմ, որոնք իրենց դավանանքով ու քաղաքական կուրսով օբյեկտիվորեն նպաստում էին իմպերիալիզմի դիրքերի ամրապնդմանն ի վնաս հայ ժողովրդի աշխատավորների շահերի։

Սոցիալ-դեմոկրատական «Պայքար» թերթը պատերազմի տարիներին իր ջանքերը գործադրել է մասսաներին համախմբելու լենինյան լոզունգների շուրջ, որքան այդ հնարավոր էր լեգալության պայմաններում։ «Պայքար» թերթի խմբագիրներից մեկը՝ Ա. Մռավյանը անդրադառնալով թերթի գործունեության այդ շրջանին գրել է. «Պատերազմական շրջանի դժոխային պայմաններում «Պայքարը» արտահայտում էր հայ գիտակից բանվորության հակապատերազմական տրամադրությունները և իբրև այդպիսին մեծապես նպաստում էր նրա քաղաքական դաստիարակությանը (Ա. Մռավյան, Հոդվածների, ճիշողությունների ժողովածու» Երևան, 1930 թ., էջ 58)։

«Պայքար» թերթն անողոք քննադատել է միջազգային օպորտունիզմը և նրա պարագլուխ Էդ. Բեռնշտայնին, որը ժխտում էր սոցիալիստական հեղափոխությունը և պրոլետարիատի դիկտատուրան։ Ըստ օպորտունիզմի այժմյան «կուլտուրական դարաշրջանում» հեղափոխության համար պայմաններ չկան, և այս միտքը նրանք աշխատում էին հիմնավորել Մարքսով ու Էնգելսով։ Թերթը, ընդհակառակը, ցույց է տալիս, որ օպորտունիզմի դեմ ամենաանողոք պայքարողները հանդիսացել են հենց Մարքսն ու Էնգելսը և վերջացնում է իր միտքը օպորտունիզմի վերաբերյալ հետևյալ խոսքերով. «օպորտունիզմը մի հիվանդություն է, որից պետք է ավելի վախենալ, քան ժանտախտից, որովհետև նա ռեակցիայի ամենավատթարագույն տեսակն է («Պայքար» № 1, 1916 1 հունվարի)։

Համաշխարհային պատերազմի հենց սկզբից բացարձակ սոցիալ-շովինիզմի դիրք է գրավում և Գ. Վ. Պլեխանովը։ Նա 4-րդ պետական դումայի մենշևիկյան ֆրակցիայի անդամ Բուրյանովին գրած նամակում արդարացնելով Ռուսաստանի կողմից մղվող իմպերիալիստական պատերազմը, գտնելով, որ այն «հայրենիքի պաշտպանության» համար է մղվում, խորհուրդ էր տալիս և պահանջում, որ ֆրակցիան քվեարկի պատերազմական վարկերի օգտին։ «Դուք և Ձեր ընկեր սոցիալ-դեմոկրատ պատգամավորները,— գրում էր Պլեխանովը,— չեք կարող պետական դումայում քվեարկել պատերազմական վարկերի դեմ... Արեք ձեր վերապահումները, դրանք անհրաժեշտ են, բայց քվեարկեցեք հօգուտ վարկերի. վարկերի դեմ քվեարկելը այժմ, հավասարազոր կլինի դավաճանության (ժողովրդի նկատմամբ)» (ЦГАОРС СССР, фонд 102, 1915г., дело 5, т. 3, л. 3)։

Քանի որ «Պայքար» թերթին արգելված էր քննադատել ռուսական սոցիալ-շովինիզմը, ուստի, նա դիմել է ժուռնալիստական տարբեր միջոցների, գլխավորապես գրախոսությունների. գրախոսելով Գ. Վ. Պլեխանովի Ինտերնացիոնա-

մարդու վերաբերմունքի բնութագիրը տալիս։

Վերոհիշյալ տեսակետը պաշտպանում են է. Վ. Իլյենկովը, Վ. Պ. Շեստակովը, Մ. Ի. Պարխոմենկոն և ուրիշներ։ Այսպես, Վ. Պ. Շեստակովը գրում է. «Գեղագիտական դաստիարակությունը զարգացնում է ոչ միայն բարոյականություն, ոչ միայն գեղարվեստական գործերն ընկալելու ընդունակություն, այլև ստեղծագործելու ընդունակությունը ոչ միայն գեղարվեստական, այլև մարդկային գործունեության ամեն մի այլ ձևում»[1]։

Եթե Մ. Ի. Պարխոմենկոն գեղագիտական դաստիարակության կարևոր խնդիրն է համարում մարդու մեջ արվեստագետ դաստիարակելը, որն ընդունակ լինի ձևավորել կյանքն ըստ գեղեցկության օրենքների, ապա Վ. Ա. Ռազումնին առարկում է դրան, բերելով այն փաստարկումը, թե երբեք էլ այնպիսի վիճակ չի ստեղծվի, որ բոլորն էլ արվեստագետ դառնան։

Մեզ թվում է, որ գեղագիտական դաստիարակության խնդիրը մարդու մեջ «արվեստագետ» զարգացնելը համարող հեղինակները բռնավ չեն ցանկացել ապագա հասարակության համար պրիմիտիվ, ինչ-որ «հավասարարական» ֆորմուլա սահմանել։ Պարզ է, որ հասարակության ոչ բոլոր անդամները կարող են պրոֆեսիոնալ արվեստագետներ լինել. այս վերջին բառը նրանք այդքան նեղ իմաստով չեն գործածում։ Իսկ Մարքսի այն խոսքերը, որ արվեստի գործերը կոմունիզմի ժամանակ հաճույք կպատճառեն անխտիր բոլորին, նշանակում է, որ անհամեմատ կզարգանան մարդու գեղագիտական պահանջներն ու ճաշակը։

Այսպիսով, գեղագիտական դաստիարակության խնդիրը պետք է լինի մարդու մեջ դաստիարակել գոյություն ունեցող գեղեցիկն ընկալելու ու հասկանալու ունակություն, մարդկային գործունեության բոլոր բնագավառներում էլ ստեղծագործական մոտեցում ցուցաբերելու պահանջմունք ու ընդունակություն, նրա մեջ դաստիարակել առողջ բարոյականություն, գեղագիտական բազմակողմանի ու վսեմ ճաշակ՝ ամբողջական, ներդաշնակորեն զարգացած անհատ ձևավորելու նպատակով։

Գեղագիտական դաստիարակության էության ու խնդիրների վերոհիշյալ սահմանումը ճիշտ ենք համարում հատկապես այն առումով, որ նա ենթադրում է ոչ թե մարդու ունակություններից որևէ մեկի միակողմանի զարգացում, այլ նրանց ներդաշնակություն, նրանց ամբողջականություն։

[1] *В. П. Шестаков.* **Проблемы эстетического воспитания**, М., 1962, стр. 6.

Անհատի համակողմանի ու ներդաշնակ զարգացման, ամբողջական մարդու ձևավորման հիմքը, ինչպես արդեն նշեցինք վերը, ազատ ստեղծագործ աշխատանքն է։ Գեղագիտական դաստիարակությունն պետք է նպաստի այդպիսի աշխատանքի հաստատմանը, այն է՝ մարդկային բնության «ներքին դաշնության» վերականգնմանը։

Սակայն, իհարկե, չպետք է կարծել, թե ամբողջական, համակողմանի զարգացած անհատն ինչ-որ «ունիվերսալ» է, որպիսին հազիվ թե կարելի է հնարավոր համարել։ Խնդիրն այն չէ, որ մարդն ամեն ինչ իմանա ու ամեն ինչ կարողանա, այլ այն, որ նա ստեղծագործ աշխատանքի ունակ լինի գործունեության ամեն մի բնագավառում, որ նա վերաբերվի կյանքին որպես ստեղծագործության։

Հետևապես խոսքը վերաբերում է այն բանի, որ անհատը լիովին ծավալվի իր ստեղծագործական աշխատանքում, հաստատի իրեն առարկայական աշխարհում որպես ամբողջականություն։

Գեղագիտական դաստիարակության միջոցների կոմպլեքսի մեջ առանձնահատուկ ու խոշոր դեր ունի արվեստը, որը ձևավորում է մարդու ստեղծագործական երևակայությունը, աշխարհն ընկալելու նրա ունիվերսալ ունակությունը, նպաստելով երևակայության ու մտածողության ուժերի ներդաշնակությանը։

Հայտնի է, որ արվեստը երեք փոխադարձաբար կապված ֆունկցիա է կատարում՝ դաստիարակչական, ճանաչողական ու հաճույք պատճառող։ Վերջին մոմենտի նկատմամբ երբեմն մի փոքր ասկետային վերաբերմունք է ցուցաբերվում, սակայն էսթետիկայի բնագավառում այնպիսի ռիգորիստ, ինչպիսին Պլատոնն է, ստիպված էր խոստովանել, որ «մուսիական արվեստի չափանիշը հաճույքն է»։ Եվ հիրավի, դաստիարակելով ու հարստացնելով մարդու գիտելիքները, արվեստը միաժամանակ մեծ հրճվանք ու հաճույք է պատճառում նրան։ Վերածնության շրջանի արվեստի հանճարեղ ներկայացուցիչներից մեկը և մեծ հումանիստ Միքելանջելոն գրում էր, որ «յուրաքանչյուր մահկանացու ամեն ժամ ծարավի է գեղեցկության»։

Գեղեցկության այդ ծարավը միշտ էլ պետք է անմար մնա մարդու մեջ, հարստացնելով նրա հոգևոր աշխարհը։ Բուն իսկ հաճույքն այն գործուն ու անհրաժեշտ հզոր ուժն է, որը փոխում է, դաստիարակում ու ձևավորում մարդուն և նրա միջոցով էլ փոխում շրջապատի իրականությունը։

ԱՅՐՈՒՄՅԱՆ Մ. Վ.

# ԷՋԵՐ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԱՆՑՅԱԼԻՑ

1905 թվականի ապրիլի 12-ին Լոնդոնում կայացավ կուսակցության III համագումարը, ինչպես հայտնի է մի շարք հարցերի թվում քննության առնվեց Կովկասում տեղի ունեցող իրադարձությունների զարգացումը։ Բարձր գնահատական տալով Կովկասի բոլշևիկների գործունեությանը, համագումարը գործնական միջոցառումներ մշակեց՝ տեղի կազմակերպություններին օգնելու համար։

Զինված ապստամբության նախապատրաստման ասպարեզում մեծ աշխատանք է կատարվում Անդրկովկասում։ Այդ բանից անմասն չի մնում Հայաստանը, մասնավորապես, Ալեքսանդրապոլը, ուր աշխատավորությունը բոլշևիկյան կազմակերպությունների օգնությամբ պատրաստվում էր գալիք մարտերին։

Կովկասի փոխարքան, ելնելով երկրամասի օրհասական վիճակից, ձեռնարկում է արտակարգ միջոցներ։

Ալեքսանդրապոլում զորքի և քաղաքական իշխանությունների գործունեությունը կոորդինացնելու և պատշաճ կարգ ու կանոն հաստատելու համար հատուկ զորամասերի հրամանատար է նշանակվում Բաքվի 153-րդ գնդի հրամանատար, գնդապետ Գուրևը և նրա տրամադրության տակ են դրվում Ալեքսանդրապոլում ու նրա գավառում գտնվող զորամասերը, բերդի հրետանին, Կովկասի հրաձգային հրետանային պարկը և այլն[1]։ Անկայուն վիճակը կայունացնելու համար, հոկտեմբերի 11-ին Երևանի ժամանակավոր նահանգապետ, գեներալ-լեյտենանտ Ցացկևիչը «արգելում է ամեն մի հավաքույթ կամ ժողով փողոցներում, հրապարակներում, այգիներում, կայարաններում և այլ հասարակական վայրերում»[2]։ Բայց արդեն ուշ էր. բռնկած հեղափոխական շարժումը ընդգրկել էր ամբողջ երկաթուղային տրանսպորտը։ Ռուսաստանի 34 երկաթուղիների 700 հազարից ավելի բանվոր-ծառայողները նոր թափ հաղորդեցին հոկտեմբերյան գործադուլին, որը կարճ ժամանակամիջոցում իր մեջ առավ նաև կայսրության ծայրամասերը[3]։

Արձագանքելով այդ գործադուլին, Ալեքսանդրապոլի բոլշևիկյան կազմակերպության կենտրոնը հրատարակում է 18 կետից բաղկացած մի կոչ, որտեղ շարադրվում են երկաթուղու բանվոր-ծառայողների պահանջները[4]։

Հոկտեմբերի 14-ին երկաթուղու ծառայողները քաղաքում հավաքվում են ժողովի։ Այն ղեկավարում են մեքենավարներ Ս. Շահբազյանը և Ս. Գեգենաշվիլին։

Հոկտեմբերի 15-ի առավոտյան ժամը 6-ին սկսվում է գործադուլը[5].

Աշխատանքները դադարեցնում են Ալեքսանդրապոլ—Ղարս, Ալեքսանդրապոլ—Երևան գծի բանվորներն ու ծառայողները, որոնք հոկտեմբերի 16-ին ստեղծում են գործադուլային կոմիտե։ Այն իր ձեռքն է կենտրոնացնում ամբողջ իշխանությունը և փաստորեն հանդես գալիս որպես բանվորների դեպուտատների սովետ։

Ալեքսանդրապոլում ստեղծված գործադուլային կոմիտեն գործում է տեղի բոլշևիկյան կազմակերպության ղեկավարությամբ, որի բոլոր միջոցառումներն ու գործնական քայլերը բխում են Կովկասի միութենական կոմիտեի ընդունած որոշումների և հրատարակած պրոկլամացիաների պահանջներից։

Գործադուլային կոմիտեն քաղաքական-կազ-

[1] ՀՍՍՀ ՊԿՊԱ., ֆ. 94, ց. 1, գ. 2790, թ. 81։
[2] Նույն տեղը, գ. 2791, թ. 8։

[3] **И. В. Спиридонов**—Всероссийская политическая стачка в Анкаре 1905 г. 1955 г., стр. 67.
[4] ՄԼԻ Հայկ. ֆիլ. կա., ֆ. 4033, ց. 1, գ. 198, թ. 4։
[5] Վրաց. ՍՍՀ ՊԿՊԱ., ֆ. 13, ց. 27, գ. 5333, թ. 4։

վեհարդար տեսնելու նպատակով դիմում է Կովկասի զինվորական շտաբի պետ Գրյազնովին և խնդրում, որ բոլոր ռուսներին տեղափոխել ռուսական վայրերը, որովհետև տեղացիները, իբրև ատելությամբ են լցված ռուսների դեմ։ «Օգնեցեք և փրկեցեք մեզ, մեր գահը տեր թագավորի, որովհետև նրանք ուզում են կործանել մեր գահը իրենց ոտքերի տակ»[1]։

Եվ որպես հանցագործների՝ նա պահանջում է պատժել Իվան Բերեզովսկուն, Սիմյոն Սվանիձեին, Դավիթ և Վասիլի Վաղամովներին, Պավել և Գավրիլ Վիշնյակովներին, Կոտրիկաձեին, Կակաաձաշվիլուն, Ռուխաձեին, Իվան և Գավրիլ Պրոխորովներին, Շարիմանովին, Մերկուրովին, Ալեքսանդր Օմերովին, Ալեքսեյ Բեբելուրիին, Սարդիոն Գեգենաշվիլուն, Վասիլի Պրանդիշվիլուն, Ջոմախիձեին, Մանդիկալաձեին, Գրիմբերգին, Մակասարաշվիլուն, Աբրոսիմովին, Ալեքսեյ Պերշինին, Իվան Գուրովին, Ալեքսեյ Գորշկովին, Գուրգենիձեին, Կոխրենիձեին[2]։

Ցարական ոստիկանությունը գաղտնի հետախուզության միջոցով պարզում է գործադուլային կոմիտեի անդամների տեղը և շուրջ 22 հոգու 1906 թ. հունվարին կալանավորում[3]։ Կալանքի տակ են վերցվում և Ալեքսանդրապոլի բերդ նետվում 12 երկաթուղային ծառայողներ, որոնք ակտիվ մասնակցություն են ունեցել գործադուլին։ Սիմյոն Սվանիձեին, Կոտրիկաձեին ներկայացվում է մեղադրանք, իսկ գործադուլի մասնակիցների մի մասը դրվում է գնդապետ Նեյգեմբաուերի հսկողության տակ[4]։

Հեղափոխական բանվորների նկատմամբ կիրառվող բռնությունները և անմարդկային վերաբերմունքը կորցնում են իրենց չափը։ Կառավարությունը առիթ է փնտրում հեղափոխականներին ձերբակալելու համար։ Բանտերը լցվում են կալանավորներով։ Ալեքսանդրապոլի կայազորի հրամանատարը 1906 թ. հունվարի 11-ին Կովկասի զինվորական օկրուգի շտաբին խնդրում է կալանավորներին տեղափոխել քաղաքային բանտ, իսկ եթե դա որևէ պատճառով անհնար է, ապա տեղափոխել Ղարսի բերդ, որտեղ, ըստ Յացկևիչի հայտարարության, շատ տեղեր կան մեծ թվով բանտարկյալների համար[5]։

Քաղաքական բոլոր բանտարկյալները ամիսներ շարունակ տառապում են բանտերում և ոչ ոք ուշադրություն չի դարձնում նրանց գործի քննության արագացման վրա։ Երկաթուղային ծառայողներ Սվանիձեն, Ա. Կոտրիկաձեն, Տկաբալաձեն, Գրոբովսկին, Սուրկուլաձեն, Մագրաձեն, Մամաևը, Ճինորաձեն, Կետիշվիլին, Սուխապարովը, Գեգուշաձեն և Ժալինը, որոնք որպես քաղաքական կալանավորներ փակված էին Ալեքսանդրապոլի բերդում, դիմում են Կովկասի փոխարքային գործի քննությունը արագացնելու համար[6]։

«Մենք Ալեքսանդրապոլի բանտի բանտարկյալներս տաս-քսան ամիսների ընթացքում գտնվում ենք քննության տակ լիովին անտեղյակ մեր գործերի դրությունից։ Դիմել ենք շատ անգամ, դիմում ենք և հիմա տեղական իշխանությանը, բայց ոչ մի հետևանք։ Քննության տակ գտնվող բանտարկյալներս, հակառակ նույնիսկ գոյություն ունեցող օրենքների, պահվում ենք շղթայակապ»[7]։

Հեղափոխությունը պարտվեց։ Բայց այն անհետևանք չանցավ. խարխլեց միջնադարյան ֆեոդալական կարգերի հիմքերը, նոր ուղիներ հարթեց պրոլետարիատի հետագա հերոսամարտերի համար։

Ցարիզմի արյունոուշտ քաղաքականությունը պրոլետարիատին համոզեց, որ թշնամուն հաղթելու համար հարկավոր է զինվել և համախմբվել պրոլետարիատի առաջավոր ջոկատ հանդիսացող բոլշևիկյան կուսակցության շուրջը։ 1905 թվականի իրադարձությունները մեծ դպրոց հանդիսացան Ալեքսանդրապոլի բանվոր դասակարգի համար՝ նրա հետագա պայքարում։ Այդ իրադարձությունների տրամաբանական զարգացումը եղան փառաբանված մայիսյան ապստամբությունը և սովետական կարգերի հաստատումը Հայաստանում, որոնք ազատություն, նոր կյանք բերեցին ստեղծագործ հայ ժողովրդին։

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Գ. Գ.

---

[1] ՄԼԻ ճայկ. ֆիլ. կա., ֆ. 4033, ց. 3, գ, 222: թ. 1—2:

[2] Նույն տեղը:

[3] Նույն տեղը, ց. 2, գ. 370, թ. 1:

[4] Նույն տեղը, ց. 1, գ. 407, թ: 1:

[5] ՄԼԻ ճայկ. ֆիլ. կա., ֆ. 4033, ց. 2, գ. 381, թ. 2:

[6] ՄԼԻ ճայկ. ֆիլ. կա., ֆ. 33, ց. 2, գ. 395, թ. 115:

[7] «Կայծ», Թիֆլիս, 1906 թ. № 35, 9-ը հուլիսի:

# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԻՆՖՈՐՄԱՑԻԱՆ ՈՐՊԵՍ ԿԱՊԻ ԿԱՐԵՎՈՐ ՄԻՋՈՑ

Ինֆորմացիաները շրջանային կոմիտեն ստանում է տարբեր եղանակներով. մասսաների հետ տեղերում շրջկոմի աշխատողների անմիջական հանդիպումների միջոցով, սկզբնական կուսակցական, սովետական, հասարակական կազմակերպություններից, որոշումներից, աշխատավորական կոլեկտիվներից և առանձին մարդկանցից ստացվող գրավոր ու բանավոր ահազանգերից, զանգատներից, նամակներից, տեղական ու կենտրոնական թերթերից, վերադաս օրգաններից և այլն։

Վերջին մեկ տարվա ընթացքում կուսակցության Գորիսի շրջանային կոմիտեն նման ուղիներով ստացել է մի քանի հարյուր ինֆորմացիա։ Այդ ինֆորմացիաները իրենց բնույթով բազմազան են և արծարծում են կուսակցական, սովետական, հասարակական կյանքի և տնտեսական օրգանների ու կադրերի գործունեության տարբեր կողմերը։ Շրջանային կոմիտեն այդ ինֆորմացիաները հաշվառում է խնամքով, կարգավորում ըստ բնույթի, ամփոփում և, անհրաժեշտության դեպքում, դրանք քննարկման դնում շրջկոմի բյուրոներում, պլենումներում, ակտիվի ժողովում, խորհրդակցությունում կամ ընթացք տալիս ապարատային կարգով։

Կուսշրջկոմի հրահանգիչ Ն. Վարդանյանը մեկ անգամ, լինելով Շինուհայրի սովխոզում, ծանոթանում է ոչխարաբուծական ֆերմայի վիճակին, զրուցում ու խորհրդակցում մարդկանց հետ։ Պարզվում է, որ ֆերման չի կատարում բրդի արտադրության պլանը, հոտից պակասում է 105 ոչխար, հովիվների մոտ ընկած է աշխատանքային կարգապահությունը։ Այդ մասին հրահանգիչը ինֆորմացիա է տալիս շրջկոմի քարտուղարներին։ Հրահանգչի առաջարկությամբ կազմվում է մասնագիտական հանձնաժողով, որը լուրջ թերություններ է հայտնաբերում ֆերմայում։ Այնուհետև ստուգման արդյունքները քննարկվում են կուսշրջկոմի բյուրոյում, որի կենսագործմամբ Շինուհայրի սովխոզի ոչխարաբուծական ֆերմայում դրությունը բարելավվել է։

Դա եզակի երևույթ չէ։ Կուսշրջկոմի աշխատողների ինֆորմացիաները մեզ մոտ միշտ հանգամանորեն ուսումնասիրվում են քարտուղարների և բաժինների վարիչների կողմից և գործնական միջոցառումներ ձեռնարկվում բացահայտված թերությունների վերացման համար։ Շրջկոմի անդամները և ապարատի աշխատողները պարբերաբար գյուղերն են մեկնում նաև հատուկ հանձնարարությամբ՝ հարցեր նախապատրաստելու, տեղում գործերի վիճակին ծանոթանալու նպատակով։ Նրանց ներկայացրած գրավոր և բանավոր ինֆորմացիաները լինում են առավել ստույգ և օգնում շրջկոմին՝ առաջ քաշվող հարցերը լուծելու արագ և անսխալ։

Շրջկոմը սիստեմատիկաբար ինֆորմացիա է ստանում նաև սկզբնական կուսակցական կազմակերպություններից։ Ինֆորմացիայի կարևոր աղբյուր են, առաջին հերթին, կուսակցական ժողովների արձանագրությունները, որոնք արտացոլում են կոմունիստների կարծիքները, ցանկությունները, քննադատական դիտողությունները և այն հարցերը, որոնք դրվում են շրջկոմի առջև։

Բացի այդ ամենից, պարբերաբար շրջկոմին գրավոր կամ բանավոր ինֆորմացիաներ են տալիս կուսկազմակերպության քարտուղարները, առանձին կոմունիստներ և անկուսակցական աշխատավորներ։

Տեղն է նշել, որ որոշ կուսակցական աշխատողներ այն կարծիքն են հայտնում, թե լավ կլիներ, եթե կուսկազմակերպություններում առանձնացվեին հատուկ մարդիկ, որոնց վրա դրվեին որոշումների կատարման ստուգման և վերադաս կազմակերպություններին ինֆորմացիաներ ներկայացնելու պարտականությունները։ Մեր շրջանի կուսակցական կազմակերպությունների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ այդ առաջարկությունը ճիշտ չէ, որ հատուկ ինֆորմատորի առաջադրումը կուսակցական կազմակերպության քարտուղարների և բյուրոյի անդամների մոտ կառաջացնի դիմազրկություն։

Որպես կարգ, կուսշրջկոմի աշխատողները լուրջ ուշադրություն են նվիրում ներքևից եկող բոլոր ինֆորմացիաներին և աշխատում են լուծել դրանցում բարձրացված հարցերը։ Ահա բազմաթիվ օրինակներից երկուսը։ Գորիս քաղաքի շինարարական № 5 տեղամասի սկզբնական կուսկազմակերպության ընդհանուր ժողովն այս տարվա մայիսին քննել էր շինարարական աշխատանքների պլանի կատարման ընթացքը։ Կոմունիստները բավական լուրջ թերություններ էին նշել մատակարարման և աշխատանքի կազմակերպման գործում։ Կազմակերպության ժողովը խնդրել էր շրջկոմին՝ վերադաս կազմակերպությունների միջոցով կարգավորել կառույցներին քար, ցեմենտ, շինափայտ, խողովակներ և այլ շինանյութեր մատակարարելու և ինժեներատեխնիկական անձնակազմով ապահովելու գործը։

Կուսակցական կազմակերպության բարձրացրած այդ հարցերը դարձան շրջկոմի բյուրոյի քննարկման առարկա։ Բյուրոյի նիստին ներկա էին նաև հանրապետության գյուղական շինարարության մինիստրության և պետպլանի պատասխանատու ներկայացուցիչները, մի հանգամանք, որը մեծապես նպաստեց բարձրացված հարցերի լուծմանը։

Մի այլ օրինակ։ Տաթևգէսի շինարարական տեղամասի կուսկազմակերպության քարտուղարը ինֆորմացիա է տալիս շրջկոմին, որ տեղամասի կոմերիտկազմակերպության աշխատանքի բարելավման ուղղությամբ իր միջոցառումները դրական արդյունք չեն տալիս, որ կոմերիտկազմակերպության քարտուղարը անպատասխանատու վերաբերմունք է ցուցաբերում իր պարտականությունների կատարման նկատմամբ։ Կուսկազմակերպության քարտուղարը խնդրում էր օգնել իրեն՝ այդ հարցը լուծելու։

Կուսշրջկոմի կազմակերպական-կուսակցական բաժնի վարիչ Ն. Իսախանյանը (հրահանգիչ Հ. Թադևոսյանի հետ) մեկնում է Տաթևգէս, տեղում ուսումնասիրում գործերի վիճակը, մտքեր փոխանակում կոմունիստների, կոմերիտականների և արտամիութենական երիտասարդների հետ, ապա հրավիրում կոմերիտականների ընդհանուր ժողով, որին մասնակցում են նաև կոմունիստները։ Ժողովում երևան է հանվում և դատապարտվում կոմերիտական կազմակերպության քարտուղարի և նրա բյուրոյի աշխատանքի արատավոր ոճը, նրանց կտրվածությունը կյանքից։ Ձեռնարկվեցին կազմակերպական կոնկրետ միջոցներ, որից հետո կոմերիտական կազմակերպության աշխատանքը բարելավվեց։



Շրջանային կոմիտեի համար ինֆորմացիայի կարևոր աղբյուր է ծառայում նաև շրջանային «Զանգեզուր» թերթը։ Այստեղ տպագրվում են աշխատավորների տարբեր բնույթի հոդվածներ, հաղորդագրություններ, նամակներ, ահազանգեր։ Շրջանային կոմիտեն ժամանակին արձագանքում է դրանց, քննարկում կամ ապարատի միջոցով ընթացք տալիս։

Հաճախ ինֆորմացիաներն արտացոլում են աշխատավորական լայն խավերի կուլտուրական հարաճուն պահանջները։ Կոլտնտեսականներ Հ. Շահնազարյանը, Ա. Շահզադյանը, Ս. Ալավերդյանը Խնձորեսկ գյուղից գրում են շրջկոմ, որ իրենք ցանկանում են զրույցներ լսել ներկա միջազգային դրության, գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցման ուղիների, շահութաբերության, տնտհաշվարկի, նյութական շահագրգռվածության բարձրացման և բժշկական գիտության նորությունների մասին։ Շրջկոմի դասախոսական խմբի միջոցով հաշվի են առնվում այդ թեմաները և դրանց շուրջը բովանդակալից զեկուցումներ ու զրույցներ կազմակերպվում ոչ միայն Խնձորեսկում, այլև մյուս գյուղերում և ավաններում։

Շրջանային կոմիտեն ընթացք է տալիս այն նամակներին, որոնք կոմունիստները, անկուսակցականները ուղարկում են վերադաս կազմակերպություններին, բայց լուծման համար համապատասխան մակագրությամբ նորից հետ են ուղարկվում շրջանային կոմիտեին։ Այդ նամակներին անհրաժեշտ ընթացք տալու մասին շրջկոմը տեղյակ է պահում նրանց հեղինակներին և հետևում, որ կատարման ենթակա հարցերը լուծվեն։

Անհրաժեշտ է նշել նաև անանուն նամակներում պարունակվող ինֆորմացիաների մասին։ Շրջանային կոմիտեն այդ կարգի ինֆորմացիաներին մեծ մասամբ նշանակություն չի տալիս, քանի որ նրանց գերակշռող մասը զրպարտություն է ուղղված այս կամ այն աշխատողի դեմ։ Հեղինակի կամ հեղինակների անհայտ լինելը լուրջ դժվարություններ է հարուցում այդ կարգի «ինֆորմացիաների» ստուգման համար։ Այդ առթիվ արժե պատմել մի դեպքի մասին։ Բայանդուր գյուղից շրջկոմը ստանում է անանուն նամակ, որտեղ ասված է, որ կոլտնտեսության նախագահ Ս. Բաբաջանյանը յուրացնում է արտելի հանրային բարիքները, կոպտում կոլտնտեսականներին, չի հասկանում գյուղատնտեսության էկոնոմիկան և դրա համար էլ տնտեսությունը հետադիմում է։ Նամակի տակ կար 29 ստորագրություն։

Շրջկոմը հանձնաժողով կազմեց և ստուգման ենթարկեց այդ նամակը։ Պարզվեց, որ ստորագրությունները կեղծ են, որ գյուղում այդպիսի ազգանուններով «կոլտնտեսականներ» չկան։ Իսկ փաստերի բազմակողմանի ստուգումը ցույց տվեց, որ կոլտնտեսության նախագահը շատ կարգապահ մարդ է, համեստ, նվիրված և աշխատասեր։ Յուրացման և հափշտակման ոչ մի փաստ չկար։ Իրականությանը չէին համապատասխանում նաև մյուս «մեղադրանքները»։

Բայց դրանով գործը չավարտվեց։ Հենց նոր էին շրջկենտրոն վերադարձել ստուգողները, երբ նման բովանդակությամբ (նույն մարդու մասին) անանուն նամակներ ստացվեցին Երևանից, Մոսկվայից՝ համապատասխան մակագրությամբ։ Ինչպե՞ս վարվել։ Այդ բոլորի մասին տեղյակ պահվեց գյուղի սկզբնական կուսկազմակերպությանը, կոմունիստները դատապարտեցին դրանց «հեղինակներին» և որոշեցին այլևս այդ հարցերին չանդրադառնալ։ Բայց զըր-

*կպարտիչ անանուն նամակների հոսքը դարձյալ չդադարեց։ Զպարտությունը ակնհայտ էր, ուստի և շրջկոմը այլևս տվյալ հարցով չզբաղվեց։ Միայն հետագայում պարզվեց, որ այդ բոլորը կատարել է մի հակահասարակական տարր, որն աշխատանքի չգնալու, իրեն հասարակության մեջ անվայել պահելու պատճառով հրապարակորեն խիստ հանդիմանություն էր ստացել կոլտնտեսության նախագահի կողմից։*

*Բայց չի կարելի ասել, որ բոլորն են այսպես։ Կան նաև անանուն նամակներ, որոնց մեջ զգում ես ճշմարտություն։ Օրինակ, Տեղ գյուղից ստացվեց մի անանուն նամակ, որի անհայտ հեղինակը հաղորդում էր շրջկոմին, որ ոչխարաբուծական ֆերմայում ապօրինություններ կան։ Ֆերմայի վարիչ Ա. Ղուլունցը վաճառել է կոլտնտեսության ոչխարները, յուրացրել կոլտնտեսության բուրդը։ Իսկ մի այլ ինֆորմացիա պատմում է այդ կոլտնտեսության ավտոպարկի վարիչ Ս. Իսունցի անօրինականությունների մասին։ Շրջկոմը ժողովրդական վերահսկողության շրջանային կոմիտեի միջոցով ստուգման ենթարկեց այդ ահազանգերը։ Պարզվեց, որ դրանք հիմնականում ճիշտ են և համապատասխանում են իրականությանը։ Հանցագործները հեռացվեցին աշխատանքից և նրանց գործերը հանձնվեցին դատարան՝ քրեական պատասխանատվության ենթարկելու համար։*

*Այդ փաստն ասում է այն մասին, որ անանուն նամակները լիովին անուշադրության մատնել չի կարելի, որ կան անանուն նամակներ, որոնք նույնպես պահանջում են կուսակցական աչալուրջ վերաբերմունք։*

*Վերջին ժամանակներս ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների լույսի տակ շրջկոմի գործունեության մասին սկզբնական կուսակցական կազմակերպություններում հաշվետու զեկուցումներով հանդես են եկել շրջկոմի անդամները։ Կոմունիստներն իրենց ելույթներում նշելով շրջկոմի կատարած դրական աշխատանքը, միաժամանակ մի շարք քննադատական դիտողություններ են արել նրա հասցեին։ Շրջկոմը դեռևս անբավարար է օգնում արտադրամասային կուսկազմակերպություններին և կուսխմբերին, քիչ է զբաղվում կուլտուրական շինարարության հարցերով։ Շրջկոմի ոչ բոլոր անդամներն են ակտիվ մասնակցում կուսակցական աշխատանքին և այլն։*

*Ընդհանուր գործին մեծապես օգնում է ընդունված որոշումների կատարման ընթացքի մասին կուսակցական մասսաներին պարբերաբար ինֆորմացիա տալը, նրանց՝ կատարվող գործերին տեղյակ պահելը։*

*Հստակ ինֆորմացիան, բացարիկ հետևողականությունը կուսակցականկազմակերպական աշխատանքում օգնեցին թերությունների վերացմանը, արտադրական ռեզերվների հայտաբերմանն ու օգտագործմանը և, վերջապես, հոբելյանական տարվա մեծ առաջադրանքների հաջող կատարմանը։*

*Բարելավելով ինֆորմացիայի դրվածքը, շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները զգալիորեն ամրապնդել են իրենց կապը մասսաների հետ։ Նրանք այսուհետև էլ ինֆորմացիան կծառայեցնեն որպես աշխատավորների շրջանում քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բարելավման, տնտեսական ու կուլտուրական շինարարության պլանների հաջող կատարման համար նրանց ուժերը մոբիլիզացնելու կարևոր միջոց։*

ՊԵՏՐՈՍՅԱՆ Ք. Բ.

ՀԿԿ Գորիսի շրջկոմի առաջին քարտուղար

# ՎՐԱՑ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՐՈՍԸ

Վերջերս տեղեկություն ստացա, որ Սովետական Միության հերոս, գեներալ-մայոր Գալակտիոն Ալպաիձեն շարունակում է իր վինվորական ծառայությունը։ Եվ իմ առջև կանգնեց պատերազմական տարիների 28-ամյա պարթևահասակ վրացին՝ թիկնեղ ու թխահեր. իր երկրի պես հպարտ ու գեղեցիկ...

Հուշերը մտքիս թելը տարան հեռուն, շա՜տ հեռուն...

Հերոսաբար դիմադրելով գերմանա-ֆաշիստական քառապատիկ գերազանց ուժերին, 113-րդ կարմրադրոշ դիվիզիան դաժան մարտերում շրջապատման մեջ ընկավ։ Դիվիզիայի հրամանատար, գեներալ Քրիստափոր Ալավերդյանը ծանր վիրավոր վիճակում գերվեց և տանջամահ արվեց համակենտրոնացման ճամբարում։ Գերմարդկային ջանքերով կռվելով և դուրս գալով շրջապատումից, ողջ մնացած մարտիկները միավորվեցին... Հետագայում դիվիզիան վերակազմվեց, համալրվեց և մարշալ Տոլբուխինի գլխավորած զորագնդերի շարքերում թշնամու դեմ ճակատամարտ տալով՝ հասավ Հունգարիա։ Դիվիզիայի հրետանային գնդի գլուխ կանգնեց Գալակտիոն Ալպաիձեն։

Ինտերնացիոնալ մի ընտանիք էր այդ դիվիզիան, որի հրետանու պետն էր գնդապետ Գուրտավենկոն։ Հագնում էր նա երկարաճիտ կոշիկներ, խունացած շինել, տարվա բոլոր եղանակներին ծածկում էր մոխրագույն փափախ։ Կատակասեր էր, պարզ ու հասարակ, ուկրաինական առակն ու ծիծաղը միշտ անպակաս էին։ Բայց, սատանան տանի, խելքի բույն էր, խիզախ ու համարձակ էր և, որ կարևորն է, հրետանու լավագույն գիտակ ու հրաշալի մարդ։ Հրետանային գնդի շեֆն էր նա։

Գնդի կոմիսարը՝ հրեա Զամորեցը, չափազանց համեստ, պայծառ մտքով ու ապագայի հույսերով լի, վառվռուն մի երիտասարդ էր, գնդի քաղաքական աշխատանքների շունչն ու ոգին։

Եվ այսպես դեռ շատերը կան... Բայց հնարավո՞ր է մեկ առ մեկ ներկայացնել ամենքին։ Ալպաիձեի գնդի բոլոր ստորաբաժանումներում կարելի էր հանդիպել ռուսների, ուկրաինացիների, բելոռուսների, վրացիների, հայերի, ադրբեջանցիների և այլ ազգությունների ներկայացուցիչների, որոնք Միության տարբեր ծայրամասերից եկել, համախմբվել են մեկ դրոշի տակ և վրեժ ու ցասում դարձած՝ ծառացել թշնամու դեմ։ Ասես այստեղ էին խմբվել բոլոր ազգերի արժանավորները։ Ալպաիձեի անձնական հմայքն ու հերոսականությունը մագնիսի պես առինքնում էին մարդկանց։

Նրա գունդն արագ փոխադրվեց մեծ Բալատոնի շրջանը, ուր հիտլերականները նոր սպառնալիք էին ստեղծել։ Հայտնի է, որ պարտությունից առաջ թշնամին ավելի կատաղի է գործում։ Թվում էր, թե ամեն ինչ նոր է սկսվում, թշնամու ռումբերի, արկերի ու ականների ահարկու պայթյուններից ակոսվում, ավերվում էր հունգարական հողը։ Այդպիսի օրեր Ալպաիձեն շատ էր տեսել հայրենիքում։ Նա հիշում էր Դնեպրի համար մղված ծանր մարտերը, 1944 թվականի մայիսի 12-ի արյունահեղ կռիվը Դընեստրի աջ ափին, մեր անհամար կորուստները...

Այո՛, նրա հրամանատարական դիտակետը հունգարական հողում էր, Մեծ Բալատոնի սըրտում, որտեղից լավ տեսնում էր գնդի բոլոր դիվիզիոնների մարտական դիրքերի դասավորությունը։ Մի անգամ ևս նա ստուգեց հեռախոսային ու ռադիո կապը։ Հինգ րոպե առաջ դիվիզիոնների հրամանատարները զեկուցել էին, որ պատրաստ են թշնամուն դիմագրավելու։ Կրկին վնգաց հեռախոսը։

— Լսում եմ։

— Ամեն ինչ լավ է՝ թշնամին կարող է անցնել միայն հրետանավորների դիակի վրայով։ Մի քանի րոպեից հետո Զամորեցի հետ քեզ մոտ կլինեմ,— Գուրտավենկոն էր։

Ալպաիձեն հանգիստ շունչ քաշեց։ Ամեն ինչ կարգին է, անձնակազմը լիուլի կերակրվել է, բոլորը երկու օրվա սննդամթերքի պաշար ունեն, անհրաժեշտ քանակությամբ արկեր, կապը մարտկոցների հետ նորմալ է։

Հակագրոհն սկսվեց։ Թշնամու պողպատյա սև հրեշներն առաջ էին սողում, թվում էր թե ոչ մի ուժ չի կարող կանգնեցնել նրանց շարասյուները։ Բայց, ահա, օդը ճեղքեցին մեր հեռահար հրետանային ծանր արկերը։ Թևերից ու ճակատից կատյուշաները կրակե պատնեշ ստեղծեցին։ Ռմբակոծել սկսեցին և մեր օդանավերը։

Թշնամին ետ շպրտվեց։ Ծուխ է ռազմադաշտում, այրվող մեքենաներ, զոհեր, վիրավորների հառաչ... Նույն գիշեր համալրվեց նյութական մասը, մասամբ՝ հրանոթները։

Այդ դժվարին ճակատամարտում Ալպաիձեի գունդը փառքով պսակեց իրեն։ Ինչպես ինքը, այնպես էլ շատ բանակայիններ, հրամանատարներ, քաղաշխատողներ պարգևատրվեցին շքանշաններով։ Կարճ ժամանակ անց դիվիզիան փոխադրվեց դեպի հարավ-արևմուտք։ Հակառակորդը դեռ չէր հավատում իր վերջնական պարտությանը. քաշվելով հարավ-արևմուտք,

փորձում էր հակագրոհի նոր օջախ բացել:

Առաջին գիշերը խաղաղ անցավ:

Հիտլերականների հրթիռները սակավ էին լուսավորում: Մեր հրետանավորները գրաված կրակային դիրքերն ամրացրին սակրավորների ուժերով: Փորեցին լայն խրամատներ և խնամքով քողարկվեցին: Ամեն ինչ արվեց օդային ռմբակոծությունից պաշտպանվելու համար: Պատրաստ էին վաղվա փոթորիկը ետ մղելու: Մարտից առաջ անհրաժեշտ էր քնել, հանգստանալ:

Գուրտավենկոն կարգադրել էր Ալպաիձեին հանգստանալ, իսկ ինքը կոմիսարի ուղեկցությամբ անցավ մարտկոցները, ստուգեց ամեն ինչ: Գիշերվա ժամը 3—30 րոպեին զեկուցեց դիվիզիայի հրամանատարին, որ հրետանային բոլոր ստորաբաժանումները պատրաստ վիճակում են: Եվ երբ հայտնում էր, որ իր թույլտվությամբ գնդի հրամանատարը հանգստանում է, խոսքը չավարտած, կոկիկ հագնված, սափրված Ալպաիձեն կզաստ կանգնեց նրա առաջ:

Գուրտավենկոն զարմացած նայեց նրան, ժպտաց և.

— Ոտքիս վրա կանգնել չեմ կարողանում, նորափեսա, գնամ ես էլ մի փոքր հանգստանամ:

Ալպաիձեն անձամբ ամեն ինչ ստուգելուց հետո իր մոտ հրավիրեց դիվիզիոնների հրամանատարներին ու քաղգծով տեղակալներին և հենց ոտքի վրա ասաց.

— Երևում է, թշնամու առաջին գրոհը մենք ենք դիմագրավելու: Հիմա ժամը հինգն է: Ամենքդ պատրաստ եղեք և սպասեք...

* * *

Անցավ ռազմաճակատային սպասողական գիշերը: Լույսը բացվեց: Առավոտվա ժամը վեցն էր: Երկու կողմերում համատարած լռություն...

Ի՞նչ էր պատահել: Գուցե հետախուզության տվյալները ճիշտ չե՞ն եղել: Մի՞թե հիտլերական գեներալները պրովոկացիա արին, որպեսզի ետ փախչեն ու մի այլ տեղամասում հակագրոհի պատրաստվեն:

Ժամը 7-ն էր, բայց հակագրոհի կամ նախանշի ոչ մի նշան:

Առիթից օգտվելով, մեր հրետանավորները մեծ քանակությամբ արկեր մոտեցրին ու տեղավորեցին հարմար տեղ, բարեկարգեցին խրամատները... Խորհրդավոր լռությունը շարունակվում էր: Հետախուզությունը նոր տվյալներ չէր հաղորդում:

Մտնելով հողատնակը, Ալպաիձեն հուզմունքով բացեց Թբիլիսիից հենց նոր ստացած ծրարը. լուսանկարից ժպտերես իրեն էին նայում կինը՝ Տանյան և դուստրը, որին դեռ չէր էլ տեսել: Նայեց կարոտով, երազանքով...

Ներս մտավ Զամորեցը.

— Հրամանատար, ինչպես երևում է, հիտլերյան հրամանատարությունը պատրաստվում է հաշտության առաջարկ անել:

Առանց գլուխը բարձրացնելու Ալպաիձեն ասաց.

— Այդպես է. մինչև Իվանը նրանց սեփական տունը չշրջապատի, նրանք խելքի չեն գա: Նայիր,— լուսանկարը կոմիսարին մեկնելով՝ ժտածկոտ ավելացրեց նա,— կյանքի երկու հակադիր աշխարհ, Տանյան մի քանի ամիս առաջ մեր գնդի բժշկուհին էր, հիմա մայր է, երեխա է մեծացնում: Իսկ այստեղ, ռազմադաշտում...

Ալպաիձեի հրամանատարական կետից հաղորդեցին, որ կորպուսի հրամանատար Կրավցովը շտապ հեռախոսի մոտ է կանչում դիվիզիայի հրամանատարին: Հավանաբար լուրջ նորություն էր հաղորդելու: Նա շտապեց հեռախոսի մոտ, իսկ Ալպաիձեն կարգադրեց սանբուժպերսոնալը մոտեցնել դիվիզիոններին:

Ինչ-որ անզգուշություն էր թույլ տրվել, և հակառակորդը հայտնաբերել էր մեր հրետանավորների դիրքերը:

Ժամը տասն էր, պայծառ, արևոտ օր:

Մեսեր-շմիդտը բարձր թռիչքով մի պտույտ գործեց մեր կորքերի զբաղեցրած տերիտորիայի վրա և անհետացավ: Օդում երևացին նաև մեր սրաքիթ «հյուշկաները»:

Հակագրոհն սկսվեց: Հակառակորդի հեռահար հրետանին սկսեց արկերի տարափ տեղալ մեր կորքերի աջ թևում, ուր մեր դիվիզիան էր:

Մի քանի րոպեում հրետգունդը ահագին վնաս կրեց. զոհվեցին, վիրավորվեցին շատերը: Զոհվեց նաև դիվիզիոնի հրամանատար Պետրովը: Այդ շիկացած պահին ոչ մի հնար չկար կրակային դիրքերը փոխելու, մինչև որ մեր հեռահար հրետանին դիպուկ պատասխանով ընդհատեց հակառակորդի կրակը: Ընդմիջումից օգտվելով, մերոնք անմիջապես մարտկոցները վերադասավորեցին, ապա վիրավորներին շտապ փոխադրեցին թիկունք: Հակառակորդը վերսկսեց հրետանային կրակը, բայց ոչ նախկին ուժով: Մեր ավիացիան ու հրետանին նոսրացրել էին նրանց շարքերը: Բայց ահա հակառակորդի զբաղեցրած բարձունքների լանջերից հեղեղի նման դեպի մեզ են սողում նրանց տանկերը:

Թշնամու մի քանի տանկ շրջանցել, սպառնում են թիկունքից: Այդ լարված պահին վիրավորվեց Ալպաիձեն: Հրետանու պետ Գուրտավենկոն գնդի հրամանատարությունն վերցրեց իր ձեռքը: Վիրավոր Ալպաիձեին երկու քույրերի ուղեկցությամբ տեղափոխեցին բժշկա-սանիտարական գումարտակ: Սակայն դուրս գալով մարտի բոցերից, Ալպաիձեն հարմար տեղում կանգնեցնել է տալիս մեքենան և խնդրում վերքերը կապել: Ականի բեկորը մնացել էր ազդրում և սոսկալի ցավում էր: Վերքերը կապեցին, բայց քույրերի օգնությամբ հազիվ էր ոտքի վրա կանգնում:

— Հարկավոր է շտապել, ընկեր հրամանատար,— ասաց քույրերից մեկը,— հետո ուշ կլինի:

— Այո՛, ուշ կլինի,— կրկնելով բուժքրոջ խոսքը, Ալպաիձեն հենվեց նրան ու նստեց վարորդի մոտ: Նա աշխատում էր զսպել ցավը: Քույրերին խնդրեց, որ նրանք գնան սանգումարտակ, իսկ վարորդին կարգադրեց մեքենան թեքել գնդի կողմը: Վրե՜ժ. պետք էր վրեժ լուծել զոհված ընկերների, իր վերքերի համար... Իմանալով Կովկասի որդու համառությունը, բուժքույրերը չլքեցին նրան:

— Ուր մեր հրամանատարը, այնտեղ էլ մենք:

Վիլիսը պոկվեց տեղից ու սլացավ բոցերի միջով: Մոտեցավ մեր մարտկոցների դիրքերին ու կանգ առավ: Ալպաիձեն արդեն առանց օգնության իջավ մեքենայից: Նա որոշել էր այդ ճակատագրական պահին լինել իր մարտական ընկերների կողքին:

Գնդապետ Գուրտավենկոն և Զամորեցը զբաղված էին աջաթևյան մարտկոցով և չիմացան Ալպաիձեի վերադարձը: Մարտկոցի մոտ այրվում էին երկու տանկ, երրորդը կրակի տակ էր առնված: Ալպաիձեն նետվեց 3-րդ մարտկոցի մոտ: Հակառակորդի չորս տանկերից մեկը ծխի մեջ կորել էր, մյուս երեքը հրանոթներից ու գնդացիրներից կրակ էին տեղում մարտկոցի վրա: Հրանոթի նշանառուն վիրավորվեց. հրանոթը լռեց...

Առանց վայրկյան կորցնելու Ալպաիձեն կանգնեց վիրավորված նշանառուի տեղը: Առաջին արկը կանգնեցրեց ուղիղ դեպի մարտկոցը սողացող տանկը: Աջակողմյան հրանոթը ջարդեց նրա աշտարակը:

Հրամանատարի արձակած երկրորդ արկը փշրեց մյուս տանկի թրթուրը:

Մարտկոցը հաղթեց: «Ուռա՜» բացականչեցին մարտիկները: Մինչ Ալպաիձեն հրանոթի վահանին քսվելով իջավ գետնին: Այրվող տանկի աշտարակից ճարճատող գնդացրի կրակը կպել էր նրա գլխին: Երկրորդ հրանոթը լռեցրեց նաև այդ վերջին գնդացիրը: Թշնամին ետ շպրտվեց.

Սանիտարները ձեռքերի վրա տարան գնդի հրամանատարին: Ծանր լուրը շուրթից-շուրթ անցավ: Գուրտավենկոն և Զամորեցը լուռ կանգնել էին գունատ, ուշագնաց, մեջքի վրա պառկած Ալպաիձեի մոտ: Քիչ հետո եկան նաև դիվիզիայի հրամանատարն ու քաղբաժնի պետը: Այդտեղ էր և բժշկա-սանիտարական գումարտակի կոմիսարը: Դիվիզիայի հրամանատարի կարգադրությամբ Ալպաիձեին շտապ տեղափոխեցին սանիտարական գումարտակ:

Մարշալ Տոլբուխինի հրամանում նշվեցին 113-րդ դիվիզիայի հրետգնդի մարտիկների և հրամանատարների ցուցաբերած բացառիկ քաջագործությունները. շատ շատերը պարգևատրվեցին շքանշաններով: Գուրտավենկոն արժանացավ Կարմիր դրոշի շքանշանի: Զամորեցի հետ նա վերադարձավ գունդ: Տխուր էր, մտասույզ. «Կապրի՞ արդյոք, կդիմանա՞ ցավերին», մտածում էր Ալպաիձեի մասին: Մոռացած հոգնությունն ու գլխացավը, քաղցը, ոտքի բացված վերքը, Զամորեցի հետ նա մնաց կրակային դիրքերում, վիրավորներին սանմաս ուղարկելու և զոհված մարտիկներին հողին հանձնելու համար:

* * *

Մի առավոտ, երբ գնդի շտաբում քննարկում էին հետագա առաջխաղացման ծրագրերը, դուռը բացվեց և Սովետական Միության հերոսի շքանշանը կրծքին շտաբ մտավ Ալպաիձեն: Ամենքը հրճվանքով ոտքի կանգնեցին:

Գնդի հրամանատարը նորից անցնում էր իր պարտականություններին...

ԳՈՒԼՅԱՆ Մ. Թ.

ժական ռեֆորմի ոգին օբյեկտիվորեն ստեղծում է նաև հակառակ տենդենցը։

Աշխատավորների կենսամակարդակի հավասարեցման պրոբլեմների վերջնական լուծումն ավելի հեռավոր ապագայի խնդիր է, քան դիտվում է աշխատության մեջ։ Գործում է ո՛չ միայն կենսամակարդակի տարբերությունների վերացման, այլև հակառակ տենդենցը։

Գրախոսվող աշխատությունը սպառման հասարակական ֆոնդերի պրոբլեմի շուրջ եղած լավագույն գիտական ուսումնասիրություններից է և ցանկալի կլինի մայրենի լեզվով ներկայացնել այն նաև հայ ընթերցողին։

ՂԱՐԻԲՅԱՆ Գ. Ա.

Դոցենտ

### ՈՒՂՂՈՒՄ

Մեր ամսագրի № 2-ի 2-րդ էջի առաջին տողում պետք է կարդալ «Полвека на позициях защиты социализма и мира». 23-րդ էջի վերևից երրորդ տողում՝ «ներկա հոդվածում հեղինակը խնդիր է դնում պատմական կոնկրետ նյութերի հիման վրա բացահայտել...» այնուհետև ինչպես տեքստում։

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ. ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Адрес редакции.—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59գ.։ Հեռախոսներ. խմբագիր՝ 7—16—90, պատ. քարտուղար՝ 7—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 7—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 7—19—80։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ | Ստորագրված է տպագրության 8/IV 1968 թ.։

ՎՖ 05502 | պատվեր 708 | Տիրաժ 11.446 | Գինը 25 կոպ.։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։

## ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

### ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԱՖԱՐԳ ՊՈԼ— Հիշողություններ Մարքսի մասին, Մ., 1967, 32 էջ։

Պոլ Լաֆարգը Կ. Մարքսի և նրա ընտանիքի մտերիմներից է. նա վառ ու կենդանի պատկերել է մեծ մտածողի, հեղափոխականի, համեստ մարդու կերպարը։

ԴՅՈՒԿԼՈ ԺԱԿ— 1917 թ. հեղափոխությունը և Ֆրանսիան (թարգմանված է ֆրանսերենից), Մ., 1967, 446 էջ։

Ֆրանսիական կոմունիստական կուսակցության ղեկավարի այս գրքում արտացոլված է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ազդեցությունը ֆրանսիական, ինչպես և միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման զարգացման վրա։

ԳՈՆՉԱՐՈՎ Ա., ԼՈՒՆՅԱԿՈՎ Պ.— Վ. Ի. Լենինը և գյուղացիությունը, Մ., 1967, 200 էջ։

Հեղինակները պատմում են, որ ամենուր Վլադիմիր Իլյիչը հենվում էր մասսաների վրա և միշտ նրանց հետ էր լուծում կուսակցության և կառավարության՝ գյուղի հետ կապված կարևոր խնդիրները։ Գրքում լուսաբանված է գյուղացիական հարցի պատմական զարգացումը, Իլյիչի գործունեությունը բոլշևիկների կուսակցության ագրարային ծրագրի մշակման, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման ուղղությամբ։

Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ հեղափոխության պատմական նշանակությունը. «Проблемы мира и социализма» ամսագրի խմբագրության՝ Պրագայում կազմակերպած միջազգային տեսական կոնֆերանսի նյութերը, Մ., քաղհրատ, 1967. 535 էջ։

Ժողովածուում զետեղված են կոմունիստական և բանվորական կուսակցությունների պատասխանատու գործիչների զեկուցումները, ելույթները (1967 թ. հունիսի 22—24-ին) և այլ նյութեր։

Ժուկով Վ. Գ.— Ուր է տանում Մաոյի քաղաքականությունը։ «Межд. от.» հրատ, 1967, 56 էջ։

Պրոպագանդիստների համար խիստ օգտակար այս աշխատությունը քննադատում է «կուլտուրական հեղափոխությունը» Չինաստանում և Մաոյի խմբավորումը, որն իր գործունեությամբ հարցականի տակ է դնում սոցիալիզմի նվաճումները այնտեղ։

ՎԱԳԱՆՈՎ Ֆ. Մ. — ՍՄԿԿ-ն սոցիալիստական շինարարության տեմպերի արագացման համար մղված պայքարում (1927—1929 թթ.), Մ., «Высшая школа» հրատ, 1967, 116 էջ։

Հեղինակը լուսաբանել է ՍՍՀՄ հանրապետությունների, մարզերի ժողովրդական տնտեսության վերակառուցման և սոցիալիզմի կառուցման մասին ՀամԿ(բ)Կ XV համագումարի, XVI կոնֆերանսի և Կենտկոմի պլենումների որոշումների կենսագործման արդյունքները։ Գիրքը նախատեսված է ՍՄԿԿ պատմությունն ուսումնասիրողների համար։

ՍԱՐԴԵՍԱԻ ՇՐԻՆԻՎԱՍ ԳԱՆԵՇ — Հնդկաստանի և Ռուսաստանի հեղափոխությունը— «Հոկտեմբերի գաղափարների մեծ ուժը», Մ., 1967, 168 էջ։

Սույն բրոշյուրում հեղինակը պատմում է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության նշանակության մասին, ցույց տալիս նրա ազդեցությունը Հնդկաստանի ազգային-ազատագրական շարժման վրա։

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ԷԺԱՆ ԵՎ ԱՆՎՏԱՆԳ

*Սովորաբար մետաղյա դետալները յուղազերծում են կերոսինով, բենզինով կամ օրգանական այլ լուծիչներով։ Դա միանգամայն պիտանի է լաբորատոր պրակտիկայի համար։*

*Սակայն մեքենաշինական գործարանների արտադրամասերում մասսայական արտադրության մեջ օրգանական լուծիչների կիրառումն անհարմար է, որովհետև դրանք դյուրավառ են, թունավոր և համեմատաբար թանկ։ Յարոսլավլի սառնարանային մեքենաների գործարանում յուղազերծման համար օգտագործում են կալցիացված սոդայի (10—15 գ/լ), նատրիումի նիտրատի (5—10 գ/լ) և տրիէթանոլամինի (10—15 գ/լ) լուծույթները։ Սոդայի փոխարեն երբեմն օգտագործում են տեխնիկական տրինատրիումֆոսֆատ։ Դետալների յուղազերծումը լվացող մեքենայում լուծույթի 70—90° C ջերմաստիճանի պայմաններում տևում է 2—3 րոպե։ Լվացումից հետո դետալները օդահարվում են։ Այդպիսի լուծույթում մշակված դետալները երկար ժամանակ կոռոզիայի չեն ենթարկվում։*

### ԷՆՏՈՄՈԼԱԿՏԵՐԻՆ

*Բույսերի պաշտպանության համամիութենական ինստիտուտը ստացել է աղապրեպարատ, որի յուրաքանչյուր գրամը պարունակում է մոտ 3 միլիարդ և համարյա նույնչափ սպիտակուցային թունավոր բյուրեղներ։ Էնտոբակտերինը ոչնչացնում է բանջարա-բոստանային, անտառային կուլտուրաների, մրգերի ու հատապտուղների մոտ 50 տեսակի վնասատու միջատներ։*

*Մարդու, տաքարյուն կենդանիների, մեղվի և մի քանի օգտակար միջատների համար այն անվնաս է։*

### ՊԱՇՏՊԱՆՈՒՄ Է ԿՐԱԿԻՑ ԵՎ ԲԱԿՏԵՐԻԱՆԵՐԻՑ

*Լեհական հանրապետություններում սկսել են կիրառել «Մուրոֆիտ» նոր պրեպարատը։ Դրանով ներծծված փայտեղենը չի վառվում։ «Մուրոֆիտը» պաշտպանում է փայտեղենը ո՛չ միայն կրակից, այլև փտելուց։*

*Նոր պրեպարատի հակահրդեհային հատկությունները փորձարկելիս, փայտյա իրի վրա առատորեն բենզին ու նավթ են լցրել և փորձել վառել։ Սակայն հրդեհ առաջացնելու բոլոր փորձերը զուր են անցել. փայտը չի բոցավառվել։*

*Իսկ երբ «Մուրոֆիտով» մշակված փայտեղենի վրա փտում առաջ բերող բակտերիաներ են բաց թողել, ապա նրա դիմադրողականությունը տասն անգամ ուժեղ է եղել սովորական փայտեղենից։*

### ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ԳՐԱԴԱՐԱՆ

*Բրյուսելում բացվել է գրադարան, որն ունի 400 հազար աշխատություններ՝ նըվիրված ատոմային էներգիայի ուսումնասիրությանը. այն ավտոմատացված է։ Նրա հզոր էլեկտրոնահաշվիչ մեքենա ունեցող սիստեմը ռեկորդային կարճ ժամկետում ընթերցողին է ուղարկում պահանջված փաստաթուղթը կամ գիրքը։*

### ԵՎ ԹԹՈՒ, ԵՎ ԳԻՊՍ

*Ճապոնիայում մշակվել է ֆոսֆորաթթու ստանալու արտադրության նոր հեղուկ, որը հնարավորություն է ընձեռում արդյունաբերական նպատակներով օգտագործել այդ արտադրության թափոնը՝ գիպսը։*

*Գործող արդյունաբերական սիստեմում կա հատուկ սարքավորում՝ գիպսի կայունացման համար։ Գիպսը ֆիլտրում են, ջրով լվանում և թողարկում որպես անմաքուր արտադրանք։ Լրացուցիչ մշակումից հետո անկարելի է այն որպես հումք օգտագործել ցեմենտի արդյունաբերության մեջ։*

### ՔԱՂՑՐԱՀԱՄ ՋՈՒՐ ՍԱՀԱՐԱՅՈՒՄ

*Սահարայի անապատում, ավազների տակ, 2000—3000 մետր խորքերում կա քաղցրահամ սառը ջրի մի մեծ ծով՝ 840 հազար քառակուսի կիլոմետր տարածությամբ։ 30 հազար միլիարդ խորանարդ մետր տարողությամբ այդ անգնահատելի ջրամբարը ձգված է Ալժիրի (600 հազար կմ2), Թունիսի (60 հազար կմ2) և Լիբանանի (180 հազար կմ2) տակ։*